Պրոլետարնե՛ր բոլոր երկրների, միացե՛ք



# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

1

ՀՈՒՆՎԱՐ

1987 թ.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ
ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ
ՏՆՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ԼՈՒՅՍ Է
ՏԵՍՆՈՒՄ
ԱՄԻՍԸ ՄԵԿ
ԱՆԳԱՄ
ՀԱՅԵՐԵՆ
ԵՎ
ՌՈՒՍԵՐԵՆ

## Բովանդակություն



ՀԱՅԱՍՏԱՆԻ
ԿՈՄԿՈՒՍԻ
ԿԵՆՏԿՈՄԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ԵՐԵՎԱՆ

Խմբագրության հասցեն՝
*375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա, № 2*

ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝

գլխավոր խմբագիր՝ 52—89—93
գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—36
պատասխանատու քարտուղար՝ 52—99—22
պատասխանատու քարտուղարի տեղակալ՝ 56—59—93

**Բաժիններ**

մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի՝ 52—05—58
լուսավորական կյանք՝ 52—25—43
սոցիալ-տնտեսական պրոբլեմների՝ 52—57—56
գիտության և կուլտուրայի՝ 52—99—34
գրական աշխատողներ՝ 52—66—77
56—59—94
թողարկիչ, սրբագրիչ՝ 53—86—11



# ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 70-ԱՄՅԱԿԻ ՏԱՐԻՆ

ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ 1987 ԹՎԱԿԱՆԸ, մեծ Հոկտեմբերի 70-ամյակի տարին, թևակոխում է աշխատանքային ակնառու հաջողություններով: Տասներկուերորդ հնգամյակի առաջին տարվա ձեռքբերումները վկայում են ժողովրդական տնտեսության զարգացման հարաճուն դինամիզմը: Հաստատվել են ազգային եկամտի և արդյունաբերական արտադրության վերելքի ութսունական թվականների ամենաարագ տեմպերը: Էականորեն բարելավվել է ժողովրդական տնտեսության կարևորագույն ճյուղերի, այդ թվում նաև տրանսպորտի աշխատանքը: Սահմանված մակարդակից զգալի է բարձրացել աշխատանքի արտադրողականությունը, նախատեսվածից ավելի են կրճատվել արտադրանքի մեկ միավորի համար ծախսումները:

Գյուղատնտեսության արտադրանքի հավելաճի տեմպերը մոտ երկու անգամ գերազանցել են հնգամյա պլանի միջին տարեկան առաջադրանքների մակարդակը: Հացահատիկի համախառն բերքը կազմել է 210 միլիոն տոննա, որը շուրջ 30 միլիոն տոննայով գերազանցում է անցած հնգամյակում հացահատիկի արտադրության միջին տարեկան ծավալը:

Մեր լայնարձակ հայրենիքի բոլոր շրջաններում մեծ է այն ձեռնարկությունների թիվը, որոնք հաջողությամբ են կիրառում արտադրությանը ցույց տրվող նոր մոտեցումներ, տնտեսավարման արդյունավետ ձևերը: Արդեն հարյուրավոր գործարաններ ու ֆաբրիկաներ իրենց անխախտ օրենքն են դարձրել մատակարարումների վերաբերյալ պայմանագրերի հարյուրտոկոսանոց կատարումը: Երկրի բազմաթիվ կոլեկտիվներ առանց աշխատողների թվակազմի մեծացման ավելացրել են արտադրությունը, առաջավոր տեխնոլոգիաների ներդրման շնորհիվ թողարկում են միայն բարձրորակ արտադրանք: Գյուղատնտեսության մեջ հետևողականորեն ներդրվում են տնտեսավարման նոր մեթոդներ, աշխատանքի կազմակերպման առաջադիմական ձևեր, ինտենսիվ տեխնոլոգիաներ:

Ընթացիկ հնգամյակի մեկնարկային տարում ժողովրդական տնտեսության տարբեր բնագավառներում զգալի հաջողությունների հասան Սովետական Հայաստանի աշխատավորները: Հատկապես աճել են ազգային եկամուտը, արդյունաբերական արտադրանքի ծավալը:

Հանրապետության կոմունիստները, աշխատավորները, ինչպես բոլոր սովետական մարդիկ ապրում և գործում են ՍՄԿԿ XXVII համագումարի գաղափարների ու որոշումների խոր ազդեցության ներքո: Լայն թափ է ստացել սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու, հասարակական կյանքի բոլոր կողմերը որակապես վերափոխելու համագումարի մշակած կուրսի իրականացման համար շարժումը:

Հիրավի, ժամանակը համոզիչ ցույց տվեց այն նորը, որի սկիզբը դրվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումում և իր համակողմանի զարգացումն ստացավ համագումարի որոշումներում, ջերմ պաշտպանության արժանացավ աշխատավորական լայն զանգվածների կողմից: Կուսակցության ղեկավարությամբ ամենուրեք իրականացվող վերակառուցումը վերածվել է համաժողովրդական գործի: Վերջինս խորքային, արմատական վերափոխում է էկոնոմիկայում, քաղաքական, սոցիալական ոլորտներում: Սկսվել է ժողովրդական տնտեսության խոշորամասշտաբ տեխնիկական վերակառուցում: Ձեռնարկվում են կոնկրետ միջոցներ, որպեսզի ապահովվի մեքենաշինության ավելի արագ զարգացումը, արմատապես և արագորեն բարձրացվի նրա արտադրանքի որակը:

կառավարման կազմակերպական կառուցվածքի հիմնավոր վերափոխումը արդեն շոշափել է ժողովրդատնտեսական կարևորագույն համալիրները՝ մեքենաշինականը, ագրոարդյունաբերականը, վառելիքաէներգետիկը, շինարարականը, արտաքին տնտեսականը: Այս տարվանից երկրի ամբողջ արդյունաբերությունը, շինարարությունը, երկաթուղային տրանսպորտը, առևտուրը անցնում են նոր աշխատապայմանների: Հինգ արդյունաբերական մինիստրությունների միավորումներն ու ձեռնարկությունները անցնում են լրիվ տնտհաշվարկի ու ինքնաֆինանսավորման ռեժիմի, որտեղ շահույթը կոլեկտիվների արտադրական և սոցիալական զարգացման վճռական աղբյուրն է դառնում:

Ամրապնդվում և զարգանում են տնտեսական կյանքի կազմակերպման մեջ դեմոկրատական ցենտրալիզմի երկու հիմունքները: Պլանային ղեկավարման արդյունավետության ուժեղացման և կենտրոնացված կառավարման կատարելագործման հետ մեկտեղ հետևողականորեն ընդարձակվում են ձեռնարկությունների և միավորումների ինքնուրույնության ու պատասխանատվության սահմանները: Ստեղծվում են այնպիսի պայմաններ, որոնք բարձրացնում են նրանց ընկալունակությունը գիտատեխնիկական առաջադիմության նկատմամբ, նրանց շահագրգռությունը բարձր արտադրողաբար աշխատելու, հուսալիորեն համագործակցելու պարտնյորների հետ:

Հանրապետության կուսակցական կոմիտեների և սկզբնական կուսկազմակերպությունների կարևորագույն, անհետաձգելի խնդիրն է վերակառուցման նպատակասլաց ու հետևողական իրականացումը, որ կուսակցությունը դիտում է որպես մեր սոցիալիստական կարգերի ներքին ռեզերվների ու հնարավորությունների մոբիլիզացման գլխավոր լծակը, **ՍՄԿԿ XXVII** համագումարի գծի կենսագործման պարտադիր պայմանը: Վերակառուցման փորձը ցույց է տալիս, որ այնտեղ, ուր շեշտը դրվում է կազմակերպչական ու քաղաքական կենդանի աշխատանքի վրա, գործերն ավելի լավ են ընթանում: Մինչդեռ մեր կուսակցական, սովետական, տնտեսական շատ աշխատողներ քիչ են լինում տեղերում, դանդաղ են հրաժարվում աշխատանքի թղթաբարական ոճից: Պաշտոնատար անձինք պետք է ինչպես հարկն է ուսումնասիրեն գործերի վիճակը, կուսակցական գնահատական տան բացահայտված թերություններին, կադրերի ուշադրությունը հրավիրեն չլուծված հարցերի, արագացման կուրսի իրացման մարզում թույլ տրված կոնկրետ վրիպումների վրա, օգնեն նրանց՝ վերակառուցվելու և հաղթահարելու առկա սխալները, հնացած գործելակերպն ու մտածելակերպը:

Անհրաժեշտ է, որպեսզի կուսակցության քաղկոմները, շրջկոմները, սկզբնական կուսկազմակերպությունները վերլուծեն յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվում, ղեկավարման ու կառավարման բոլոր մակարդակներում տեղի ունեցող վերակառուցման ընթացքը, դրան ավելի մեծ թափ հաղորդեն, հասնեն այն բանին, որ յուրաքանչյուր տեղամասում գործերը փոխվեն դեպի լավը, մարդիկ իրենց վստահ զգան, աշխատեն ավյունով ու եռանդով: Հարկավոր է ուժեղացնել վերահսկողությունը ներքևից, մամուլի էջերում արծարծել այն հրատապ հարցերը, որոնք մտահոգում են շրջանի, գյուղի, ձեռնարկության թե՛ կոմունիստներին և թե բոլոր աշխատավորներին:

Ինչպես նշվեց ՀԿԿ Կենտկոմի 1986 թ. հոկտեմբերյան պլենումում, կուսակցական շատ կոմիտեներ դեռևս թույլ են ղեկավարում սկզբնական կուսկազմակերպությունների գործունեությունը, նրանց չեն նպատակամղում գործարարության և սկզբունքայնության, անզիջում պայքարի այն ամենի դեմ, ինչը խանգարում է վերակառուցմանը, աշխատանքի բարելավմանը:

Այժմ հրատապ խնդիր է դառնում մասնակի բարելավումներից ու վերափոխումներից անցումը դեպի կառավարման ու տնտեսավարման ամբողջական, արմատական բարեփոխման: Այդ բարեփոխումը կոչված է ընդգրկելու պլանավորումը, ֆինանսավորումը, գնագոյացումը, մատակարարումը, հանրային արտադրության կառավարման բոլոր օղակները՝ ժողովրդատնտեսական, ճյուղային, տերիտորիալ և ծրագրային:

Անհրաժեշտ է, որ ձեռնարկությունները, միավորումներն անցնեն ինքնածախսահատուցման և ինքնաֆինանսավորման ռեժիմի, որպեսզի ավելի լայնորեն ու ավելի խոր կերպով արմատավորվեն տնտհաշվարկային հարաբերությունները: Խնդիրն



այն է, որպեսզի մինիստրություններն ու գերատեսչություններն ավելի արագորեն փոխադրվեն կառավարման տնտեսական մեթոդների: Այլապես անհնար է իրոք խոշոր արդյունք ակնկալել ժողովրդական տնտեսության հիմնական օղակը՝ ձեռնարկությունը (միավորումը), տնտհաշվարկի փոխադրելուց: Անհրաժեշտ է տնտհաշվարկը վճռականորեն տանել «ներքև»՝ արտադրամասերը, բրիգադները, այնտեղ ընդգրկելով ամեն մի բանվորի, մասնագետի ու ղեկավարի: Միայն այս դեպքում է հնարավոր ապահովել ինքնուրույնություն ու պատասխանատվություն բոլոր մակարդակներում: Եվ միայն այս պարագայում են լիարյուն դրևորվում մարդկային գործոնը, աշխատավորների շահագրգռությունը և նախաձեռնությունը:

ՍՄԿԿ Կենտկոմը, սովետական կառավարությունը և ՀԱՄԿԽ-ն կարևոր որոշում են ընդունել արտադրական ոլորտում աշխատավարձի համակարգի կատարելագործման մասին: Նախատեսված միջոցառումները նոր տնտեսական մեխանիզմի ներդրման բաղկացուցիչ մասն են: Այսուհետև աշխատավարձի բարձրացումը կատարվելու է սկզբունքորեն այլ հիմքի վրա՝ արտադրական կոլեկտիվների վաստակած միջոցների հաշվին տնտեսական գործունեության բարելավման համապատասխան:

Ընթացիկ հնգամյակի երկրորդ տարում առանձնահատուկ ուշադրություն է դարձվելու ժողովրդական սպառման բարձրորակ ապրանքների թողարկմանը և բնակչությանը մատուցվող ծառայությունների որակի բարձրացմանը: Լայն պահանջարկ ունեցող ապրանքների արտադրություն պետք է կազմակերպվի բոլոր միավորումներում ու ձեռնարկություններում, անկախ դրանց մասնագիտացումից: Հարկ է առավելագույն ջանքեր գործադրել արմատապես բարելավելու արտադրանքի, ամբողջ աշխատանքի որակը: Որակի բարձրացման համար հետևողական պայքարը պետք է դառնա հանրապետության ամեն մի աշխատավորական կոլեկտիվի, յուրաքանչյուր աշխատավորի պատվի գործը: Դրան է նպատակամղված արտադրանքի պետընդունման կիրառումը: Վերջերս ՀԿԿ Կենտկոմը քննարկեց արտադրանքի պետընդունումը ներդնելու ուղղությամբ «Հայէլեկտրամեքենա» արտադրական միավորման ղեկավարության և կուսակցական կազմակերպության աշխատանքը: Կենտկոմը միավորման ղեկավարությանը և կուսակցական կազմակերպությանը պարտավորեցրեց լրացուցիչ միջոցառումներ իրականացնել, որոնք ապահովեն արտադրանքի պետընդունմանը ձեռնարկության անվերապահ պատրաստ լինելը: Կուսակցության քաղաքային ու շրջանային կոմիտեների, համապատասխան մինիստրությունների առջև խնդիր դրվեց այդ գործում համակողմանի աջակցություն ցույց տալ ձեռնարկություններին, վերահսկողության տակ առնել պետընդունման մարմինների գործունեությունը:

Կուսակցության XXVII համագումարում առանձնապես շեշտվեց, որ նախկին նյութատեխնիկական հիմքի վրա անհնար է հասնել արմատական փոփոխությունների: Խնդրի լուծման գրավականը արտադրության մեջ գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների ներդրումն է, գիտատեխնիկական հիմնարար ուղղությունների առաջանցումը, տնտեսական մեխանիզմի, կառավարման համակարգի վերափոխման հիման վրա ժողովրդական տնտեսության խոր վերակառուցումը: Մեր հանրապետության համար, որն ունի սահմանափակ տարածքային և բնական ռեսուրսներ, կլիմայական բարդ պայմաններ, տրանսպորտային ոչ լայն հնարավորություններ, հատուկ կարևորություն են ստանում գիտատեխնիկական առաջադիմության հարցերը:

Անցած տասնամյակում հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ ներդրվել են նոր տեխնիկայի մի շարք կարևորագույն միջոցառումներ: Յուրացվել են հայրենական և արտասահմանյան լավագույն նմուշներին համապատասխանող արդյունաբերական արտադրանքի նոր տեսակներ, սկզբունքորեն նոր տեխնոլոգիական պրոցեսներ, դրանց մեքենայացման ու ավտոմատացման նոր միջոցներ և այլն: Ընդլայնվում է ժողովրդատնտեսական խնդիրների լուծման ուղղությամբ գիտական հաստատություններում կատարվող հետազոտական աշխատանքների թեմատիկան: Յուրացվել է մի շարք նոր արդյունավետ կոնստրուկցիաների ու նյութերի արտադրությունը, արմատավորվել են շինարարության առաջադիմական կոնստրուկտիվ սիստեմներ ու մեթոդներ: Այդուհանդերձ հանրապետությունում գիտատեխնիկական

առաջադիմության և արտադրության ինտենսիվացման գործում տակավին լրիվ չի օգտագործվում եղած գիտատեխնիկական պոտենցիալը: Լուրջ թերություններ կան արտադրության մեջ գիտության ու տեխնիկայի նվաճումների ներդրման արագացման, ինքնածախսածածկման ժամկետների կրճատման ու իրականացրած միջոցառումների բարձր արդյունավետության ապահովման հարցերում: Մեր քաղաքացիական պարտքն է, որ հանրապետությունը համամիութենական սոցիալիստական մրցության մեջ արժանավոր տեղ գրավի ըստ արտադրանքի որակի և բարդության: Այս հնգամյակում հանրապետության նյութական արտադրության ճյուղերի հետագա զարգացումն ընթանում է գիտատեխնիկական առաջադիմության նվաճումների ներդրման, ստեղծված արտադրական և գիտական պոտենցիալի առավել ինտենսիվ օգտագործման, կարողությունների տեխնոլոգիական արդիականացման ու գործող ձեռնարկությունների վերակառուցման հունով: Նախատեսվում է մեքենայացված, հարահոս, ավտոմատ գծերի, կոմպլեքսային մեքենայացման և ավտոմատացված տեղամասերի ու արտադրությունների, ռոբոտատեխնիկայի և մանիպուլյատորների կիրառմամբ ճկուն արտադրական սիստեմների լայն արմատավորում:

Կուսակցության առաջադրած որակապես նոր, խոշորամասշտաբ խնդիրների իրագործումը պահանջում է արմատապես բարելավել գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքը, ակտիվացնել մարդկային գործոնը:

Վերջին տարիներս, հատկապես «Հայաստանի հանրապետական կուսակցական կազմակերպությունում ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան պլենումի որոշումների կատարման ընթացքի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի հայտնի որոշման ընդունումից հետո, մեզանում առավել մեծ ուշադրություն է նվիրվում գաղափարախոսական ոլորտի, մասսաների կոմունիստական դաստիարակության հարցերին: Կուսակցական կոմիտեներն ու կազմակերպությունները միջոցներ են ձեռնարկում գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքը կյանքի հետ, կոնկրետ խնդիրների լուծման հետ ավելի սերտորեն շաղկապելու, այն ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումի, կուսակցության XXVII համագումարի որոշումների լույսի ներքո վերակառուցելու նպատակով:

Ինչպես հայտնի է, այդ հարցերը քննարկվել են ՀԿԿ Կենտկոմի պլենումում, բյուրոյում ու քարտուղարությունում, հանրապետության կուսակցական ակտիվի ժողովում, քաղաքային ու շրջանային բոլոր կուսակցական կոմիտեներում, սկզբնական կազմակերպություններում: Կադրերով ամրապնդվել են գաղափարախոսական մի շարք կարևոր տեղամասեր: Դրական տեղաշարժեր կան պրակտիկ գործունեության մեջ: Ավելի նպատակամետ և բովանդակալից են դարձել մարդկանց հետ կատարվող աշխատանքի շատ ձևեր ու մեթոդներ: Ակտիվացել է ղեկավար կադրերի մասնակցությունը աշխատավորների դաստիարակության գործին: Վրաստանի և Ադրբեջանի կոմկուսների Կենտկոմների հետ համատեղ ծրագիր է մշակվել Անդրկովկասի հանրապետությունների աշխատավորների ինտերնացիոնալ կապերի հետագա զարգացման մասին: Հանրապետական մամուլում ավելի լայնորեն է լուսաբանվում գաղափարախոսական աշխատանքը, սրությամբ են դրվում չլուծված պրոբլեմները, ավելի կոնկրետ է խոսվում թերությունների մասին: Կուտակվել է հարբեցողության դեմ, դեռահասների շրջանում իրավախախտումների կանխման համար մղվող պայքարի որոշակի փորձ:

Հարկ է նկատել, որ չնայած կատարված որոշակի աշխատանքին՝ գաղափարախոսական բնագավառում դեռևս առկա են լուրջ թերություններ ու բացթողումներ, որոնց վերջերս անդրադարձավ ՍՄԿԿ Կենտկոմը՝ քննության առնելով հիշյալ որոշման կատարման ընթացքը: Այս առնչությամբ ՀԿԿ Կենտկոմի 1986 թ. հոկտեմբերյան պլենումը հանգամանորեն քննարկեց ՍՄԿԿ XXVII համագումարի պահանջների լույսի ներքո գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա կատարելագործման ուղղությամբ հանրապետության կուսակցական կազմակերպությունների խնդիրները: Պլենումը նշեց, որ կուսակցական կոմիտեներն ու կուսկազմակերպությունները միջոցներ են ձեռնարկում ՍՄԿԿ Կենտկոմի 1984 թվականի հոկտեմբերի 17-ի որոշումը կատարելու, քաղաքական-դաստիարակչական գործունեության արդյունավետությունը բարձրացնելու համար:

Անհրաժեշտ է, որպեսզի կուսակցական կոմիտեներն ինքնաքննադատաբար, խո-



րապես վերլուծեն գործերի վիճակը, բացասական երևույթները գնահատելիս ցուցաբերեն քաղաքական սկզբունքային մոտեցում, պահանջեն սկզբնական կուսակցական կազմակերպություններից, գաղափարախոսական գերատեսչություններից, ղեկավար կադրերից՝ գաղափարաքաղաքական աշխատանքի վիճակի համար դրսևորելու անհրաժեշտ պահանջկոտություն: Լուրջ բարելավում է պահանջում աթեիստական ու բարոյական դաստիարակությունը, որոնց մասին հաճախ են անդրադառնում հանրապետական մամուլը, հեռուստատեսությունը և ռադիոն: Վերջերս տեղի ունեցած հաշվետու-ընտրական ժողովներում կոմունիստներն իրավացիորեն նշում էին, թե դեռևս ամենուրեք չէ, որ անհանդուրժողության մթնոլորտ է ստեղծված սոցիալիստական հասարակությանը խորթ այնպիսի երևույթների նկատմամբ, ինչպիսիք են կաշառակերությունը, պորտաբուծությունը, սպեկուլյացիան, հափշտակումները, պաշտոնական դիրքի չարաշահումը:

Ինչպես պլենումում իր զեկուցման մեջ նշեց ընկեր Կ. Դեմիրճյանը, դանդաղկոտությունը թերությունների և էական վրիպումների վերացման գործում, դրանց առկայությունը գաղափարախոսական աշխատանքում բացատրվում են նրանով, որ մեզանում պակասում են հետևողականությունն ու նպատակասլացությունը նախատեսված պլանների իրացման, գաղափարախոսական աշխատանքի կատարելագործման և վերակառուցման գործում: Հաճախ թույլ է տրվում ձևական մոտեցում: Ամենուրեք չէ, որ հաստատված է կուսակցական խիստ վերահսկողություն, խստապահանջություն և այնպես է ստացվել, որ միջոցառումներ եղել են շատ, իսկ արդյունքներ, կոնկրետ դրական փոփոխություններ, տեղաշարժեր՝ քիչ: Գաղափարախոսական աշխատանքի առանձին ուղղություններում մենք չենք հասել դրա արդյունավետության բարձրացման, չենք կարողացել վերացնել վրիպումներն ու թերությունները: Պատշաճ լուծում չեն գտնում մի շարք պրոբլեմներ, որոնք մեր հանրապետության յուրահատկությունների պայմաններում առանձնակի ուշադրություն են պահանջում:

Գաղափարախոսական աշխատանքի արդյունավետությունը մեծապես բարձրանում է, եթե այն սերտորեն շաղկապվում է քաղաքական, տնտեսական և սոցիալական ձեռնարկումների հետ: Դա հնարավորություն է ընձեռում արմատախիլ անել խրատականությունը, կյանքի կենդանի շնչով տոգորել կոչերն ու լոզունգները: Հարկ է նաև շեշտել, որ այնտեղ, ուր լավ հիմքերի վրա է դրված գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքը, սոցիալ-տնտեսական զարգացման հարցերը լուծելիս մշտապես հասնում են լավ արդյունքների:

Այժմ հրատապ խնդիր է գաղափարախոսական ու կազմակերպական աշխատանքը սերտորեն շաղկապել կյանքի ռեալ պրոբլեմների հետ, բարձրացնել պատասխանատվությունը հանձնարարված գործի նկատմամբ, այդ աշխատանքը մոտեցնել մարդուն, նրան նպատակամղել դժվարությունների հաղթահարմանը, հասարակության առջև կանգնած խնդիրների լուծմանը: ՍՄԿԿ XXVII համագումարի Քաղաքական զեկուցման մեջ իրավացիորեն ասվեց, որ սոցիալ-տնտեսական զարգացման դանդաղումը եղավ ոչ միայն տնտեսական ղեկավարման, այլև գաղափարախոսական աշխատանքում թույլ տրված լուրջ վրիպումների հետևանքը: Սրանից հետևում է, որ խոսքը վերաբերում է գաղափարադաստիարակչական աշխատանքի ոչ թե մակերեսային բարելավմանը, այլ սոցիալական պրակտիկայի պահանջներից բխող արմատական խոր վերակառուցմանը: Հարկավոր է հասնել այն բանին, որ յուրաքանչյուր աշխատավոր ըմբռնի ներկա պահի սրությունը, նրա բեկումնային բնույթը:

Կոմունիստական գաղափարախոսության ճշմարտացիությունը, կուսակցության քաղաքական կուրսի սկզբունքայնությունը, կացութաձևի արդարությունը մարդիկ պետք է տեսնեն ու զգան մշտապես՝ ինչպես առհասարակ ամբողջ հասարակության մասշտաբով, այնպես էլ ամենօրյա կյանքում: Գաղափարախոսական ներգործուն բոլոր միջոցներով պետք է ցույց տրվի, թե ինչով է ապրում մարդը, ինչն է հուզում նրան, պարզաբանվեն այն պրոբլեմները, որոնց նա բախվում է:

Անհրաժեշտ է մշտապես հաշվի առնել սոցիալիստական ու բուրժուական գաղափարախոսության սուր հակամարտությունը: Չի կարելի մոռանալ, որ մենք գործ ունենք սոցիալիզմի թշնամիների, դասակարգային փորձառու հակառակորդի հետ: Ուստի հարկավոր է հմտորեն մերկացնել բուրժուական պրոպագանդայի անվանար-

կումները, ըստ ամենայնի բարձրացնել սովետական քաղաքացիների զգոնությունը, անհանդուրժողական վերաբերմունք ձևավորել մեր հասարակությանը հակամետ բոլոր երևույթների նկատմամբ:

Մասշտաբային ու լարված մեր պլանները, նշել է ընկեր Մ. Ս. Գորբաչովը, միանգամայն ռեալ են և իրագործելի: Ամեն ինչ կախված կլինի նրանից, թե ինչպես կօգտագործվի արտադրության արդյունավետության բարձրացման գլխավոր լծակը՝ գիտատեխնիկական առաջընթացի արագացումը, թե որքանով կհաջողվի կառուցվածքային փոփոխություններ կատարել էկոնոմիկայի ասպարեզում, վերակառուցել կառավարման համակարգը և տնտեսավարման մեթոդները: Եվ, իհարկե, թե իրենք՝ աշխատավորները, ինչպիսի շահագրգռությամբ, նախաձեռնությամբ, ստեղծագործաբար կմասնակցեն այս մեծ, հիրավի պատմական գործին:

ՀԿԿ Կենտկոմի 1986 թ. հոկտեմբերյան պլենումը արձանագրեց, որ հետզհետե ծավալվում են էկոնոմիկայի մեջ սկսված դրական տեղաշարժերը: Սակայն, ցավոք, դրանք տեղի են ունեցել ոչ ամենուրեք: Այնպիսի կոլեկտիվների կողքին, որտեղ վերակառուցում են, տնտեսավարում նոր ձևով, մշտապես որոնում և ուղիներ են գտնում գործի բարելավման համար, մեզանում դեռևս քիչ չեն նաև այնպիսիք, ուր ամենևին չի զգացվում նորի, վերակառուցման ոգին, որտեղ մի կողմ են քաշվել տեղի ունեցող վերափոխումներից, գործում են հին ձևով, չեն ապահովում առաջադրված խնդիրների կատարումը:

Երբ վերհանում ենք այս կամ այն խնդրի չկատարման արմատները, ետ մնացող ձեռնարկությունում ու տնտեսությունում տիրող վիճակը, ակնհայտ է դառնում, որ անհաջողությունների, աշխատանքի ձախողման հիմնական պատճառներից մեկը մարդկային գործոնի թերագնահատումն է, կուսակցական կազմակերպությունների դաստիարակչական գործունեության ցածր, այսօրվա պահանջներին բնավ չհամապատասխանող մակարդակը:

Մայրաքաղաքի Լենինյան և 26 կոմիսարների շրջաններում կատարված ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ գիտատեխնիկական առաջադիմության արագացման գործում արմատական փոփոխություններ, տեղաշարժեր չեն կատարվել: Շատ ձեռնարկություններում կուսակցական կազմակերպությունները այդ խնդրի լուծմանը մոտեցել են հին մեթոդներով, չեն կարողացել մոբիլիզացնել մարդկանց, նրանց ուժերը նպատակամղել գիտության և տեխնիկայի նվաճումների արագ ներդրմանը: Մեծ մտահոգություն է պատճառում այն իրողությունը, որ առաջվա պես լիովին չեն կատարվում նոր տեխնիկայի ու տեխնոլոգիայի ներդրման պլաններն ու միջոցառումները: Գիտատեխնիկական առաջադիմության արգացման պրոբլեմների նկատմամբ նորովի մոտեցումը բացակայում է նաև հանրապետության շատ կուսակցական կոմիտեների գործունեության մեջ:

Հաստատակամորեն հաղթահարելով անբարենպաստ միտումները, էկոնոմիկան էքստենսիվ ուղիով զարգացնելու եղանակները, տնտեսավարման իրենց դարն ապրած մեթոդների վերապրուկները. կուսակցական կազմակերպություններն ու կոմիտեները պետք է մշտապես պաշտպանեն նորացման ստեղծագործական լիցքը, վերակառուցմանը հաղորդեն գործարար բնույթ: Հետևողականորեն իրականացվող գաղափարախոսական աշխատանքով հարկ է ստեղծել այնպիսի մթնոլորտ, որ բոլորը խորապես ըմբռնեն տնտեսական մեխանիզմի և մարդկանց գիտակցության վերակառուցման փոխադարձ կապը:

Այս բարդ խնդիրների լուծման նպատակով անհրաժեշտ է ժամանակի պահանջների ոգով գաղափարապես վերազինել կադրերին: Այսօր առանձնապես կարևոր է ձևավորել ժամանակակից խնդիրների բնույթի խոր ըմբռնում, գիտական կայուն աշխարհայացք, սկզբունքայնություն, բարձր կուլտուրա, գործի նկատմամբ պատասխանատու վերաբերմունք ցանկացած տեղամասում: Այս առնչությամբ դժվար է գերագնահատել կոմունիստների, աշխատավորական լայն զանգվածների մարքս-լենինյան կրթության համակարգի դերը՝ կուսակցության գաղափարախոսական աշխատանքի կարևորագույն բաղկացուցիչ մասը:

Հասարակության սոցիալ-քաղաքական կյանքում տեղի ունեցող արմատական փոփոխությունների հաշվով էլ պետք է կառուցվի նաև ուսուցումը մարքս-լենինյան կրթության համակարգում: Այն պետք է նպատակամղի պայքարելու աշխատանքի



ու մտածողության հնացած մեթոդների, այն ամենի դեմ, ինչն արգելակում և դանդաղեցնում է մեր հասարակական զարգացումը:

ՍՄԿԿ XXVII համագումարից հետո կուսակցության գաղափարախոսական զինանոցը հարստացավ տեսական նոր փաստաթղթերով, որոնք ըստ էության պատմական համաժողովի գաղափարների շարունակությունն ու զարգացումն են: Այդ փաստաթղթերից են ՍՄԿԿ Կենտկոմի՝ «Կոմունիստ» հանդեսի մասին որոշումը և ընկեր Մ. Ս. Գորբաչովի ճառը հասարակական գիտությունների ամբիոնների վարիչների համամիութենական խորհրդակցությունում 1986 թ. հոկտեմբերի 1-ին:

Կուսակցությունը սովորեցնում է, որ պատմական շրջադարձերը, հասարակական առաջընթացի, սոցիալ-տնտեսական ու քաղաքական պայմանների օբյեկտիվ միտումների որակական տեղաշարժերը իրենց անընդհատ արտացոլումը և տեսական հիմնավորումն են գտնում մարքսիզմ-լենինիզմի՝ որպես կենդանի ուսմունքի մեջ, զարգացնելով նրա համապատասխան դրույթները, հարուստ ու բազմակողմանի բովանդակությունը: Միանգամայն ճշմարտացի է այն հետևությունը, որ արդի պայմաններում առանձնապես կարևոր է առավել ինտենսիվ դարձնել կուսակցության և հասարակության գաղափարական կյանքը, բարենպաստ պայմաններ ստեղծել գիտական համարձակ որոնումների համար, ինչպես նաև սխոլաստիկայի, դոգմատիզմի և տիրացուականության հաղթահարման համար, որոնք խոչընդոտում են ստեղծագործական մտքի զարգացումը: Հարկ է կոնկրետացնել և զարգացնել մարքսիզմ-լենինիզմի՝ որպես ամբողջական ուսմունքի, հիմնարար սկզբունքները և դրույթները, նրա բոլոր բաղկացուցիչ մասերի՝ մարքս-լենինյան փիլիսոփայության, քաղաքատնտեսության և գիտական կոմունիզմի մեկնաբանության մեջ: «Կոմունիստը» և կուսակցության մյուս տեսական-քաղաքական պարբերականները կոչված են լինելու զարգացող հասարակական մտքի, մասսաների սոցիալական փորձի ընդհանրացման ամբիոններ, պաշտպանելու ամեն նորը, առաջավորը, որը ծնվում է վերակառուցման ընթացքում, բացահայտելու նրա անհետաձգելի, խորապես հեղափոխական բնույթը, անհաշտ կերպով հանդես գալու քարացածության, հնացած պատկերացումների ու նախապաշարմունքների դեմ՝ ինչպես տեսության մեջ, այնպես էլ պրակտիկայում: Հրատապ ու կենսական խնդիր է վառ և համոզիչ կերպով ցույց տալ լենինյան գաղափարների հարստությունը և նրանց նշանակությունը, դրանց սերտ կապն արդիականության հետ: Կուսակցությունը պահանջում է ըստ ամենայնի նպաստել ժամանակի թելադրանքին համահունչ քաղաքական, կազմակերպչական, տնտեսական և գաղափարադաստիարակչական գործունեության մեջ նոր մտածելակերպի ու նոր մոտեցումների զարգացմանը:

Կասկած չի հարուցում, որ հասարակական կյանքի վերակառուցման ու նորացման ընթացքում տեղի է ունենում գաղափարների, հոգեբանական դրույթների, մտածողության ու վարքագծի ոճերի սուր, ոչ միշտ բացահայտ, բայց անզիջում պայքար: Հինը դիմադրում է, խուսանավում, փորձում գտնել կյանքի դինամիկային հարմարվելու ձևեր: Միամտություն կլիներ ենթադրել, որ առկա են կենսական հարցերի լուծման պատասխանները: Կյանքում պրոբլեմներն ավելի շատ են, քան պատրաստի լուծումները: «Տեսությունն անհրաժեշտ է ոչ միայն հեռանկարային սոցիալական ու քաղաքական կողմնորոշման համար,— ասաց Մ. Ս. Գորբաչովը հասարակական գիտությունների ամբիոնների վարիչների համամիութենական խորհրդակցությունում: Այն անհրաժեշտ է բառացիորեն մեր յուրաքանչյուր առաջընթաց քայլի համար: Քիչ թե շատ խոշոր գործնական ոչ մի հարց չի կարող լուծվել առանց իմաստավորելու և տեսականորեն հիմնավորելու»:

Տեսական մտքի առջև խնդիր է դրված խոր ու բազմակողմանի բացահայտելու սոցիալիզմի արդի փուլի առանձնահատկությունները, մինչև 2000 թվականը և դրանից հետո սոցիալիզմի որակապես նոր վիճակի հասնելու առանձին փուլերը, տալու արդի աշխարհի գիտականորեն օբյեկտիվ պատկերը:

Հասարակության մեջ տեղի ունեցող հեղափոխական տեղաշարժերը պահանջում են հասարակագիտության արմատական վերակառուցում, կյանքում ծնունդ առնող սոցիալական նոր երևույթների հիմնավորված վերլուծություն ու բնութագրում:

Դեմքով շրջվել դեպի բուն կյանքի բազմազանությունը, դա է ՍՄԿԿ համագումարի հիմնական պահանջը և միայն այդ ուղիով կարելի է հասնել արդի մարքսի-

տական-լենինյան մտքի ստեղծագործական հարստացմանը: Ուստի անհրաժեշտ են գիտական խիզախումներ, հիմնարար տեսական ընդհանրացումներ, որոնողական բնույթ ունեցող ուղղություններում գաղափարների բացահայտ համադրում և մրցակցություն, դիսկուսիաներ և քննարկումներ հասարակական գիտությունների բոլոր չուսումնասիրված կամ քիչ ուսումնասիրված հարցերի շուրջ: Հիրավի, գլխավորը սոցիալական հետազոտությունների իրական արդյունքներն են, այն, թե դրանք ինչպես են ծառայում պրակտիկային, հասարակության զարգացման արագացմանը, կուլտուրայի հարստացմանը, մարդկային պոտենցիալի ակտիվացմանը, հենց իր՝ մարդու վերելքին՝ դեպի գիտելիքների և բարոյականության բարձունքները:

Կուսակցության այսօրվա պահանջների լույսի ներքո քննադատաբար վերլուծելով կատարված աշխատանքը, հարկ է նշել, որ հանրապետությունում հասարակագիտությունը դանդաղ է վերակառուցվում, այն առաջվա պես ընդհանուր առմամբ հեռու է կյանքի պահանջներից: Ինչպես նշվեց ՀԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան պլենումում, Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի առանձին ինստիտուտներում և բուհերի հասարակական գիտությունների որոշ ամբիոններում դեռևս ձևական մոտեցում է ցուցաբերվում գիտահետազոտական աշխատանքների պլանավորմանը, ծանրակշիռ տեղ չի հատկացվում մարքս-լենինյան տեսության, նոր մարդու ձևավորման, նրա կոմունիստական դաստիարակության պրոբլեմների մշակմանը: Մի շարք գիտական հիմնարկներում և հասարակական գիտությունների ամբիոններում գերակշռում է պատմական թեմատիկան: Մինչդեռ հանրապետության սոցիալական և հոգևոր կյանքի հրատապ շատ հարցեր տարիներ շարունակ գիտական հետազոտության, գործնական հանձնարարականների մշակման կարիք են զգում: Բավարար ուշադրություն չի նվիրվում սոցիալիստական ապրելակերպի հարցերին, գյուղի սոցիալական երևույթներին, հասարակական կարծիքի ձևավորմանը, կրոնի պատմաքննական վերլուծությանը, դասակարգային հակառակորդների կոնցեպցիաների քննադատությանը:

Տակավին չի վերացվել մանրաթեմայնությունը: Արդի պահանջներին չի համապատասխանում մի շարք հետազոտությունների տեսական մակարդակը, դրանցում հաճախ չկան նոր դրույթներ ու հետևություններ, գործնական հանձնարարականներ և հիմնավորված կանխատեսումներ: Հասարակագետների աշխատություններում հաճախ պակասում են ինքնատիպ մտքեր, դատողություններ, համարձակ հարցադրումներ:

Փաստ է նաև, որ առանձին գիտաշխատողներ մեթոդաբանական թույլ պատրաստվածության պատճառով խորապես ու բազմակողմանիորեն չեն քննում թեման, միշտ չէ, որ հանդես են բերում խիստ գիտական, դասակարգային մոտեցում: Այս սկզբունքների անտեսումը հանգեցնում է սխալների, չհիմնավորված եզրակացությունների, որոնք հաճախ աղավաղում են գիտության կողմից արդեն սահմանված կոնցեպցիաները: Մտահոգություն է պատճառում այն իրողությունը, որ գաղափարապես խոցելի աշխատությունները ոչ միշտ են սկզբունքային քննադատության ենթարկվում գիտական պարբերականներում, գիտական հիմնարկների կոլեկտիվներում: Վերջինս չի նպաստում ոչ ճիշտ հայացքների հաղթահարմանը: Սա է թերությունների հարատևման, այն բանի պատճառներից մեկը, որ առանձին հեղինակներ չեն հրաժարվում ոչ գիտական դիրքերից գրված անմշակ գործերը հրատարակելու փորձերից:

Գիտական հիմնարկների կուսկազմակերպությունների առաջնահերթ խնդիրն է բարելավել յուրաքանչյուր գիտաշխատողի գաղափարաքաղաքական կոփման, նրա մեթոդաբանական զինվածության բարձրացման աշխատանքը: Անհրաժեշտ է գիտական կոլեկտիվներում, մասնավորապես հասարակագիտական հաստատություններում, ստեղծել ստեղծագործական որոնման և ընկերական բանավեճերի մթնոլորտ, որը ենթադրում է մտքի սթափությունն ու ճկունությունը մշտապես զուգակցել դասակարգային դիրքերի հստակության, աշխարհայացքային և մեթոդաբանական սկզբունքայնության հետ:

Երկրում տեղի ունեցող վերափոխումների գաղափարական հիմքը մարքս-լենինյան ուսմունքն է: Տեսության ուժն ու զորությունը ինքնանորացման կարողությունն է, զարգացման պատմական նոր շրջանը տեսնելու և արդիականության ամե-



նակնճռահույզ պրոբլեմներին պատասխաններ տալու ունակությունը: Մարքսիզմ-լենինիզմի հեղափոխական քննադատականության ոգին լիովին ցուցադրեց ՍՄԿԿ XXVII համագումարը: Անհրաժեշտ է հասնել այն բանին, որ յուրաքանչյուր սովետական մարդ գործում մարմնավորի կուսակցության առաջադրած նորարարական դրույթների էությունը: Չափազանց կարևոր է ապահովել տեսության և պրակտիկայի միասնությունը, թույլ չտալ այնպիսի վիճակ, երբ ընդունվել են կարծես նոր կոչեր, իսկ գործերը վարվում են հին ձևով: Հարկավոր է նոր գաղափարների նկատմամբ լինել ընկալուն և այդ հիմքի վրա է՛լ ավելի բարձրացնել մեր մարդկանց հոգևոր ակտիվությունը:

Ժամանակի հրամայական պահանջն է որակական նոր մակարդակի բարձրացնել մասսայական ինֆորմացիայի միջոցների աշխատանքը: Նրանք կոչված են լինել հասարակական մտքի, մասսաների սոցիալական փորձի ընդհանրացման ամբիոն, պաշտպանել վերակառուցման ընթացքում ծնունդ առնող ամենանորը, առաջավորը, հանդես գալ քարացածության և հնամոլության, իրենց դարն ապրած պատկերացումների և նախապաշարումների դեմ:

Սոցիալիստական հասարակության սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու կուսակցության կուրսը, մշակութային շինարարության բնագավառում ՍՄԿԿ XXVII համագումարի առաջադրած ծրագրային նպատակները պահանջում են որակապես նոր մոտեցում հանդես բերել գեղարվեստական պրոցեսի նկատմամբ: Դրանք լայն ասպարեզ են բացում գրականության ու արվեստի գործիչների առջև: Նրանց վսեմ քաղաքացիական պարտքն է ակտիվորեն մասնակցել հասարակության սոցիալ-տնտեսական կյանքի նորացմանը, հումանիզմի ու բարոյականության իդեալների ոգով դաստիարակել մարդկանց: Հասարակության առաջընթաց շարժման, նրա բարոյական անաղարտության համար կարևոր է, որ արվեստի ստեղծագործություններում բացասական երևույթների քննադատությունը իր ողջ սրությամբ կրի ստեղծարար, կոնստրուկտիվ բնույթ, տոգորված լինի սոցիալական լավատեսությամբ:

Ընթացիկ հնգամյակի երկրորդ տարվա պլանային առաջադրանքները խիստ լարված են, բայց ռեալ: Դրանք ժողովրդական տնտեսությունը նպատակամղում են կուսակցության XXVII համագումարի կուրսի հետևողական իրականացմանը, տեխնիկական առաջադիմության և արտադրության ինտենսիվացման հիման վրա հանրապետության սոցիալ-տնտեսական զարգացման արագացմանը:

Հանրապետության աշխատավորները ի պատիվ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության յոթանասուներորդ տարեդարձի ընդունել են սոցիալիստական պարտավորություններ՝ կատարելու ու գերակատարելու 1987 թվականի պլանային առաջադրանքները: Հոկտեմբերի հոբելյանական տարին պետք է նշանակալից դեր խաղա սոցիալ-տնտեսական զարգացման արագացման պլանների իրացման մեջ: Այս տարի պետք է ավելի լայնորեն, քան երբևէ, կիրառել կառավարման տնտեսագիտական մեթոդները, աճի ինտենսիվ գործոնները, գիտության ու տեխնիկայի նվաճումները: Վերակառուցման բոլոր լծակները, կուտակված փորձն ու կամքը կենտրոնացվում են այն բանի վրա, որ հուսալիորեն ապահովվեն էկոնոմիկայի նոր կայուն վերելք, ժողովրդի բարեկեցության բարձրացում:

Հանրապետության աշխատավորները, ինչպես և ողջ սովետական ժողովուրդը, ապագային նայում են հիմնավոր լավատեսությամբ, կուսակցության նոր ձեռնարկումները մինչև վերջ իրականացնելու հաստատ վճռականությամբ:

---

# ՄԻՋԻՄՊԵՐԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱԿԱՍՈՒԹՅՈՒՆՆԵՐ. ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ՀԱՄԱՏԵՔՍՏԸ

**Ա. ՅԱԿՈՎԼԵՎ**
ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար

*ՆԵՐԿԱ ՀԱՐՅՈՒՐԱՄՅԱԿԻ երկրորդ կեսը կարծես աստիճանաբար նախապատրաստել էր համաշխարհային զարգացման նոր շրջանի սկիզբը, որին բնորոշ են հասարակական պրոցեսների աննախընթաց պատմական արագությունները, դինամիզմն ու հզորությունը, մարդկության վիթխարիորեն աճած մտավոր ու նյութական պոտենցիալը և, որպես այդ ամենի հետևանք, մոլորակի բոլոր մարդկանց առանձնահատուկ պատասխանատվության անհրաժեշտությունն ընդհանուրի ապագայի համար։*

*Աշխարհը դառնում է ավելի ու ավելի բազմաչափ, փոխկապակցված, փոխադարձաբար պայմանավորված, ձեռք է բերում ամբողջական հատկանիշներ։*

*Զարգացման սկզբունքորեն նոր բնագծեր է դուրս գալիս համաշխարհային սոցիալիզմը։ Թե՛ քաղաքականապես, թե՛ տնտեսապես ավելի ու ավելի ծանրակշիռ իրողություն են դառնում տասնյակ ազատագրված պետությունները։ Ձևավորվում է միջուկային դարի ռազմաստրատեգիական նոր իրավիճակ։ Գիտության ու տեխնիկայի հաջողությունները, արտադրողական ուժերի զարգացումը, մարդկության առջև օբյեկտիվորեն ծառացած համընդգրկուն պրոբլեմների մասշտաբները ստիպում են վերստին իմաստավորել ինչպես անցյալի շատ պատկերացումներ, այնպես էլ մեր ժամանակի երևույթները։ Այլ խոսքով, մինչմիջուկային դարաշրջանի և գիտատեխնիկական հեղափոխությանը նախորդած իրավիճակի հայեցողությունների, հայացքների, դոկտրինաների ու նախապաշարմունքների կուտակումների միջով ուղի է հարթում բովանդակությամբ իրատեսական և ոգով հեղափոխական նոր մտածողությունը։*

*Էական տեղաշարժեր են կատարվում կապիտալիզմի էկոնոմիկայում և քաղաքականության մեջ։ Սրվում են ավանդական հակասությունները, ձևավորվում, երևան են գալիս դրանց նոր խմբեր։ Ձևափոխվում են դրանց գործողության մեխանիզմները և կոնֆլիկտների լուծման մեթոդները։ Համաշխարհային կապիտալիստական սիստեմում առաջացել են համապարփակ, ռեգիոնալ և միջռեգիոնալ բնույթի տնտեսական ու սոցիալ-քաղաքական կապերի նոր միահյուսումներ։ Այսօր առանձնապես այժմեական են Վ. Ի. Լենինի այն խոսքերը, որ այդքան մասշտաբային փոփոխությունների ամբողջությունը «նրանց բոլոր ճյուղավորություններով կապիտալիստական համաշխարհային տնտեսության մեջ 70 Մարքս անգամ չէին կարող ընդգրկել։ Ամենաշատը, ինչ արված է, այն է, որ հայտնագործված են այդ փոփոխությունների* **օրենք**-ները, *գլխավոր կողմերով և հիմնականում ցույց է տրված այդ փոփոխությունների և դրանց պատմական զարգացման օբյեկտիվ տրամաբանությունը...» (ԵԼԺ, հ. 18, էջ 427)։ Այս խոսքերը մարքս-լենինյան տեսության բուն էության մարտնչող հակադոգմատիզմի, վերլուծության ու զարգացման նրա ունակության լավագույն ապացույցն են։*

*Քաջ հայտնի է այն ճշմարտությունը, որ նոր հասարակական միտումները իրենց ուղղագիծ ու միանշանակ չեն դրսևորում։ Նրանք տարասլանային են, բազմատարբերակ, միահյուսվում են հակամիտումների հետ, հարուստ են ճյուղավորություններով ու զիգզագներով, զարգացման տեմպերի մեծ տատանումներով։ Կուսակցության XXVII համագումարին ներկայացված ՍՄԿԿ Կենտկոմի Քաղաքական զեկուցման մեջ, համագումարի ընդունած ՍՄԿԿ ծրագրում խորապես իմաստավորված է մեր ապրած ժամանակը, տրված է կապիտալիստական աշխարհի ներքին հակասությունների, ժամանակակից միջիմպերիալիստական փոխհարաբերությունների դիալեկտիկայի համակողմանի վերլուծությունը։ «Դարի վերջին տասնամյակները,— համագումարում ասաց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովը,— բնութագրվում են* միջիմպերիալիստական հակասությունների *նոր բռնկումներով, դրանց նոր ձևերի և ուղղությունների դրսևորումով։ Կապիտալիզմի հակասությունների այդ խումբը չվերացրին ո՛չ դասակարգային մերձավորությունը, ո՛չ ուժերի միավորման շահագրգռվածությունը, ո՛չ ռազմական, տնտեսական կամ քաղաքական ինտեգրացումը, ո՛չ գիտատեխնիկական հեղափոխությունը»։*

*Իմպերիալիզմի բուն էությանը ներհատուկ են անմիաբանությունը, տընտեսական, սոցիալական և քաղաքական շահերի անզիջելի հակասությունները։ Նրա հակամարտությունները անհաղթահարելի են։ Կապիտալիզմի օրոք ամեն մի առաջադիմության ուղեկցում է «նաև հակասությունների «առաջադիմությունը», այսինքն՝ նրանց սրումը և ընդլայնումը» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 2, էջ 222)։*

*Կյանքը բազմաթիվ օրինակներով հաստատում է կապիտալիզմի «հակասությունների «առաջադիմության»» մասին լենինյան դրույթի տեսական ու մեթոդաբանական խորությունը, խորաթափանցությունը։ Դրանց շարժումը տեղի է ունենում միաժամանակ և՛ քանակական, և՛ որակական ասպեկտով, կրում է անփոփոխ դիալեկտիկական բնույթ։ Կապիտալիզմին չհաջողվեց ազատվել իր այն, անվանենք դրանք ավանդական, հակասություններից ոչ մեկից, որոնք վերլուծվել են դեռ մարքսիզմ-լենինիզմի կլասիկների կողմից։ Չհաջողվեց, չնայած արտադրողական ուժերի զարգացման մակարդակում տեղի ունեցած բոլոր փոփոխություններին, գիտատեխնիկական հեղափոխության լայն թափին, բոլոր հնարամտություններին և անգամ պետական-մոնոպոլիստական կարգավորման պրակտիկայի մի շարք ուղղություններում ունեցած հաջող առաջընթացներին։*

***Սա, իհարկե, չի նշանակում, թե իբր անփոփոխ են մնում նաև այդպիսի հակասությունների դրսևորման ձևերը։ Ձևերն են հենց փոխվում, և երբեմն էլ շատ էապես։*** *Կապիտալի դասակարգային ստրատեգիան էլ, մասնավորապես, ուղղված է այն բանին, որ փորձի ձևերի փոփոխությունները ներկայացնել որպես էության փոփոխություններ, դրանով իսկ թուլացնի աշխատավորների հակամոնոպոլիստական, հակաիմպերիալիստական պայքարը։ Բայց եթե այսօր աշխատանքի ու կապիտալի միջև, արտադրության հասարակական բնույթի ու դրա պտուղների մասնավոր սեփականատիրական յուրացման միջև եղած հակասությունները արտաքուստ շատ բաներում դրսևորվում են այլ կերպ, քան մի քանի տասնամյակ առաջ, ապա դա չի փոխում գործի էությունը, թեպետև ազդում է սոցիալական, քաղաքական, հասարակական-հոգեբանական կոնկրետ պրոցեսների վրա կապիտալիզմի սիստեմում։*

*Կապիտալիզմի համար ավանդական որոշ հակասությունների ձևափոխման հետ միասին առաջանում են նաև նոր հակասություններ։ Նշենք միայն, որ հակասությունների նոր հանգույցների ու խմբերի առաջացումը կապված է երկակի կարգի պրոցեսների հետ։ Մի կողմից կապիտալիզմը, զարգանալով,*

բարդանալով, անցնելով իր էվոլյուցիայի նոր աստիճաններին, գլոբալ օլիգարխիզմին, ծնում է նաև ավելի բարդ հակասություններ, որոնք արտացոլում են ձևոք բերված սոցիալ-տնտեսական որակը։ Այդպիսիք են, օրինակ, իմպերիալիզմի կենտրոնների և զարգացող պետությունների՝ նեոգաղութատիրական շահագործման օբյեկտների միջև եղած ժամանակակից հակասությունները։

Մյուս կողմից, դրանց մոտ են, բայց դրանցից տարբեր են այն հակասությունները, որ ծնում են պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի քաղաքականությունը, տիրապետող դասակարգի փորձերը՝ ինչ-որ կերպ թուլացնելու, հաղթահարելու ավանդական տիպի հակասությունները։ Որոշ չափով այդպիսի փորձերը հաջողություն բերում են։ Ժամանակակից կապիտալիզմը, օրինակ, սովորել է խույս տալ գերարտադրության չափից ավելի աղետալի ճգնաժամերից, դրանց հետ կապված սուր և խոր անկումներից, որոնցից այնքան տագնապահար է լինում «կլասիկ» կապիտալիզմը։ Ճգնաժամային միջին տատանումների ամպլիտուդան ներկայումս էապես ավելի ցածր է այն ամպլիտուդայից, որը բնորոշ էր դարի առաջին երրորդի կապիտալիզմի, 1929—1932 թվականների համաշխարհային տնտեսական ճգնաժամի նախօրյակի կապիտալիզմի համար։

Բայց նման, օբյեկտիվորեն սահմանափակ, բայց կապիտալիզմի համար կարևոր արդյունքներն իրենք իրենց չեն գալիս, «ձրի» չեն տրվում։ Կապիտալիզմի համար դրական մոմենտները որոշ ուղղություններում անխուսափելիորեն փոխհատուցվում են բարդություններով ինչ-որ այլ ուղղություններում։ Մասնավորապես, ցիկլային տատանումների ամպլիտուդայի սահմանափակման համար հարկ եղավ վճարել, ինչպես այսօր միանգամայն ակնհայտ է, միագումար պարտքի վիթխարի աճով, վալյուտա-ֆինանսական ոլորտի հակասությունների սրմամբ։ Ճիշտ այդպես էլ, հակասությունները փոխադրելով ավելի «բարձր» դժվար կարգավորվող մակարդակի, կապիտալիզմը ստիպված է լինում վճարել սոցիալական քաղաքականության և ուրիշ շատ բաների համար։ Իմպերիալիզմն այժմ ավելի ուժեղ, քան երբևէ, խճճվել է ներքին ու միջպետական հակամարտությունների, ցնցումների, կատակլիզմների մեջ։

Այս ամենը հաստատում է հասարակական զարգացման դիալեկտիկությունը նրա բոլոր ուղղություններում, ամենից առաջ զարգացման շարժիչ ուժերի՝ հասարակական հակասությունների նկատմամբ։ Ոչինչ չի կարող ճշմարտությունից ավելի հեռու լինել, քան պատկերացումները հակասությունների՝ որպես մեկ անգամ ընդմիշտ տրված, քարացած, անփոփոխ ինչ-որ բանի մասին։ Դիալեկտիկան այստեղ էլ երևույթների էության ու նրանց արտաքին ձևերի չափազանց բարդ փոխադարձ կապերի մեջ է։ Եվ այն բանում, որ պատմականորեն ո՛չ մեկը, ո՛չ մյուսը տեղում կանգնած չէ։ Եվ այն բանում, վերջապես, որ իր հակասությունների դրսևորումներում կապիտալիզմը նույնպես, ինչպես և ուրիշ շատ բաներում, չի կարող չկրել ժամանակակից, խորապես փոփոխված աշխարհի ներգործությունը։

Սոցիալիզմի կազմավորումը, պայքարը խաղաղության և հասարակական տարբեր կարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության նրա դոկտրինայի գործնական իրականացման, միջազգային անվտանգության համապարփակ սիստեմի ստեղծման համար, բանվորական և կոմունիստական, ազգային-ազատագրական և համադեմոկրատական շարժումների գործողությունների ակտիվացումը, այս ամենը կաշկանդում է իմպերիալիզմին, դժվարացնում կամ չլատում է միջիմպերիալիստական հակասությունները «դասական», այսինքն՝ ռազմական ճանապարհով, վենքի ուժով լուծելու նրա հնարավորությունը։

Միևնույն ժամանակ պատմական այդ փոփոխությունները ուժեղացնում են բուրժուազիայի կոսմոպոլիտիզմը, նրա ձգտումը մղում են դեպի դասակարգային կոնսոլիդացում, ուժերի համախմբում՝ համաշխարհային սոցիալիզմի, հակակապիտալիստական և ազատագրական այլ շարժումների դեմ



մղվող պայքարում, իմպերիալիստական պետություններին դրդում են որոնելու իրենց տարաձայնություններն ու կոնֆլիկտները կարգավորելու ավելի ճկուն, կոմպրոմիսային ձևեր։ Ավելի հստակ է ուրվագծվում այն միավորիչ միտումը, որը, ինչպես Լենինն էր գրում, «միանգամայն իրագործելի է և գործնականում հաճախ իրականացվում է ինքնուրույն և անկախ, բառի քաղաքական նշանակությամբ, պետությունների իմպերիալիստական դաշինքի ձևով» (ԵԼԺ, հ. 30, էջ 126)։ Այդ կենտրոնաձիգ միտումը, որը իրեն ուժգին դրսևորում է կապիտալիստական զարգացման արդի պտույտում, դիալեկտիկորեն զուգակցվում է իրեն հակադիր կենտրոնախույս ուժերի հետ։

70-ական թվականները և 80-ական թվականների սկիզբը որակական տեղաշարժով են նշանավորվել համաշխարհային կապիտալիստական սիստեմի ընդհանուր ճգնաժամի ընթացքում։ 60-ական թվականների համեմատաբար «բարեհաջող» կոնյունկտուրան փոխարինվեց վերարտադրության պայմանների նշանակալի բարդացմամբ, կապիտալիզմի տնտեսական և քաղաքական լուրջ ապակայունացման պրոցեսներով։ Այս ամենը չէր կարող առաջ չբերել պետականորեն մենուսացած իմպերիալիզմների ու նրանց միությունների մրցապայքարի ու մրցակցության սաստկացում, հանդիսացավ համաշխարհային կապիտալիզմի տնտեսական, սոցիալական և քաղաքական հակասությունների պայթյունների լրացուցիչ դետոնատոր։

I

Մի խումբ իմպերիալիստներին մյուսներին հակադրող պրոցեսների հիմքում ընկած է կապիտալիզմի տնտեսական ու քաղաքական զարգացման անհամաչափության օրենքը, որը բնորոշում է նրա ռիթմը, արագությունը, թռիչքաձևությունը, հակասականությունը։ Անհամաչափության ֆոնն ու բազան առաջատար կապիտալիստական երկրների տնտեսական և գիտատեխնիկական պոտենցիալների համահարթումն է, որը առաջացել է տնտեսության ինտերնացիոնալացման և արտադրության հանրայնացման հետևանքով։ Համահարթումը, իր հերթին, հնարավորություններ է ստեղծում մեկ կամ մի խումբ կապիտալիստական երկրների սրընթաց ցատկի համար, որոնք մրցավազքի արագացող տեմպերի ընթացքում առաջ են ընկնում մրցակիցներից։ Ստեղծվում է ուժերի նոր տեղաբաշխում, որի անխուսափելի հետևանքն է տնտեսական տիրապետության և քաղաքական ազդեցության ոլորտների վերաբաժանումը։ Որպես նման վերաբաժանման եղանակ եղել ու մնում է ուժի գործադրումը. առավելապես ռազմական ուժի գործադրումը՝ մոտ անցյալում, տնտեսական և քաղաքական ուժի գործադրումը, որը բնորոշ է ժամանակակից իմպերիալիստական տերությունների ու նրանց խմբավորումների դիմակայության համար։

Առանց կորցնելու իր նշանակությունը, ռազմական ճնշումը ձեռք է բերել նոր ձևեր՝ որպես իմպերիալիզմի, ամենից առաջ ԱՄՆ-ի իմպերիալիզմի ընդհանուր քաղաքական ստրատեգիայի մի մասը, որը միլիտարիստական ակտիվության և միջազգային լարվածության բռնկումներ է կազմակերպում ոչ միայն սոցիալիզմի դեմ պայքարելու նպատակով, այլև իր պարտնյորների տնտեսական հզորությունը, նրանց քաղաքական նշանակությունը խարխլելու համար՝ նպատակ ունենալով դաշնակցային կարգապահությունը ենթարկել ԱՄՆ-ի շահերին։ «...Տեղի ունեցող երևույթը հասկանալու համար հարկավոր է իմանալ,— գրում էր Լենինը,— թե ուժերի փոփոխություններն ինչ հարցեր են լուծում, իսկ թե այդ փոփոխությունները «զուտ» տնտեսական փոփոխություննե՞ր են արդյոք, թե արտատնտեսական (օրինակ՝ ռազմական), դա երկրորդական հարց է, որը ոչ մի փոփոխություն չի կարող մտցնել կապիտալիզմի նորագույն դարաշրջանի մասին եղած հիմնական հայացքների մեջ» (ԵԼԺ, հ. 27, էջ 454)։

Համաշխարհային սոցիալիստական սիստեմի կազմավորման ու ամրապնդման շնորհիվ, կապիտալիզմի նախկին գաղութային ու կախյալ ծայրամասերի քաղաքական և սկսված տնտեսական ապագաղութացման շնորհիվ շեշտակիորեն նեղացել, սեղմվել է իմպերիալիստական տիրապետության

րիալ անխոցելիության նախկին դրությունը, իսկ դրա միջոցով՝ ամերիկյան միլիտարիզմի ձեռքերի ազատությունը: Միաժամանակ դժվարացնել, դանդաղեցնել մեր երկրի, ամբողջ համաշխարհային սոցիալիզմի տնտեսական զարգացումը՝ տիեզերական սպառազինությունների մրցավազքի համար հնարավոր անչափ մեծ ծախսերով:

Գաղափարը, ի դեպ, այնքան էլ նոր չէ: Դեռ 1947 թվականին նրանք, ովքեր մշակել էին «զսպելու» դոկտրինան, պատողություններ էին անում այն մասին, որ «վիթխարի չափով մեծացնեն այն լարվածությունը, ծանրաբեռնվածությունները, որոնցում պետք է գործի սովետական սիստեմը», այդ մոտեցումը դնում էին գործնական դիրեկտիվների մեջ: Արդյունքները հայտնի են. ՍՍՀՄ-ի էկոնոմիկայի զարգացումը խափանել չհաջողվեց, թեև պաշտպանության համար կատարվող հարկադրական ծախսերը չէին կարող չկասեցնել ժողովրդի կենսամակարդակի բարձրացման տեմպերը, չազդել սոցիալական պրոբլեմների լուծման վրա: Բայց այդ ստրատեգիական գիծը հարվածեց նաև ԱՄՆ-ին, այն մեծ վնաս հասցրեց իր անխոցելիությունը կորցրած երկրի ազգային անվտանգությանը: Սակայն այդ փաստը ԱՄՆ-ի քաղաքականությանը հեռատեսություն չավելացրեց: Նորությունը, թերևս, միայն այն էր, որ ԱՄՆ-ը ձգտում է առանց երկար-բարակ մտածելու, նախկին մոտեցումներն ու հայացքները կիրառել նոր՝ տիեզերական ոլորտի նկատմամբ, կարծելով, թե այստեղ կհաջողվի այն, ինչը չստացվեց այլ ժամանակ, այլ հարցերում, այլ ուղղություններով: Ինչպես ընդգծվում է ներկայումս ԱՄՆ-ում գործող՝ «1984—1988 թվականների պաշտպանության ուղեցույցում», «ՍՍՀՄ-ի հետ ռազմական մրցակցությունը հարկավոր է ուղղել նոր բնագավառներ և դրանով իսկ անիմաստ դարձնել պաշտպանության համար կատարված սովետական բոլոր նախորդ ծախսերը...»: Սպառազինությունների մրցավազքում մեր երկիրը հյուծելու ծանոթ, բազմիցս «փորձված», բայց այս անգամ ամենից ավելի թանկ նստող, և իր հնարավոր հետևանքներով ամենամահաբեր հաշվարկ: Նման հաշվարկների սնանկությունը, դրանց հետ կապված հույսերի անիրականալիությունը ամենևին էլ պակաս վտանգավոր չեն դարձնում այդ պլանները:

Ռեյգանի վարչակազմի կողմից ստրատեգիական պաշտպանական նախաձեռնության պաշտոնական հռչակումից հետո անցած ժամանակը երևան հանեց տիեզերական սպառազինությունների ծրագրի ուրիշ կողմեր ևս: Դա նաև տեխնոլոգիական իմպերիալիզմ է, որը ագրեսիվ է իր բոլոր դրսևորումներով և բառիս ամենաուղղակի իմաստով ուղղված է ամբողջ աշխարհի դեմ: Այդ թվում և ռազմաքաղաքական բլոկների գծով ԱՄՆ-ի դաշնակիցների դեմ: Ամերիկյան դատողությունների սխեման պարզամիտ է. հասնել գիտատեխնիկական մշակումների ու տեխնոլոգիայի այնպիսի մակարդակի, որը թույլ տար հետևում թողնել ամենամերձավոր իմպերիալիստական դաշնակից-մրցակիցներին: Եվ դրանով իսկ առաջ պոկվել նաև տնտեսապես, ավելի խիստ վերահսկողության տակ դնել նրանց, արմատից խափանել այն բանի բուն հնարավորությունը, որ որևէ «ուժի կենտրոն» կապիտալիզմի աշխարհում համարձակվի, իսկ առավել ևս՝ ընդունակություն ձեռք բերի իրական մարտահրավեր նետելու Միացյալ Նահանգներին:

ԱՄՆ-ում, գործնականորեն չթաքցնելով այդ, անձկում և երազում են առաջին հետպատերազմյան տարիների իրավիճակը վերադարձնելու մասին, երբ պատերազմից քայքայված Արևմտյան Եվրոպան ու Ճապոնիան խոնարհաբար սպասում էին ամերիկյան տնտեսական ողորմություններին ու քաղաքական կարգադրություններին: Հարկ չկա ժխտելու, որ նման տրամադրությունների համար Վաշինգտոնը որոշ հիմքեր ունի. այդ ռեգիոնների տեսակարար կշիռը կապիտալիզմի էկոնոմիկայում և քաղաքականության մեջ անհամաչափելի է նախկինի հետ: Կասկած չի հարուցում նաև մեկ ուրիշ բան: Եթե հաջողվեր թեկուզ մասամբ վերականգնել Մարշալի պլանի ընդունման նախօրյակին իմպերիալիստական ընտրախավում գոյություն ունեցած դրությունը, ապա ամերիկյան տնտեսական ու ռազմաքաղաքական դիկտատը, հաշվի առնելով այդ ժամանակից կուտակված դասակարգային փորձը, կդառնար անհամեմատ ավելի պահանջկոտ ու անողոք:

Գիտակցո՞ւմ են արդյոք այդ բանը կապիտալիստական պետությունների մայրաքաղաքներում: Ինչ-որ չափով, իհարկե, գիտակցում են, այլապես Արևմուտքի ռեակցիան ամերիկյան ստրատեգիական պաշտպանական նախաձեռնությանը այդքան միանշանակ չէր լինի: Մի կողմից, ռազմաարդյունաբերական կորպորացիաները հույս ունեն ստանալ տնտեսական ու տեխնոլոգիական օգուտներ, և նույնիսկ հուսով են, որ կկարողանան ռազմատեխնոլոգիական



մրցավազքում շրջանցել ամերիկացիներին գոնե առանձին ուղղություններով: Այդ կարգի հույսերը առանձնապես ակնհայտ են ԳՖՀ-ում և Ճապոնիայում: Ապագան և միայն ապագան ցույց կտա դրանց հիմնավորվածության իրական աստիճանը: Բայց միաժամանակ Արևմտյան Եվրոպայի ու Ճապոնիայի կառավարող շրջաններում չեն կարող չտեսնել, չզգալ ստրատեգիական պաշտպանական նախաձեռնության պլաններում թաքնված բազմաթիվ վտանգներն ու որոգայթները, ասենք իրենց ավագ պարտնյորի բնավորությունն էլ նրանք սեփական փորձով բավական լավ գիտեն: Բայց առայժմ նման կարգի երկյուղները իրենց մասին առանձնապես բարձրաձայն չեն հայտնում: Ամերիկյան ստրատեգիական մտահղացման խորության ու նենգության, ուրիշ երկրների ու ամբողջ ռեգիոնների շահերի հետ դրա անհամատեղելիության աստիճանի կատարյալ ըմբռնում Արևմուտքում դեռ չկա:

Համապատասխանաբար վստահություն էլ չի կարող լինել այն բանում, որ Միացյալ Նահանգներին չի հաջողվի խաբել, շրջանցել ստրատեգիական պաշտպանական նախաձեռնության իրենց պարտնյորներին և՛ տեխնոլոգիապես, և՛ քաղաքականապես: Գործերի նման շրջադարձի անուղղելի հետևանքների մասին այսօր կարելի է դատել խիստ մտահայեցորեն, թեև արդեն այժմ էլ անվիճելի է, որ ստրատեգիական պաշտպանական նախաձեռնությունը մտահղացվել է որպես ԱՄՆ-ի կայսերական քաղաքականության ռազմատեխնիկական ապահովում համաշխարհային զարգացման և գիտատեխնիկական հեղափոխության հերթական պտույտում: Տիեզերական սպառնալիքի և առաջին հարվածի դոկտրինան արդեն բավական ցայտուն ցուցադրել է իր ագրեսիվ, միլիտարիստական բնույթը ինչպես քաղաքական, այնպես էլ ռազմատեխնոլոգիական տեսակետներից: Դրա շնորհիվ նա նկատելիորեն կազդի միջիմպերիալիստական հակասությունների՝ դրանց սրության աստիճանի և արտահայտման ձևերի վրա:

Վաշինգտոնը, դրանից բացի, չի դադարեցնում ՆԱՏՕ-ի որոշ երկրների զանազան ռեգիոնալ կոնֆլիկտների մեջ ներքաշելու փորձերը, որի համար օգտագործվում է ինչպես իմպերիալիզմի ռազմաքաղաքական դաշինքների ողջ սիստեմը, այնպես էլ առանձին երկրների վրա ճնշում գործադրելու տարբեր կարգի տարբերակված ձևերը: Վերցնելով ՍՍՀՄ-ի և սոցիալիստական մյուս պետությունների հետ ռազմաքաղաքական առճակատումը սրելու կուրսը, ամերիկյան վարչակազմը ձգտում է իր քաղաքական արբանյակներին ու ռազմական բլոկների գծով իր հպատակ երկրներին ստիպել՝ կրճատելու նրանց համար կենսականորեն կարևոր առևտրատնտեսական կապերը սոցիալիզմի երկրների հետ, տնտեսական լուրջ վնաս հասցնել Եվրոպական տնտեսական ընկերակցության երկրներին ու Ճապոնիային:

Այդ բազմանպատակ ստրատեգիան ուղղված է ամերիկյան դաշնակիցների ներգրավմանը Վաշինգտոնի հեգեմոնիստական պլանների իրականացման մեջ, համաշխարհային շուկաներում նրանց մրցակցային դիրքերի թուլացմանը և դրա հետ մեկտեղ սեփական ռազմական բեռի թեթևացմանը, որը ուժից վեր է դառնում նաև անդրօվկիանոսյան տերության համար: Միջիմպերիալիստական հակասությունների այդ ոլորտում զարգանում են ոչ միանշանակ պրոցեսներ: Մի կողմից, Ռեյգանի վարչակազմը կարողացավ հասնել այն բանին, որ արևմտաեվրոպական երկրներն ու Ճապոնիան սահմանափակող միջոցներ կիրառեն առաջավոր տեխնոլոգիա ՍՍՀՄ արտահանելու և մի շարք ապրանքներ ներմուծելու նկատմամբ, ինչպես նաև արտաքին առևտրական վարկերի նկատմամբ: Բայց, մյուս կողմից, 80-ական թվականների միջիմպերիալիստական հարաբերություններում նոր միտում է դառնում այն, որ Եվրոպական տնտեսական ընկերակցության երկրներն ու Ճապոնիան ավելի ու ավելի զգալիորեն են դժկամություն ցուցաբերում միանալու խոշորամասշտաբ այն գործողություններին, որոնք ուղղված են սոցիալիստական պետությունների հետ եղած տնտեսական համագործակցության սառեցմանն ու կրճատմանը: Այդ հողի վրա ծագած բարդությունները ԱՄՆ-ին ստիպում են

փոքր-ինչ չափավորել տնտեսական շանտաժի իր քաղաքականությունը ՍՍՀՄ-ի և մյուս սոցիալիստական երկրների դեմ:

Կապիտալիստական աշխարհի շատ երկրներում, այդ թվում և ՆԱՏՕ-ի մեջ մտնող երկրներում, աճում է լարված ուշադրությունը ամերիկյան ներկայիս վարչակազմի վարքագծի նկատմամբ: Խոսքը, իհարկե, այն մասին չէ, որ էապես թուլանում են այն բազմաթիվ, ամենից առաջ դասակարգային կապերը, որոնք այդ երկրներին, դրանց կառավարող շրջաններին կապում են ԱՄՆ-ի մոնոպոլիստական օլիգարխիայի հետ: Այնուհանդերձ, այստեղ ևս աճում է այն ըմբռնումը, որ Վաշինգտոնի քաղաքականությունը ոչ միայն ծայրահեղ եսամոլական է: Այդ քաղաքականությունը սպառնալիքի տակ է դնում ամբողջ ժամանակակից կապիտալիստական համաշխարհային տնտեսությունը— էկոնոմիկայի և ֆինանսների ոլորտում, իսկ ռազմաքաղաքական բնագավառում՝ կյանքը, մարդկության բուն գոյությունը: Օրինաչափ է, որ այդ պայմաններում ԱՄՆ-ի կուրսը, նրա առանձին գործողությունները ավելի ու ավելի հաճախ են դժգոհության, անհամաձայնության, դիմադրության ու այլընտրանքների որոնումների հանդիպում մյուս կապիտալիստական երկրներում, ներառյալ և այն երկրները, որտեղ իշխանության գլուխ են կանգնած պահպանողական կուսակցություններ ու կառավարություններ:

Այսպիսով, ժամանակակից իմպերիալիզմի տնտեսական ու քաղաքական զարգացման դիալեկտիկան դուրս է գալիս անհամեմատ ավելի բարդ ու հակասական, քան դա կարելի կլիներ ենթադրել, ելնելով միայն ԱՄՆ-ի պահպանվող լիդերության փաստից: Ավելին, ԱՄՆ-ի ստրատեգիական կուրսը և գործնական վարքագիծը նրա ռազմական, տնտեսական, քաղաքական, սոցիալ-գաղափարախոսական գործոնների հետ միասին ավելի ու ավելի ակնհայտորեն են օբյեկտիվ հակասության մեջ մտնում ամբողջ մարդկության շահերի հետ: Այդ հակասությունը հասարակ լուծումներ չի խոստանում: Այն այսուհետ ևս զարգանալու է զանազան ուժերի պայքարի ու փոխգործողության պայմաններում: Հետևանքները դժվար կանխագուշակելի են: Բայց ամեն դեպքում դրանք կախված կլինեն ուժերի ռեալ հարաբերակցությունից և մարդկանց առողջ բանականության ու մտքի ազդեցության ինտենսիվությունից, այն բանից, թե «ամերիկյան կայսրության» բնակչությունը որքան արագ ճշմարտացի ինֆորմացիա կստանա ԱՄՆ-ի իրական քաղաքականության մասին, կգիտակցի նրա եսամոլական դրդապատճառներն ու կործանարար հետևանքները:

III

Կենտրոնախույս ուժերը, ինչպես կյանքն է վկայում, թուլացնում, բայց ամենևին չեն վերացնում տնտեսականի հիմքի վրա ընկած ընդհանուր կապիտալիստական դաշինքի, բոլոր երկրների իմպերիալիստների դաշինքի, կապիտալի պաշտպանության համար միակ ու անխուսափելի, հայրենիք չճանաչող դաշինքի կազմավորման ձգտումը, մի պրոցես, որ Վ. Ի. Լենինն անվանել է «կապիտալիստական կարգերի հիմնական տնտեսական տենդենցը» (տե՛ս ԵԼԺ, հ. 36, էջ 403):

Կենտրոնաձիգ միտումի ժամանակակից ձևերի առանձնահատկությունը դրսևորվում է այն բանում, որ դրանք ծավալվում են առավելապես ինտեգրացիոն բազայի վրա, տնտեսական, ինչպես նաև ռազմաքաղաքական դաշինքների շրջանակներում, որոնք այժմ պատմության մեջ առաջին անգամ ընդգրկում են իմպերիալիստական պետությունների մեծագույն մասը: Անցյալում միմյանց նկատմամբ թշնամական «համաշխարհային կայսրությունների» ռազմական կոալիցիաները, ըստ էության, դուրս մղվեցին հակասոցիալիստական, հակաառաջադիմական, հակադեմոկրատական հիմքի վրա ուժերը միավորելու՝ վերազգային մոնոպոլիստական կապիտալի համընդհանուր ձգտումի կողմից: Զգալով իր պատմական դատապարտվածությունը, նա փորձում է հարմարվել պատերազմի ու ռեակցիայի ուժերի հետ խաղաղության ու առաջադիմության ուժերի օբյեկտիվ հակամարտության ժամանակակից



պայմաններին, ձգտում է գործել համատեղ, հարթել կամ քողարկել իրեն տարանջատող հակասություններն ու կոնֆլիկտները:

Սոցիալիզմի միջազգային դիրքերի աճն ու ամրապնդումը ազգային-ազատագրական շարժումը, հակաիմպերիալիստական, հակամոնոպոլիստական ակտիվությունը կապիտալիզմի կենտրոններում ու նրա ծայրամասերում դասակարգային համերաշխությունը, ստրատեգիական նպատակների միասնությունը և միավորված գործողությունները դարձնում են ասպարեզից հեռացող կարգի տառացիորեն կենաց ու մահու հարց: Ինչպես ժամանակին նկատել է Կ. Մարքսը. «կապիտալիստները, միմյանց հետ փոխադարձ մրցակցության դեպքում այնքան քիչ եղբայրական զգացմունքներ ցուցաբերելով, միևնույն ժամանակ հիրավի մասոնյան միաբանություն են կազմում բանվոր դասակարգի՝ որպես մի ամբողջության դեմ մղած պայքարում» (К. Маркс и Ф. Энгельс. Соч., т. 25, ч. I, стр. 217):

Աշխարհը, ըստ էության, բախվում է կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի խորացման ընթացքում ծագող ամենալուրջ դժվարությունների ու հակասությունների նկատմամբ մոնոպոլիստական բուրժուազիայի առավել ռազմատենչ մասի հիվանդագին-հիստերիկ ռեակցիային, այն ժամանակների անձկալի բաղձանքին, երբ նա կարող էր անպատիժ տնօրինել ժողովուրդների բախտը: Այդպիսի իրադրության մեջ ծնվում են պատմությունը «ուղղելու» հնարավորության պատրանքային հույսեր, հույսեր, թե իբր իմպերիալիզմի կորցրած դիրքերի վերականգնումը գտնվում է հնարավորի ու հասանելիի սահմաններում, բավական է գործել ավելի վճռականորեն, եռանդով, խստորեն, կանգ չառնելով միջուկային ուժը կիրառելու սպառնալիքի առջև, և գլխավորը՝ համատեղ:

Սոցիալական ռևանշի հաշվարկի վտանգավոր բաղկացուցիչ մասն են դարձել միլիտարիստական շմոլքի բորբոքումը ԱՄՆ-ից հետո այն ՆԱՏՕ-ի մյուս երկրների, Հյուսիսատլանտյան բլոկի մեջ չմտնող ամերիկյան մի քանի դաշնակիցների, ամենից առաջ Ճապոնիայի վրա ևս տարածելու փորձերը, որին ամերիկյան ղեկավարությունը կցանկանար ավելի խոր ներքաշել ասիական-խաղաղօվկիանոսյան ռեգիոնում ունեցած իր ռազմական պլանների մեջ: Տարբեր երկրների իմպերիալիստների միավորիչ ձգտումների դրսևորումն են նաև աշխարհագրական այն գոտու սահմանները ընդլայնելու պլանները, որի վրա ձևականորեն տարածվում են ՆԱՏՕ-ի գործողությունը, անվտանգության հարցերին գլոբալ դիրքերից մոտենալու մտադրությունը:

Եվ այնուհանդերձ, չնայած քաղաքական-ստրատեգիական հիմնադրույթների դասակարգային ընդհանրությանը, ԱՄՆ-ի ու նրա դաշնակիցների կոնկրետ դիրքավորումներում էական տարբերություններ են երևան գալիս շատ կետերում: Ամերիկյան զինվորականության միջազգային արկածախնդրությունը ամենևին ոչ ամեն ինչում է համապատասխանում ՆԱՏՕ-ի արևմտաեվրոպական երկրների ու Ճապոնիայի մոտեցմանը, որոնք տարբեր պատճառների բերումով (սեփական բնական ռեսուրսների անբավարարությունը, մեծ կախումը արտաքին տնտեսական կապերից և այլն) գերադասում են ռազմական բնագավառում իրենց ֆունկցիաները սահմանափակել հիմնականում ռեգիոնալ մակարդակով: Բացի դրանից, նրանք երկյուղ են կրում, որ իրենց համաշխարհային տնտեսական կապերը կարող են խախտվել կամ թուլացվել ռեգիոնալ կոնֆլիկտների հետագա սրման հետևանքով, օրինակ, Մերձավոր ու Միջին արևելքում կամ միջազգային քաղաքական իրավիճակի ընդհանուր վատթարացման պայմաններում:

Այժմ որակապես նոր իրավիճակ է նշմարվում այդ պետությունների քաղաքական-ստրատեգիական հարաբերություններում, նրանց ուժերի տեղաբաշխման մեջ: Ժամանակակից աշխարհի պայմաններում իր պրոբլեմների նկատմամբ մոնոպոլիստական կապիտալի մոտեցման մեջ ուրվագծվում է երկու լայն և, ամենայն հավանականությամբ, խիստ երկարատև միտում: Դրանցից մեկի տարածողներն են ամերիկյան բուրժուազիայի առավել հետադիմական ու ռազմամոլ խմբավորումները, ԱՄՆ-ի ռազմաարդյունաբերական համալիրը, դրանց հարող համանման սոցիալ-տնտեսական կազմավորումներն ու հետադիմության ուժերը մյուս կապիտալիստական և մի քանի զարգացող երկրներում: Այդ միտումի էությունն այն է, որ հույսերը դնում են պատմության ընթացքի բունի հեղաբեկման վրա, լինի դա ռազմական կամ Նրա այլ ձևերով: Անհաջողության դատապարտված, բայց անչափ վտանգավոր հույս:

տալիզմը ինչ պատասխաններ կտա արդիականության կարևոր հարցերին՝ միջուկային պատերազմը կանխելու, մարդկության առջև ծառացած գլոբալ պրոբլեմները լուծելու հարցերին։

Եթե անցյալում միջիմպերիալիստական հակասությունների գագաթնակետը և դրանց լուծման գլխավոր ձևը կազմում էին պատերազմները, այդ թվում և համաշխարհային, ապա մեր ժամանակում, երբ զգալիորեն նեղացել է կապիտալիզմի տնտեսական ու քաղաքական զարգացման անհամաչափության օրենքի գործողության ոլորտը, դրությունը արմատապես փոխվել է։ Պատմությունը հաճախ առաջ է ընթանում պարադոքսների միջով։ Դրանցից մեկն այն է, որ համաշխարհային սոցիալիզմի կազմավորումը, նրա անշեղ հարաճուն հզորությունը, զարգացող երկրների ժողովուրդների ազատագրական պայքարի պրոցեսները արդեն վաղուց կապիտալիզմը դրել են այնպիսի դրության մեջ, երբ նա, ինչպես անցյալում, չի կարող զբաղվել ավարը իմպերիալիստական գիշատիչների միջև առաջին հերթին և բացառապես պատերազմի միջոցով բաժանելու գործով։ Առաջադիմության ուժերի հաջողությունները շեշտակիորեն պակասեցրել են միջիմպերիալիստական ռազմական գոտեմարտերի հավանականությունը, երկպառակտչական խոշոր պատերազմների հնարավորությունը իմպերիալիզմի ճամբարում։ Սոցիալիզմի ձեռքբերումներն ու բարիքները, նրա պատմական նվաճումներն իրենց դրական ներգործությունն են ունենում նաև կապիտալիստական երկրների ժողովուրդների կյանքի վրա։ Իմպերիալիզմի հարկադրված անցումը սեփական հակասությունների մեղմացման, ժամանակավոր հաղթահարման խաղաղ ձևերին՝ դարի սոցիալական տեղաշարժերի այն բազմաթիվ հետևանքներից մեկն է, որոնք սկսվել են 1917 թվականի հոկտեմբերին։

Հերթում դրված է անչափ ավելի բարդ խնդիր՝ աշխարհը փրկել միջուկային աղետի սպառնալիքից, ստիպել իմպերիալիզմին՝ հրաժարվելու միջազգային վեճերի ու կոնֆլիկտների լուծման ռազմական միջոցներից։ Եվ ամենից առաջ այդ միջոցները մեր դարաշրջանի գլխավոր հակասության՝ սոցիալիզմի և կապիտալիզմի պատմական հակամարտության մեջ օգտագործելու փորձերից։ Նոր համաշխարհային պատերազմի ճակատագրական անխուսափելիություն չկա՝ այս հետևությունը կոմունիստներն արդեն վաղուց են արել։ Սակայն խաղաղության երաշխավորված նախասահմանություն նույնպես գոյություն չունի. խաղաղության համար պետք է պայքարել, քանի որ պատերազմի ուժերի տրամադրության տակ կան ավերածության հսկայական միջոցներ, որոնց վտանգավորությունը բազմակի անգամ մեծանում է, երբ խոսքը դատապարտվածության կոմպլեքսով տառապող հասարակության մասին է։

Կոմունիստները, ընդգծվեց ՍՄԿԿ XXVII համագումարում, սոցիալական առաջադիմության ուղիները միշտ էլ պատկերացրել են դրանց ողջ ներքին բարդությամբ ու հակասականությամբ։ Իմպերիալիզմն ու նրա հակասությունները ծնեցին երկու համաշխարհային պատերազմներ, բազմաթիվ գաղութային պատերազմներ, անթիվ անհամար աղետներ ու տառապանքներ բերեցին ժողովուրդներին։ Մեր ժամանակում իմպերիալիզմին դեմ դիմաց կանգնած են սոցիալիզմի ու սոցիալական առաջադիմության աշխարհի հզոր ուժերը։ Ագրեսիվ արտաքին քաղաքականությունը, մտածողության, գործողությունների, ամբողջ ապրելակերպի ռազմականացումը, ուրիշների շահերի ու իրավունքների արհամարհումը անխուսափելիորեն բարոյական ու քաղաքական մեկուսացման կհասցնեն նրանց, ովքեր վարում են միլիտարիստական ու հակադեմոկրատական կուրս, մեկուսացում, որը իր հետ բերում է շոշափելի ու բազմապլան հետևանքներ։ Դժբախտաբար, շատ են այն ուղիները, որոնք տանում են դեպի միջուկային աղետ։ Մարդկային ցեղի գոյատևման ուղին միայն մեկն է։ Դրա հետ հաշվի նստել կարող են միայն ինքնասպանները։

(«Коммунист», № 17, 1986)

---



# ԹՈՂԱՐԿՎՈՂ ԱՐՏԱԴՐԱՆՔԻՆ՝ ԲԱՐՁՐ ՈՐԱԿ

**Կ. ԴԱՄԲԱՐՅԱՆ**
ՀԿԿ Կենտկոմի քարտուղար

ՄՇԱԿԵԼՈՎ ԵՐԿՐԻ ՍՈՑԻԱԼ-ՏՆՏԵՍԱԿԱՆ զարգացումն արագացնելու ստրատեգիական կուրսը՝ ՍՄԿԿ XXVII համագումարը առանձնապես կարևորեց աճի որակական գործոնների դերը։ Իր տնտեսական քաղաքականության կարևորագույն խնդիրներից մեկը կուսակցությունը համարում է արտադրանքի բարձր որակի ապահովումը, այնպիսի արտադրանքի, որը տեխնիկատնտեսական ցուցանիշներով չզիջի համաշխարհային ստանդարտի լավագույն նմուշներին և հաջող քննություն բռնի միջազգային շուկայում։ Այդ հույժ կարևոր խնդիրը լուծելու համար կուսակցության ու կառավարության որոշմամբ ընթացիկ տարվա սկզբից մտցվել է արտադրանքի պետական ընդունում։ Արտադրանքի որակի էական բարձրացման հարցերը հանգամանորեն արծարծվեցին անցած տարվա նոյեմբերի 14-ին ՍՄԿԿ Կենտկոմում տեղի ունեցած խորհրդակցությունում։ Այնտեղ գործարար մթնոլորտում քննարկվեցին արդյունաբերական մինիստրությունների միավորումներում ու ձեռնարկություններում արտադրանքի պետընդունում մտցնելու պրակտիկ խնդիրները։

Խորհրդակցությունում սկզբունքային խոսակցություն ծավալվեց թողարկվող արդյունաբերական արտադրանքի տեխնիկական մակարդակի և որակի բարձրացման ուղիների, մեր էկոնոմիկայի զարգացումն արագացնելու, նրա բարձր արդյունավետությունն ապահովելու շուրջ։ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովն ասաց, որ բարձրորակ արտադրանքի ապահովումը սոցիալ-տնտեսական հսկայական կարևորության հարց է, որովհետև արտադրանքի որակի մեջ ընդհանրանում է էկոնոմիկայի բոլոր ճյուղերի աշխատանքի արդյունքը։ «Խոսքն այն մասին է,— ասաց նա,— թե ինչ արտադրանք է ուղարկվում ժողովրդական տնտեսությանը և որոշում նրա տեխնիկական մակարդակը, ինչը որոշում է նաև մարդու կենսական, կենցաղային պայմանները, բավարարում նրա պահանջները։ Այստեղից էլ՝ թե՛ մարդկանց տրամադրությունը, թե՛ նրանց վերաբերմունքը երկրում տեղի ունեցող բոլոր պրոցեսների նկատմամբ»։

Խորհրդակցությունը քննարկեց երկրի զարգացման արդի փուլի կարևորագույն պրակտիկ խնդիրների լուծման միջոցառումները՝ արտադրանքի որակի արմատական բարձրացման վերաբերյալ ՍՄԿԿ XXVII համագումարի որոշումների լույսի ներքո։

Արտադրանքի որակի բարձրացումը և կատարվող աշխատանքը պետք է դառնան համակուսակցական, համապետական, համաժողովրդական գործ, երկարաժամկետ, հնգամյա և տարեկան պլանների մշակման ու իրականացման կենտրոնական օղակը, մշտական ուշադրության և հսկողության առարկա, աշխատանքային կոլեկ-

տիվների գործունեության գնահատման գլխավոր չափանիշ: Ընկեր Մ. Ս. Գորբաչովը խորհրդակցության մասնակիցների ուշադրությունը հրավիրեց այն բանի վրա, որ արագացումը պետք է ընթանա բարձր որակի, արտադրողական մեծ կարողություններով լավագույն արտադրանքի միջոցով, որոնք ապահովեն աշխատախնայիչ, ռեսուրսախնայիչ տեխնոլոգիաների ներդրումը և այլն: «Արագացումը,— ասաց նա,— անխզելիորեն կապված է որակի հետ: Նա, ով այլ կերպ է մտածում, առհասարակ մինչև այժմ չի հասկանում, թե ինչ է արագացումը...

Արագացում՝ նախ և առաջ տեխնիկական առաջադիմության միջով, նոր տեխնիկայի ու տեխնոլոգիայի անցնելու, մարդկային գործոնը ակտիվացնելու միջով: Գլխավորը որակն է և դարձյալ որակը»:

Ի կատարումն կուսակցության և կառավարության որոշումների՝ արդյունաբերության մեջ սկսվել է արտադրանքի որակի բարձրացման աշխատանքը: Բոլոր աշխատանքային կոլեկտիվներում մշակվել և իրականացվում են պրակտիկ միջոցառումներ, որոնք բխում են կուսակցական կոմիտեներին, սովետական և տնտեսական մարմիններին, կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպություններին, բոլոր աշխատավորներին ՍՄԿԿ Կենտկոմի ուղղած «Արտադրանքի որակի արմատական բարելավման մասին» նամակի պահանջներից: Արտադրանքի բարձր որակի ապահովման գործում որոշակի շրջադարձ կատարելու վերաբերյալ Կենտկոմի կոչը ընդունվել է ամենայն ըմբռնումով. տեղաշարժերն սկսվել են, այդ գործում դրական փոփոխություններ տեղի են ունենում, բայց ոչ այնպիսի մասշտաբներով, ինչպես մեզ հարկավոր է: ՍՄԿԿ Կենտկոմը խնդիր է դնում աշխատանքի բոլոր ուղղություններում, արտադրանքի որակի բարձրացման ասպարեզում իրականացնել վճռական միջոցառումներ:

Թողարկվող արտադրանքի որակի արմատական բարձրացման, պատրաստի արտադրանքի ընդունումն իրականացնելու և որակի հարցերում միավորումների ու ձեռնարկությունների գործունեության նկատմամբ հսկողությունն ուժեղացնելու նպատակով ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը անհրաժեշտ են գտել ստեղծել արտագերատեսչական հսկողության հատուկ մարմին՝ պետական ընդունում ՍՍՀՄ ստանդարտի պետական կոմիտեի ենթակայության ներքո: Արտագերատեսչական ընդունումը, ինչպես նշվել է խորհրդակցությունում, չի հանգեցնում միայն օժանդակ հսկողության օղակի ստեղծմանը: Այն պահանջում է վերակառուցել կադրերի գիտակցությունը, կոնստրուկտորական, տեխնոլոգիական ստորաբաժանումների, պլանային տնտեսագիտական և մատակարարման, արտադրության նախապատրաստման ծառայությունների, արտադրական պրոցեսների բոլոր մասնակիցների՝ բանվորների, վարպետների, արտադրամասերի ու ձեռնարկությունների ղեկավարների աշխատանքը:

Ըստ էության խոսքը ոչ միայն այն մասին է, թե ինչպես կազմակերպել աշխատանքը պետական ընդունման պայմաններում: Խնդիրը դրվում է շատ ավելի լայնորեն՝ ինչպես լավ և տնտեսավարորեն օգտագործել ունեցած ռեսուրսները, կարգուկանոն սահմանել արտադրությունում, ամրապնդել աշխատանքային ու տեխնոլոգիական կարգապահությունը, ապահովել աշխատանքի ռիթմիկությունը, ստեղծել անհանդուրժողականության իրադրություն խոտանարարների նկատմամբ: Չէ՞ որ ցածր որակը, վատ, անբարեխղճորեն արված գործը և՛ հասարակական աշխատանքի, և՛ նյութատեխնիկական ռեսուրսների, և՛ առհասարակ մեր ողջ ազգային ունեցվածքի ամենավտանգավոր վատնողության տեսակներից են:

Մեր հանրապետության արդյունաբերության մեջ որոշ աշխատանք է կատարվել այդ բացասական երևույթները հաղթահարելու և վերացնելու, թողարկվող արտադրանքի տեխնիկական մակարդակն ու որակը բարձրացնելու համար: Մշակվել և իրականացվում է 1986—1990 թվականների հանրապետական «Որակ» կոմպլեքսային ծրագիրը, մի շարք ձեռնարկություններում և առանձին ճյուղերում կատարելագործվում են տեխնոլոգիական պրոցեսները, ներդրվում են ճշգրիտ և բարձրարտադրողական սարքավորումներ, վերազինվում են ձեռնարկությունները:

Սակայն շատ ձեռնարկություններ ու միավորումներ շարունակում են թողարկել և պատվիրատուներին առաքել ցածրորակ արտադրանք՝ շահագործման անբավարար



բնութագրերով և սպառողական ցածր հատկություններով, չեն ձեռնարկում անհրաժեշտ միջոցներ ստանդարտների և տեխնիկական պայմանների պահանջների խախտումները կանխելու համար: Այդպիսի փաստերը տեղիք են տալիս սպառողների արդարացի բողոքներին ու դժգոհություններին, համարվում են հնացած ու ոչ գնայուն ապրանքների գոյացման աղբյուր, հանգեցնում են օգտագործված աշխատանքային, նյութական, էներգետիկ և այլ ռեսուրսների անդառնալի կորուստների: ՍՍՀՄ պետստանդարտի հանրապետական վարչության տվյալներով անցած տարվա ինն ամսում ոչ ստանդարտ արտադրանք մատակարարելու համար հանրապետության ձեռնարկություններին ներկայացվել է 157 տնտեսական պատժամիջոց և իրացման պլանի կատարման հաշվետվությունից հանվել է 8,3 միլիոն ռուբլի, իսկ 272 դեպքում արգելվել է ողջ արտադրանքի իրացումը: Որակի պետական նշանից զրկվել է 29 անուն արտադրատեսակ, այդ թվում «Հայէլեկտրամեքենա» արտադրամիավորման եռաֆազ սինխրոնային գեներատորները, ՏՎՄՍ տրանսֆորմատորները, Երևանի հաստոցաշինական արտադրամիավորման խառատային պտուտակահան հաստոցը, ավտոդողերի գործարանի օդանճշման դողերը, փափուկ կահույքի թիկնաթոռ-մահճակալները և այլն: Այդպիսի փաստերի հետևանքով հանրապետության արդյունաբերությունը չի ապահովել որակի բարձր կատեգորիայի արտադրանքի թողարկման պլանի կատարումը. որակի պետական նշանով արտադրանքի տեսակարար կշիռը անցած տարվա ինն ամիսներին կազմել է 13,9 տոկոս, պլանավորված 15 տոկոսի փոխարեն, այն նվազել է նաև 1985 թ. նույն ժամանակամիջոցի համեմատությամբ:

Թողարկվող արտադրանքի որակի և նրա տեխնիկական մակարդակի վիճակը մեզ լրջորեն անհանգստացնում է, մանավանդ որ պետական ստանդարտին չհամապատասխանող և համաշխարհային շուկայում անմրցունակ արտադրանք թողարկող ձեռնարկությունների ու միավորումների շարքում կան նաև այնպիսիները, որտեղ մտցվում է արտագերատեսչական ընդունում:

ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշմանը համապատասխան, պետական ընդունումը մտցվել է հանրապետության 28 արդյունաբերական ձեռնարկություններում և միավորումներում: Պետընդունման մեջ ներգրավվել է արդյունաբերական արտադրանքի 17 տոկոսը: Բոլոր ձեռնարկություններում և միավորումներում որոշակի աշխատանք է կատարվել պետընդունումը նախապատրաստելու համար: Ամենուրեք կազմակերպվել են գործարանային հանձնաժողովներ, մշակվել են հսկողության նոր ձևի նախապատրաստման պլաններ, որոնք նախատեսում են իրականացնել ավելի քան 3000 կազմակերպական-տեխնիկական միջոցառում: Պլանները ներառում են պետական ստանդարտի պահանջներին համապատասխան նորմատիվային-տեխնիկական փաստաթղթերի ներդրման, բանվորական աշխատատեղի ատեստավորման, արտադրության տեխնոլոգիական հագեցման, տեխնիկական հսկողության ծառայության գործունեության վերակառուցման աշխատանքները: Դրանցով նախատեսվում է նաև բարձրացնել կադրերի և ստորաբաժանումների նյութական շահագրգռությունը և պատասխանատվությունը բարձրորակ արտադրանք թողարկելու համար, արտադրությունը հագեցնել հսկող-փորձարկող սարքավորումներով ու գործիքներով, հետևել դրանց ստուգման և տեխնիկական սպասարկման գրաֆիկներին: Այդ պլանների հիման վրա միջոցներ կձեռնարկվեն արտադրությունում ցածրորակ հումքի, նյութերի և կոմպլեկտավորման պատրաստվածքների ստացումը կանխելու, ինքնահսկողությունը զարգացնելու, արտադրանքի պետընդունման համար անհրաժեշտ պայմաններ ստեղծելու նպատակով:

Միավորումները և ձեռնարկությունները կատարել են նախապատրաստական զգալի աշխատանք, այդ թվում՝ չափիչ, փորձարկիչ և լաբորատոր միջոցների ատեստացիայի, փորձարկման բազայի ընդլայնման, նոր տեխնոլոգիական պրոցեսների ներդրման, եղածների կատարելագործման, ժամանակակից, հատկապես ավտոմատացված սարքավորումների, թվածրագրային կառավարմամբ հաստոցների, ավտոմատ գծերի և կոնվեյերների տեղակայման աշխատանքներ:

Պետընդունման յուրաքանչյուր մարմնի համար նախատեսվել են որակի հսկողություն՝ ըստ խմբերի, աշխատողների տեղաբաշխում՝ ըստ ընդունման օբյեկտների

և աշխատանքի տեսակների: Ձեռնարկություններում տիրամաժամորվել են ընդունման, ուղեկցող և հաշվարկային փաստաթղթերի բոլոր տեսակները, մշակվել է փորձնական և վերջնական ընդունման ընթակա արտադրատեսակների ցանկը: Ելնելով թողարկվող արտադրանքի առանձնահատկություններից և ծավալից՝ մի շարք ձեռնարկություններում կազմվել և հաստատվել են արտադրանքի ընտրովի ընդունման պլանները և հանգույցների ու հավաքման միավորների պարտադիր ընդունման ցանկը, սահմանվել է «թռուցիկ» հսկողություն՝ տեխնոլոգիական կարգապահությունն ու պրոցեսները հսկելու համար:

Պետընդունման մարմինները միաժամանակ ուսումնասիրել են նորմատիվային-տեխնոլոգիական փաստաթղթերը, որոնք վերաբերում են ինչպես հսկման ենթակա արտադրանքին, պետընդունման կազմակերպմանն ու անցկացմանը, այնպես էլ կադրերի ուսուցմանն ու պետընդունման աշխատողների պարտականությունների ինքնուրույն կատարման թույլտվությունների ձևակերպմանը, մի հանգամանք, որը համարվում է անհրաժեշտ հիմք՝ նրանց կողմից աշխատանքի հմտություններ ձեռք բերելու համար:

Նախապատրաստական այդպիսի բազմակողմանի աշխատանքից հետո հնարավոր եղավ ժամկետից շուտ, դեռևս 1986 թ. մտցնել մի շարք արտադրատեսակների պետընդունում «Հայէլեկտրամեքենա» (խոշորագաբարիտ ԴԱՋՕ էլեկտրական մեքենաներ, գեներատորներ), Երևանի «Էլեկտրասարք» (ջերմային հսկման սարքեր) արտադրամիավորումներում, «Նաիրիտ» (սինթետիկ կաուչուկ) ԳԱՄ-ում, Երևանի մետաքսի կոմբինատում (մետաքսե զգեստի, աստառի գործվածքեղեն): Մնացած ձեռնարկություններում անցկացվել է արտադրանքի փորձնական ընդունում թողարկվող արտադրանքի 10-ից մինչև 70 տոկոսի ընդգրկմամբ: Եվ արդեն 1986 թ. վերջերին նախնական ու վերջնական պետընդունման է ենթարկվել համապատասխանաբար 500 և 100 միլիոն ռուբլու արժողությամբ արտադրանք: Փորձնական ընդունման շնորհիվ բարձրացել է առաջին ներկայացմամբ արտադրանքի հանձնման տոկոսը, նվազել են վնասապահանջների քանակը և ընդունման հանձնված արտադրանքի խմբաքանակի թերությունները (Երևանի էլեկտրալամպերի գործարանում, Չարենցավանի հաստոցաշինական, «Հայէլեկտրամեքենա», Երևանի «Էլեկտրասարք» արտադրամիավորումներում և այլն):

Պետընդունման մեջ ներգրավված բոլոր ձեռնարկությունները մշակել և իրականացնում են 1986—1990 թթ. «Որակ» ծրագիրը, որով նախատեսված են ատեստավորման ենթակա ողջ արտադրանքը որակի բարձր կատեգորիայի հասցնելու միջոցառումներ:

Արտադրանքի պետընդունման ընթացքում անչափ կարևոր է ձեռնարկությունների ղեկավարների, կուսակցական կազմակերպությունների պատասխանատվության ըստ ամենայնի բարձրացումը: ՀԿԿ Կենտկոմի բյուրոն վերջերս քննարկեց «Հայէլեկտրամեքենա» արտադրամիավորման գլխավոր դիրեկտոր Պ. Մանվելյանի և կուսկոմիտեի քարտուղար Լ. Սիմոնյանի հաշվետվությունը՝ պետընդունման նախապատրաստման և անցկացման նպատակով միավորման ղեկավարության և կուսկազմակերպության կատարած աշխատանքի մասին: Միավորումում մշակվել են արտադրանքի, հանգույցների ու դետալների պարտադիր հսկման և ընդունման պայմանները, կարգի են բերվել տեխնիկական փաստաթղթերը, ատեստավորվել են աշխատատեղերը, արտադրամասերի և տեխնիկական ծառայությունների աշխատողները, հսկող ու փորձարկող սարքավորումները: Ուժեղացվել է պահանջկոտությունը տեխնոլոգիական կարգապահության և պատրաստվող արտադրանքի կոնստրուկտորական հսկման նկատմամբ: Վերակառուցվել և արտադրությունում ներդրվել են 9 հավաքման և ավտոմատ գծեր, կոնվեյերներ, թվածրագրային կառավարմամբ 12 հաստոցներ: Պետընդունումը լիովին կոմպլեկտավորվել է կադրերով. 47 աշխատողներից 23-ը ՍՄԿԿ անդամներ են: Աշխատանք է տարվում նրանց ուսուցումը կազմակերպելու համար:

Պետընդունման նախապատրաստման և անցկացման հարցերը քննարկվել են կուսկոմիտեի նիստերում, սկզբնական կուսկազմակերպությունների, բանվորական կոլեկտիվների ժողովներում, քաղաքական ուսուցման և տնտեսագիտական կրթության համակարգի սեմինար-խորհրդակցություններում: Արտադրամասերի և ստորաբաժանումների կոլեկտիվները ծանոթացել են պետընդունման կանոնադրությանը: Արտադրանքի պետընդունմանն ու անցկացմանը նախորդել է խոշոր էլեկտրական մեքենաները պետստանդարտի ներկայացուցիչներին հանձնելը, որը մտցվել է 1985 թվականին: Այդ ամենի շնորհիվ բարձրացել է ղեկավարների և կատարողների պատասխանատվությունը աշխատանքի և թողարկվող արտադրանքի որակի համար, նվազել է պատվիրատուների դժգոհությունը: 1985 թ. համեմատությամբ վնասապահանջը կրճատվել և 2,3 տոկոսից իջել է 0,6 տոկոսի: Միավորումում անցած տարվա օգոստոսից իրականացվում է խոշոր շարժիչների և գեներատորների պետական, իսկ նոյեմբերից՝ արտադրանքի մյուս տեսակների փորձնական ընդունումը:

Այդ ամենի հետ միասին միավորումում կան չլուծված հարցեր: Ողջ նորմատիվային-տեխնիկական փաստաթղթերը դեռևս լիովին չեն համապատասխանեցվել ստանդարտների պահանջներին: Անբավարար է արտադրության ապահովվածությունը փորձարկման վահաններով, ցածր է մի շարք տեխնոլոգիական պրոցեսների տեխնիկական մակարդակը, չի կարգավորվել արտադրության ռիթմիկությունը: Ձգձգվում է տեխնիկական հսկողության ծառայության վերակառուցումը: Մինչև այժմ չի վերանայվել տեխնիկական հսկողության ծառայության աշխատողների աշխատավարձի և նյութական շահագրգռության համակարգը, թողարկվող արտադրանքի որակը դեռևս չի դարձել նրանց աշխատանքի գնահատման հիմնական չափանիշ: Լրիվ ծավալով չի իրականացվում ստացվող կոմպլեկտավորող արտադրանքի, նյութերի և կիսաֆաբրիկատների որակի մուտքային հսկողությունը: Միավորման մի շարք արտադրություններում ու արտադրամասերում դեռևս անբավարար են նախապատրաստվել պետընդունմանը: Դանդաղ է ընթանում տնտեսական կադրերի, ինժեներների և բանվորների մտածողության վերակառուցումը թողարկվող արտադրանքի որակի արմատական բարձրացման անհրաժեշտության հարցում: Պետական ընդունման պահանջները չեն հասցվել կոլեկտիվի բոլոր անդամներին, այդ գործում անբավարար են օգտագործվում գործարանային թերթի, ռադիոհանգույցի, ցուցադրական ագիտացիայի հնարավորությունները:

Պետընդունման գործում նմանօրինակ և ավելի լուրջ թերություններ ու բացթողումներ կան նաև հանրապետության ուրիշ ձեռնարկություններում: Կուսակցության քաղաքային ու շրջանային կոմիտեները, որոնց տարածքներում են գտնվում պետընդունմանն անցնող ձեռնարկությունները, ՀԿԿ Կենտկոմի ճյուղային բաժինները մեծ ուշացումով են լծվել այդ գործին, ձեռնարկությունների և միավորումների կուսակցական կազմակերպություններին ժամանակին չեն նպատակամղել աշխատանքային կոլեկտիվներում քաղաքական ու բացատրական աշխատանքի ծավալմանը, աշխատանքային կարգապահության ամրապնդմանը, մարդկանց հոգեբանության վերակառուցմանը՝ բանվորից սկսած մինչև արտադրության ղեկավարները, բարձրորակ արտադրանքի նկատմամբ նրանց շահագրգռության բարձրացմանը:

Մի շարք արդյունաբերական ձեռնարկությունների սկզբնական կուսկազմակերպություններում ոչ միշտ են հիշում, որ ստեղծված իրադրության մեջ չափազանց կարևոր և վճռական դեր է կատարում մարդկային գործոնի ակտիվացումը: Նրանք դեռևս չեն որոշել իրենց խնդիրները նոր պայմաններում կոլեկտիվների աշխատանքը կազմակերպելու գործում, հստակորեն չեն պատկերացնում իրենց ֆունկցիաներն ու պարտականությունները:

Արդյունաբերական արտադրանքի բարձր որակի ապահովման գլխավոր պայմաններից է բարոյահոգեբանական գործոնը՝ բարոյական առողջ մթնոլորտը աշխատանքային կոլեկտիվներում: Գաղտնիք չէ, որ ոչ բոլոր կոլեկտիվներում և նրա ոչ բոլոր անդամների մոտ է աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքը դարձել վարքագծի ամենօրյա նորմ: Մի շարք ձեռնարկություններում, ցածր կարգապահության պատճառով, տեղ են գտել լուրջ թերացումներ, տեխնոլոգիական ռեժիմների և արտադրանքի թողարկման տեխնիկական պայմանների խախտումներ: Մինչդեռ ամուր կարգապահությունը և աշխատանքի նկատմամբ գիտակցական վերաբերմունքը թողարկվող արտադրանքի բարձր որակի երաշխիք են:

Կուսակցական մշտական վերահսկողության բացակայության, մինիստրությունների ու գերատեսչությունների թույլ պահանջկոտության, ինչպես նաև անցկացվող վերակառուցման ողջ կարևորությունը ձեռնարկությունների ղեկավարության կողմից լիովին չըմբռնելու պատճառով է, որ պետընդունման պայմաններում աշխատանքի նախապատրաստման առնչությամբ մշակված միջոցառումներն իրականացվել են սոսկ 60—70 տոկոսով: Դրանց իրականացման ժամկետները ձախողել են «Էլեկտրասարք» (դիրեկտոր՝ Ա. Նիլիկյան), կարի «Գարուն» (դիրեկտոր՝ Գ. Ենոքյան) արտադրամիավորումները, Քանաքեռի ալյումինի գործարանը (դիրեկտոր՝ Ռ. Ենգոյան) և այլ ձեռնարկություններ:

Պետընդունման վերաբերյալ որոշմամբ անհրաժեշտ է համարվել բոլոր արտադրամիավորումներում և ձեռնարկություններում մտցնել ստացվող կոմպլեկտավորման արտադրանքի, նյութերի և կիսաֆաբրիկատների մուտքային հսկողություն և այդ պարտականությունը դնել տեխնիկական հսկողության ծառայության վրա: Այդ նպատակով պետք է տեխնիկական հսկողության բաժինների կազմում ստեղծվեին արտաքին ընդունման ստորաբաժանումներ՝ զինված հսկիչ ու փորձարկիչ անհրաժեշտ միջոցներով: Այդ աշխատանքը անուշադրության է մատնվել գրեթե բոլոր ձեռնարկություններում, հատկապես վատ է վիճակը մետաքսի կոմբինատում, փափուկ կահույքի ֆաբրիկայում: Շատ ձեռնարկություններում չեն մշակվել տեխնիկական հսկողության ծառայության աշխատանքի վերակառուցման, խոտանի կանխարգելման և վերացման համար նրանց նյութական խթանման միջոցառումներ: Այսպես, օրինակ, Երևանի Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանում տեխնիկական հսկողության բաժնի հսկիչի ամսական միջին աշխատավարձը 115 ռուբլի է, մինչդեռ պետընդունման հսկիչինը՝ 216 ռուբլի: Երևանի մետաքսի կոմբինատում այն համապատասխանաբար կազմում է 100 և 184, «Էլեկտրասարք» արտադրամիավորումում՝ 116 և 204 ռուբլի: Նման վիճակ է նաև ուրիշ ձեռնարկություններում:

Բարձրորակ արտադրանքի թողարկմանը խանգարող մեծ չարիք է գրոհայնությունը: Ի՞նչ որակի մասին կարող է խոսք լինել, երբ շատ ձեռնարկություններում ամսվա վերջին շաբաթում պատրաստվում է արտադրանքի կեսը կամ դրանից էլ ավելին: Այսպես, «Հայէլեկտրամեքենա» արտադրամիավորումում անցած տարվա հոկտեմբերի վերջին հինգ օրվան բաժին էր ընկել էլեկտրաշարժիչների ամսական թողարկման 85,7 տոկոսը, «Հայէլեկտրաշարժիչ» արտադրամիավորումում՝ փոփոխական հոսանքի էլեկտրաշարժիչների 38,4 տոկոսը: Մետաղահատ հաստոցների այդպիսի բաժինը կազմել է 50,4 տոկոս (այդ թվում Կիրովականի ճշգրիտ հաստոցների գործարանում՝ 58,6 տոկոս, մետաքսյա գործվածքներինը՝ 52,6 տոկոս և այլն): Չի կարելի հաշվի չնստել այն բանի հետ, ինչ հատուկ ընդգծված է արտադրանքի պետական ընդունման կանոններում. «Պետական ընդունման աշխատողին փորձարկման և ընդունման համար արտադրանքի ներկայացումը պետք է իրականացվի հավասարաչափ և համաչափ, անհրաժեշտության դեպքում ներկայացման օրացուցային ժամկետների հաստատմամբ»: Այս հարցերին պետք է հատուկ ուշադրություն նվիրեն ձեռնարկությունների և միավորումների ղեկավարները, կուսակցական ու արհմիութենական կազմակերպությունները: Պետընդունման նախապատրաստման ու անցկացման հարցերը քննարկվել են արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվների և կուսակցական ժողովներում, մշակվել են այդ կարևոր գործում բանվորների դերի բարձրացման միջոցառումներ: Շատ կուսկոմիտեներ ու սկզբնական կուսկազմակերպությունների բյուրոներ անդրադարձել են նաև այդ որոշումների կատարման ընթացքին:

Պետընդունման արդյունավետ գործունեության համար սկզբունքային նշանակություն ունի կադրերի ընտրության ու տեղաբաշխման հարցը: Ցավոք, աշխատանքի այդ տեղամասը դուրս է մնացել կուսակցական մարմինների տեսադաշտից: Կուսակցության քաղաքային և շրջանային կոմիտեները, որոնց ենթակայության տարածքում գտնվում են պետընդունման անցած ձեռնարկությունները, աչքաթող են արել այդ քաղաքական կարևոր գործը, ձեռնարկությունների և միավորումների կուսակցական կազմակերպությունների ուշադրությունը չեն հրավիրել պետընդունման աշխատողների ճիշտ ընտրության ու տեղաբաշխման վրա: Զարմանալի է, որ կուսշրջկոմները



պետընդունման պատասխանատու պաշտոնները չեն մտցրել իրենց անվանացուցակի մեջ:

Հսկողության բացակայության հետևանքով պետընդունման մարմիններում ներգրավվել են նաև այնպիսի մարդիկ, ովքեր չեն համապատասխանում ոչ իրազեկությամբ, ոչ էլ ստեղծվող մարմինների բարձր պահանջներին համապատասխան գործնական հատկանիշներով: Օրինակ, էլեկտրաչափիչ սարքերի գործարանում այդ աշխատանքում երաշխավորել են օտար լեզվի դասատուի, ալյումինի գործարանում՝ գրադարանային գործի մասնագետի, կարի «Գարուն» արտադրամիավորումում՝ անասնաբույժի: Մի շարք ձեռնարկություններում պետընդունման մարմիններում ներգրավվել են ինժեներական աշխատանքի փորձ չունեցող երիտասարդ մասնագետների, բարձրագույն կրթություն չունեցող մարդկանց, անիրազեկ այլ անձանց: Նման փաստերը հնարավոր են դարձել այն պատճառով, որ պետստանդարտի հանրապետական վարչությունը (պետ՝ Վ. Պարոնիկյան) չի հսկել այդ մարմինների կադրերի ընտրության աշխատանքը: Մինչդեռ ՍՄԿԿ Կենտկոմում տեղի ունեցած խորհրդակցությունում ընկ. Մ. Ս. Գորբաչովն ասաց. «Պետընդունման մարմինների համար պետք է ընտրել քաղաքական և տեխնիկական լայն մտահորիզոն ունեցող, գրագետ, բարոյապես հասուն մարդկանց: Այստեղ պետք է երևա կուսակցական կոմիտեների դերը»: Կուսակցության քաղաքային և շրջանային կոմիտեները, պետստանդարտի հանրապետական վարչությունը, ձեռնարկությունների, միավորումների ղեկավարները, կուսակցական կազմակերպությունները պետք է կարճ ժամկետում կոմպլեկտավորեն պետընդունման մարմինները՝ ձեռնարկությունների բարձր որակավորում ունեցող, սկզբունքային ինժեներատեխնիկական աշխատողների թվից և նրանց համար ստեղծեն աշխատանքի նորմալ պայմաններ: Այստեղ նկատի է առնըվում ապահովվածությունը համապատասխան շենքերով, նորմատիվային-տեխնիկական փաստաթղթերով, կապի, փորձարկման ու չափիչ միջոցներով և այլն:

Պետստանդարտի մարմիններին և արտագերատեսչական ընդունմանը տրված են լայն իրավունքներ: Նրանք պետք է բարձրացնեն ստանդարտների պահպանման պետական հսկողության մակարդակը, լիովին օգտագործեն ցածրորակ արտադրանքի թողարկումը դադարեցնելու իրենց վերապահված իրավունքը:

Դիրեկտիվ մարմինները սահմանել են, որ միավորումների, ձեռնարկությունների և կազմակերպությունների պաշտոնատար անձանց կողմից ստանդարտներին և տեխնիկական պայմաններին չհամապատասխանող արտադրանքի բեռնումը դադարեցնելու վերաբերյալ պետընդունման մարմինների կարգադրությունը չկատարելը և պլանային առաջադրանքների ու պայմանագրային պարտավորությունների կատարման հաշվետվությունների մեջ այդպիսի արտադրանք մտցնելը դիտվում են որպես պետական հաշվետվության խեղաթյուրում՝ դրանից բխող բոլոր հետևանքներով:

Պետական կարևորության մեծ խնդիրների լուծման և պետընդունման մարմինների արդյունավետ գործունեության ապահովման համար կարևոր նշանակություն ունի այդ մարմինների ներկայացուցիչների կուսակցական սկզբունքայնության, պրոֆեսիոնալ խոր գիտելիքների և փորձի զուգորդումը: Մոսկովյան խորհրդակցությունում այդ առթիվ ընկ. Մ. Ս. Գորբաչովն ասաց. «Եթե պետընդունումը իրեն զգա իբրև ինչ-որ առանձնահատուկ կաստա, որը կարող է միայն սպառնալ, ինքնակամություն անել, ապա դա արդեն պետընդունում չէ: Պետք է միանգամից ընտրել այնպիսի մարդկանց, որոնք հասկանում են, թե ինչն ինչոց է: Քանի որ ընդունման մարմինների գործողությունները շոշափում են մարդկանց, կոլեկտիվների, ամբողջությամբ վերցված հասարակության բախտը»:

Պետընդունման մարմինների աշխատանքում գործարար իրադրություն ստեղծելու առումով մեծ դեր պետք է խաղան կուսակցական ու արհմիութենական կոմիտեները: Հարկավոր է գործը կազմակերպել այնպես, որ այդ մարմինների աշխատողները չկորցնեն սկզբունքայնությունը, չգլորվեն դատարկ ֆորմալիզմի ճահիճը:

Պետական ընդունմանը զուգընթաց նոր տարվանից սկսեց գործել նաև արտադրանքի առաքման պայմանագրային պարտավորությունները հարյուր տոկոսով կատարելու մասին կանոնադրությունը, որը լրացուցիչ պատասխանատվություն է դնում

թողարկվող արտադրանքի որակը կտրուկ բարձրացնելու գործում: Արդյունաբերական արտադրանքի տեխնիկական մակարդակի և որակի բարձրացման հարցերի արմատական լուծման համար անհրաժեշտ է մշակել ձեռնարկությունների տեխնիկական վերազինման, տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործման, առավել պրոգրեսիվ նյութերի կիրառման, արտադրությունից հնացած արտադրանքը հանելու կոմպլեքսային միջոցառումներ: Այդ կապակցությամբ կտրուկ աճում է գիտահետազոտական, կոնստրուկտորական և նախագծային կազմակերպությունների դերը: Հարկավոր է առավելագույն չափով ակտիվացնել հանրապետությունում առատորեն ստեղծված, արտադրամիավորումների կազմի մեջ մտնող կամ չմտնող գիտահետազոտական ինստիտուտների, կոնստրուկտորական-տեխնիկական բյուրոների և մասնագիտացված կոնստրուկտորական-տեխնիկական բյուրոների աշխատանքը:

Հաշվի առնելով արտադրանքի որակի բարձրացման պրոբլեմի ողջ բարդությունը, հարկավոր է արմատապես վերակառուցել կադրերի պատրաստման ու վերապատրաստման համակարգը, իրականացնել բանվորների ու մասնագետների որակավորման պլանաչափ և անընդհատ կատարելագործումը՝ նրանց մասնագիտական բանիմացությունը տեխնիկայի ու տեխնոլոգիայի մշտապես աճող մակարդակին համապատասխանեցնելու նպատակով: Հարկավոր է պրակտիկայում լայնորեն օգտագործել իրենց արդարացրած ուսուցման ձևերը և, առաջին հերթին, նպատակային նշանակման դասընթացները, աշխատանքի առաջավոր եղանակների ու մեթոդների ուսումնասիրման դպրոցները, խմբակները, սեմինարները: Անհրաժեշտ է կազմակերպել արտադրությունում նոր ընդունված բանվորների ու ինժեներատեխնիկական աշխատողների ուսուցումը. նրանց ծանոթացնել տեխնոլոգիական և արտադրական պրոցեսների առանձնահատկություններին՝ թողարկվող արտադրանքի որակին ներկայացվող պահանջներին: Նախատեսված է տեխնոլոգիական նոր պրոցեսներին և արտադրանքի նոր տեսակների յուրացմանն անցնելիս իրականացնել աշխատողների ուսուցումը՝ այն դիտելով որպես արտադրության նախապատրաստման կարևոր բաղկացուցիչ մաս:

Խորհրդակցությունում խնդիր դրվեց, որպեսզի արհմիություններն ու կոմերիտմիությունը իրենց ներդրումն անեն արտադրանքի որակի բարելավման գործում, ակտիվորեն օգնեն պետընդունման արդյունավետ անցկացմանը: ՀԱՄԽ-ի, արհմիությունների հանրապետական կոմիտեների, կազմակերպությունների առաջնահերթ խնդիրն է լրջորեն հետևություններ անել կուսակցության արդի պահանջներից և մեծ ուշադրություն նվիրել աշխատանքի կազմակերպվածության բարձրացման գործում արտադրական կոլեկտիվների դերի ուժեղացմանը, հասնել կոլեկտիվի բոլոր անդամների կողմից աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի դրսևորմանը, արժանիորեն և լայն հրապարակայնությամբ գնահատել բանվորների և ինժեներատեխնիկական անձնակազմի պրոֆեսիոնալ վարպետությունը: Հարկավոր է կոնկրետացնել սոցիալիստական մրցության բովանդակությունը բարձր որակի համար, պաշտպանել և լայնորեն տարածել այն առաջավոր բրիգադների նախաձեռնությունն ու փորձը, որոնք ստանձնել են կոլեկտիվ պատասխանատվություն՝ միայն բարձրորակ արտադրանք թողարկելու համար:

ՀԼԿԵՄ Կենտկոմը, կոմերիտմիության քաղկոմներն ու շրջկոմները պետք է ակտիվացնեն սկզբնական կազմակերպությունների գործունեությունը, հասնեն նրան, որպեսզի յուրաքանչյուր կոմերիտական, յուրաքանչյուր երիտասարդ, ինչպես նշվեց խորհրդակցությունում, գործնականորեն իրեն զգա վերափոխումների ակտիվ մասնակից:

Կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունները պարտավոր են լայնորեն օգտագործել աշխատանքի կազմակերպման բրիգադային ձևը՝ արտադրանքի որակի բարձրացման համար, ուժեղացնել բրիգադների կոլեկտիվների, բրիգադների և բրիգադավարների խորհուրդների դերն այդ գործում: Հարկավոր է հասնել այն բանին, որ տեխնոլոգիական կարգապահության խախտման և ցածրորակ արտադրանքի թողարկման ոչ մի դեպք դուրս չմնա բրիգադի կոլեկտիվի ուշադրությունից, իսկ խոտանարարները ենթարկվեն համապատասխան նյութական և բարոյական տույժի:



Այսօր, արտադրանքի պետական ընդունման պայմաններում, կարևոր նշանակություն ունի աշխատանքի ճիշտ ու խելամիտ նորմավորումը: Հետևաբար, պահանջվում է հատուկ ուշադրություն նվիրել նորմավորման հարցերի լուծմանը: Տեխնիկական հիմնավորված նորմաները պետք է դառնան յուրաքանչյուր բրիգադի, տեղամասի, արտադրամասի տնտեսագիտական օրենքը: Հարկ է խրախուսել յուրաքանչյուր բանվորին՝ գերազանց որակի և առաջին ներկայացմամբ արտադրանքի հանձնման համար:

Ինչպես մեր կենսագործունեության մյուս բոլոր ոլորտներում, արտադրանքի պետական հանձնման գործում ևս կուսակցությունը մեծ տեղ է հատկացնում մամուլին, հեռուստատեսությանը և ռադիոյին: Ինֆորմացիայի միջոցները պետք է առավել ակտիվորեն լուսաբանեն միավորումների, ձեռնարկությունների և կազմակերպությունների, արտադրության առաջավորների, որակի խմբերի, տեխնիկական հսկողության ծառայությունների, պետական ընդունման մարմինների, կուսակցական, սովետական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների աշխատանքի փորձը արտադրանքի որակի ցուցանիշների լավացման ասպարեզում, խիստ քննադատության ենթարկեն խոտանարարներին, ստանդարտները, տեխնիկական պայմաններն ու տեխնոլոգիական կարգապահությունը խախտողներին:

Մինիստրությունները և գերատեսչությունները, արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվները, կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունները պետընդունման նորաստեղծ մարմինների ակտիվ գործունեության ապահովմամբ էական ավանդ կներդնեն թողարկվող արտադրանքի որակի բարձրացման, երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու վերաբերյալ ՍՄԿԿ XXVII համագումարի պատմական որոշումների իրագործման համար մղվող պայքարում:

---

# ԱՐԴԻ ՊԱՀԱՆՋՆԵՐԻՆ ՀԱՄԱՔԱՅԼ

**Գ. ԳԱԼՈՅԱՆ**
*ՀՍՍՀ գիտությունների ակադեմիայի փոխպրեզիդենտ*

ԵՐԿՐԻ ՍՈՑԻԱԼ-ՏՆՏԵՍԱԿԱՆ զարգացման արագացման, սովետական հասարակության՝ որակապես նոր վիճակի հասնելու կուրսի իրագործումը զգալի չափով կախված է նաև հասարակական գիտությունների առջև ծառացած այն խնդիրների լուծումից, որոնք սահմանվեցին ՍՄԿԿ XXVII համագումարի կողմից և գործնական ձևակերպումներ ստացան հասարակագիտական ամբիոնների վարիչների՝ 1986 թ. սեպտեմբերին տեղի ունեցած խորհրդակցությունում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Մ. Ս. Գորբաչովի ճառում:

Մենք ապրում ենք հեղափոխական վերափոխությունների, սպասումների ու հույսերի մի ժամանակաշրջան, երբ կուսակցության կողմից առաջադրված արմատական խնդիրների լուծումն անհնար է առանց մեր գաղափարական-տեսական գործունեության ակտիվացման, հասարակական գիտությունների դերի բարձրացման, առանց հեռանկարային սոցիալական ու քաղաքական կողմնորոշման: Պատմական նոր պայմաններում կուսակցության տեսական գործունեությունը դառնում է վերակառուցման կարևորագույն գործոնը:

Տեսական ճակատի ակտիվացման, հասարակական գիտությունների դերի բարձրացման հարցը որպես սոցիալական պատվեր դրվեց ՍՄԿԿ XXVII համագումարի կողմից: Խնդիր է դրվում, որպեսզի հասարակագիտական միտքը առավել համարձակ և արդյունավետ ծառայեցվի արդի պայմաններում կոմունիստական կուսակցության քաղաքականության գիտական հիմքերի մշակմանը, երկրի տնտեսական ու սոցիալական զարգացման արդյունավետ ուղիների որոնմանը, մեր կյանքի բացասական երևույթների դեմ մղվող պայքարին:

Սովետական գիտության առջև կուսակցության համագումարի կողմից դրված խնդիրների լուծման նպատակով խոր վերակառուցումներ են իրականացվում գիտության բոլոր ասպարեզներում: Նկատելի են տեղաշարժեր նաև ՀՍՍՀ ԳԱ հասարակագիտական ինստիտուտների վերակառուցման, հրատարակչական գործունեության բարելավման, ինչպես նաև պետական ու աշխատանքային կարգապահության ամրապնդման ասպարեզում: ԳԱ նախագահության կողմից սահմանվում են ինստիտուտների գիտական առաջնային ուղղությունները, որոնցով էլ պայմանավորվում է նրանց նոր կառուցվածքը:

Խոսքը չի վերաբերում ժամանակակից պահանջներին ուսումնասիրվող պրոբլեմների և թեմաների անվանումները հարմարեցնելուն, եթե կարելի է ասել՝ երեսակը ներկելուն: Խնդիր է դրվում բարձրացնել գիտական աշխատողների ստեղծագործական ակտիվությունը, ճիշտ սահմանել առաջնային նշանակություն ունեցող գիտական ուղղությունները, բարձրացնել բուն հետազոտությունների մակարդակը, փաստերի, երևույթների սթափ վերլուծության հիման վրա կատարել հիմնարար տեսական ընդհանրացումներ: Կարևորը գիտական հետազոտությունների՝ գաղափարապես հասուն վերջնական արդյունքն է:

Գաղափարախոսական հարցերի վերաբերյալ կուսակցության ընդունած որոշումների հիմնադրույթներին համապատասխան գիտահետազոտական աշխատանքների պլաններում առաջնակարգ տեղ է տրվում այնպիսի պրոբլեմների մշակմանը,



ինչպիսիք են սոցիալիզմի կատարելագործման, ժողովրդական զանգվածների ինտերնացիոնալ դաստիարակության, աշխատանքի արտադրողականության որակական բարձրացման, գիտատեխնիկական առաջընթացի արագացման սոցիալական ու էկոլոգիական հնարավոր հետևանքների կանխորոշման, տնտեսավարման նոր ձևերի արդյունավետության, գիտական՝ մարքսիստական-լենինյան աշխարհայացքի ձևավորման, բուրժուական գաղափարախոսության քննադատության և այլ պրոբլեմները:

ԳԱ տնտեսագիտության ինստիտուտում մշակվում են գիտատեխնիկական առաջընթացի պայմաններում մեր հանրապետությունում ընդլայնված վերարտադրության արմատական պրոբլեմները, հանրապետության էկոնոմիկայի մասնագիտացման, տնտեսական մեխանիզմի կատարելագործման հարցերը:

Փիլիսոփայության և իրավունքի ինստիտուտում առաջնային տեղ է տրվում սոցիալիստական ապրելակերպին, սոցիալիստական օրինականության և իրավակարգի հետագա ամրապնդմանը, աշխատավորների աթեիստական դաստիարակությանը, երիտասարդության սոցիալական ակտիվությանը, Սովետական Հայաստանում բանվոր դասակարգի զարգացմանը նվիրված թեմաներին: Աշխատանք է տարվում 1987 թվականին Անդրկովկասի փիլիսոփաների VII կոնֆերանսի կազմակերպման ուղղությամբ, որտեղ քննարկվող հարցերի շարքում ուշադրության կենտրոնում է գտնվելու «Ազգամիջյան հարաբերությունների արդիական պրոբլեմները և լենինյան ազգային քաղաքականության հաղթանակը» թեման:

Մ. Աբեղյանի անվան գրականության ինստիտուտում մշակվում են սովետահայ գրականության և սոցիալիստական ռեալիզմի արդի պրոբլեմները, նոր մարդու ձևավորման գործում գրականության դերի հարցերը: Ինստիտուտում գործող գրական կապերի բաժինը երկար տարիներ ուսումնասիրում է ՍՍՀՄ և սոցիալիստական երկրների ժողովուրդների գրականությունների փոխազդեցության պրոբլեմը: Ինստիտուտը նախապատրաստվում է մասնակցել Բաքվում առաջիկայում տեղի ունենալիք Անդրկովկասյան հանրապետությունների միացյալ գիտական նստաշրջանին՝ նվիրված Հայաստանի, Վրաստանի և Ադրբեջանի գրական ու կուլտուրական փոխադարձ կապերին:

Հ. Աճառյանի անվան լեզվի ինստիտուտում բարձր մակարդակով մշակվում են հայոց լեզվի պատմության, պատմահամեմատական լեզվաբանության, տիպաբանության, լեզվաբանության փիլիսոփայական պրոբլեմները:

Պատմության ինստիտուտը հրատարակության է պատրաստում հայ ժողովրդի պատմության ռուսերեն քառահատորյակը, որտեղ մեծ տեղ է տրվում հայ և ռուս ժողովուրդների, ինչպես նաև Անդրկովկասի ժողովուրդների դարավոր բարեկամության ու կապերի պատմության լուսաբանմանը: Մոտ երեսուն տարի է, ինչ հայ և ուկրաինացի պատմաբանները գիտական խորությամբ ուսումնասիրում են հայ-ուկրաինական կապերի և բարեկամության պատմության հարցերը: Համատեղ ուժերով հրատարակվել են հոդվածների երեք ժողովածուներ: 1987 թվականին նախատեսվում է անցկացնել գիտական նստաշրջան՝ նվիրված այդ հարցերի հետագա մշակմանը: Անդրկովկասի պատմաբանների համագործակցության հիանալի արդյունք հանդիսացան «Սովետական իշխանության հաղթանակը Անդրկովկասում», «Անդրկովկասի կոմունիստական կազմակերպությունների պատմության ուրվագծեր» և այլ աշխատությունների ստեղծումն ու հրապարակումը:

Արվեստի ինստիտուտում աշխատանքներ են տարվում պատմական հուշարձանների համահավաքի տասը հատորյակի ստեղծման, հայ ճարտարապետության պատմության, թատրոնի, կինոյի, երաժշտության տեսության հարցերի մշակման ուղղությամբ:

Կուսակցության գաղափարախոսական աշխատանքին ի նպաստ գործեր են ստեղծվում Արևելագիտության ինստիտուտում: Մերձավոր ու Միջին Արևելքի երկրների քաղաքական արդի պատմության մշակմանը զուգընթաց այդ ինստիտուտը տպագրության է նախապատրաստել «Հայ ժողովրդի նոր պատմությունը արտասահմանյան ժամանակակից պատմագրության լուսաբանմամբ» աշխատությունը, որտեղ մերկացվում են հայ ժողովրդի պատմության անգլո-ամերիկյան, ֆրանսիական, թուրքական, պարսկական և այլ բուրժուական կեղծարարները:

1986—1990 թվականներին ԳԱ հրատարակությամբ լույս կտեսնեն բազմաթիվ աշխատություններ՝ նվիրված մեր ժողովրդի պատմության, մշակույթի և հանրապետության տնտեսական զարգացման հարցերին, մասնավորապես ՍՄԿԿ XXVII համագումարը և սոցիալիստական հասարակության հետագա կատարելագործման հրատապ պրոբլեմները, Հոկտեմբերյան հեղափոխությունը և երիտասարդությունը, արդի փուլում ազգամիջյան հարաբերությունների զարգացումը ՍՍՀՄ-ում, սոցիալիստական ապրելակերպը և անձի խելամիտ պահանջմունքների ձևավորումը, առաջավոր տեխնիկայի և տեխնոլոգիայի ներդրման տնտեսագիտակազմակերպչական ձևերը, սոցիալական արդարություն և սոցիալական իրավունք, ժողովուրդների բարեկամության արտացոլումը հայ դասական գրականության մեջ և այլ աշխատություններ:

Բայց մի շարք պատճառներով հասարակագիտական ինստիտուտներում կատարվող մշակումները լայն արձագանք չեն գտնում ինչպես մեր երկրում, այնպես էլ նրա սահմաններից դուրս: Այժմ, երբ ամենայն սրությամբ դրվում են իմպերիալիզմի գաղափարախոսության դեմ մղվող պայքարի հարցերը, պահանջ է զգացվում, որպեսզի մեր հասարակագետների լուրջ հետաքրքրություն ներկայացնող աշխատությունները թարգմանվեն և հրատարակվեն ռուսերեն և օտար լեզուներով:

Ակտիվացրել են իրենց գործունեությունը գիտատեխնիկական հեղափոխության տնտեսական պրոբլեմների, հիմնական ֆոնդերի և կապիտալ ներդրումների տնտեսական արդյունավետության, սոցիալիստական ազգերի զարգացման և մերձեցման, արտասահմանյան գաղափարական հոսանքների պրոբլեմների գիտական խորհուրդները:

Պատմական վաղեմությունը երբեք չկորցնող, մեր ժողովրդի հոգևոր կյանքին մշտապես ուղեկցող երևույթ և ինտերնացիոնալ դաստիարակության կենարար աղբյուր է հայ և ռուս ժողովուրդների պատմական մեծ բարեկամությունը, որի գիտական հիմնավորվածության մեկնաբանումը, նրա ուսանելի դասերի ու մեծ գաղափարների պրոպագանդումը մշտապես գտնվել են մեր հասարակագետների ուշադրության կենտրոնում:

Դա բնական է: Մեր ժողովրդի հասարակական-քաղաքական միտքը դարեր շարունակ իր վրա կրել է ռուսական դեմոկրատական մտքի բարերար ազդեցությունը և տոգորված է եղել ռուս ժողովրդի հետ բարեկամությունն ամրապնդելու գաղափարով: Օսմանյան և պարսկական բռնակալական լծից ազատագրվելու երազանքները հայ ժողովուրդը ավանդաբար կապել է իր ռուսական կողմնորոշման հետ: Մեր պատմաբանների՝ Մոսկվայում և Երևանում տպագրված մենագրություններում, պատմության ինստիտուտի կոլեկտիվի ջանքերով ստեղծված՝ հայ-ռուսական հարաբերությունների պատմությանը նվիրված նյութերի և փաստաթղթերի ժողովածուներում, «Հայ ժողովրդի պատմություն» բազմահատորյակում, երկու գրքով լույս տեսած «Հայ և ռուս միջնադարյան գրականություններ» գրականության ինստիտուտի կոլեկտիվ մենագրությունում և այլ աշխատություններում կարմիր թելի պես անցնում է այդ գաղափարը:

Զնայած կատարվածին, այդ պրոբլեմը շարունակում է մնալ մեր հասարակագետների ուշադրության կենտրոնում: Չի կարելի միաժամանակ չնկատել, որ առանձին աշխատություններում երբեմն սպրդում են մեր ազգային տրամադրվածությանն անհարիր ձևակերպումներ, որոնք խոսում են ոչ թե ինչ-որ կոնցեպցիայի գոյության, այլ դրանց հեղինակների կողմից պատմագիտական նյութի թույլ իմացության և մեթոդաբանական կոփվածության բացակայության մասին:

Պետք է նկատի ունենալ, որ մեր գաղափարական թշնամիները չեն դադարեցնում իրենց փորձերը կեղծելու հայ ժողովրդի կյանքում ռուս ժողովրդի և Ռուսաստանի խաղացած մեծ դերը և ապարդյուն ճիգեր են թափում սեպ խրելու մեր ժողովուրդների՝ դարերի փորձությունը բռնած բարեկամության միջև: Այդ ճիգերը բուրժուական աշխարհում առատորեն վարձատրվում են: Ֆ. Էնգելսն է ժամանակին նկատել, որ կապիտալի աշխարհում «...բոլորից լավ վարձատրվում է այն երկը, որի մեջ պատմության կեղծումը ամենից ավելի է համապատասխանում բուրժուազիայի շահերին» (**Մարքսի և Էնգելսի արխիվ**, հ. 10, 1948, էջ 104):

Թուրքական և պարսկական բռնակալական ռեժիմների դեմ հայ և Անդրկովկասի մյուս ժողովուրդների ազգային-ազատագրական շարժումների պատմության հարցերի մարքսիստական-լենինյան մեթոդաբանության դիրքերից վերլուծությունը վիթխարի նյութ է տալիս պատմական անցյալի փիլիսոփայական ընդհանրացման, Անդրկովկասի ժողովուրդների եղբայրական դաշինքի պատմական արմատների բացահայտման, ռուս ժողովրդի առաջադիմական դերի վերհանման համար: Անժխտելի իրողություն է, որ Անդրկովկասի միավորումը Ռուսաստանի հետ նպաստեց ոչ միայն ռուս ժողովրդի հետ երկրամասի ժողովուրդների պատմական կապերի ամրապնդմանը, այլև անպայմանորեն՝ բուն Անդրկովկասի ժողովուրդների փոխհարաբերությունների սերտացմանը:



ՍՄԿԿ XXVII համագումարի որոշումների կենսագործմանն է նպատակամղված Անդրկովկասի եղբայրական հանրապետությունների գիտությունների ակադեմիաների պրեզիդենտական խորհրդի հանձնարարությամբ մշակված համատեղ աշխատանքների պլանը: Նախատեսվում է մասնավորապես առաջիկա տասնամյակում հրատարակել փաստաթղթերի եռհատոր ժողովածու՝ նվիրված Անդրկովկասը Ռուսաստանի կազմի մեջ մտնելուն, կոլեկտիվ մենագրություն՝ հայրենասիրական և ինտերնացիոնալ դաստիարակության մասին, ազգային լեզուներով երկլեզու բառարաններ և այլն: Այս պլանի իրագործումը խոշոր քայլ կհանդիսանա ռեգիոնալ պրոբլեմների համատեղ մշակման գործում: Սակայն առաջարկվող թեմաները դեռևս տեղ չեն գտել համապատասխան ինստիտուտների գիտահետազոտական աշխատանքների պլաններում: Պրեզիդենտական խորհուրդը պետք է լրջորեն մտահոգվի այս հարցով:

Հատուկ հոգածության առարկա պետք է դառնա Անդրկովկասի ժողովուրդների անցյալի պատմության մեթոդաբանական հարցերի մշակումը այն հաշվով, որպեսզի վեր հանվեն մեզ իրար կապող պատմական փաստերը, որպեսզի պատմությունը ծառայեցվի կոմունիստական շինարարության շահերին: Հատկապես արդիական հետաքրքրություն է ներկայացնում XVI—XVII դարերում թուրքական և պարսկական բռնակալական ռեժիմների դեմ Անդրկովկասի ժողովուրդների համատեղ պայքարի, ռուսական հեղափոխական դեմոկրատական և ապա՝ բանվորական շարժման հետ նրանց ազատագրական պայքարի միաձուլման պատմությունը, սովետական իշխանության հաղթանակի համար երկրամասում մղած համատեղ պայքարի, սոցիալիզմի կառուցման գործում փոխադարձ օգնության, Անդրկովկասի ժողովուրդներին Սովետական Ռուսաստանի ցույց տված օգնության պատմությունը:

Մեզ չի կարող չանհանգստացնել այն փաստը, որ երբեմն միևնույն հարցի շուրջը տարբեր հանրապետություններում հրատարակած աշխատություններում իրարամերժ տեսակետներ են զարգացվում, որոնք չեն կարող նպաստել ժողովրդական զանգվածների կոմունիստական դաստիարակության շահերին և համահունչ չեն մեր ժողովուրդների եղբայրության գաղափարին:

Երկար տարիներ է, օրինակ, ինչ որոշ անհոգ պատմաբանների մեղքով գիտականորեն չհիմնավորված վիճաբանությունների առարկայի են վերածվել Անդրկովկասի ժողովուրդների հին և միջնադարյան պատմության հանգուցային մի շարք հարցեր: Անառողջ ձգտում է նկատվում՝ սեփական ժողովուրդներին վերագրել առավել հին պատմություն:

Երբեմն լույս աշխարհ են գալիս աշխատություններ, որտեղ պատմական բազմաթիվ փաստեր «հարմարեցվել» են հեղինակների սուբյեկտիվ, ոչ գիտական հայացքներին:

«Փորձեր են արվում,— գրում է այս կապակցությամբ ակադեմիկոս Ս. Լ. Տիխվինսկին,— թյուրքեր փնտրել Առաջավոր Ասիայում դեռևս հնագույն անցյալում և նրանց վերագրել գլխավոր դերը՝ առաջավոր ասիական հնագույն քաղաքակրթության, ինչպես նաև Անդրկովկասյան տեղական կուլտուրաների և պետությունների ստեղծման գործում (ամենից առաջ՝ Կովկասյան Աղվանքի և սկյութացիների): Հայաստանում վերջին տարիներին գրողները Ուրարտուն հայտարարում են հայկական կազմավորում, մեղադրելով դրա հետ չհամաձայնող գիտնականներին հայրենասիրության պակասի մեջ և այլն: Ծարունակվում է հայ և ադրբեջանցի պատմաբանների երկար տարիներ տևող վեճը Կովկասյան Աղվանքի, նրա էթնիկայի, մշակույթի և

այնեի վերաբերյալ, բանավեճ է գնում հայ և վրաց պատմաբանների միջև՝ X—XIII դարերում Անդրկովկասի պատմության մեջ վրացական պետության խաղացած դերի վերաբերյալ: Վերջերս այդ վեճի մեջ ներքաշվել են նաև Ադրբեջանի պատմաբանները» («Вопросы истории», № 9, 1986, стр. 10—11):

Դրան պետք է ավելացնել նաև Անդրկովկասի ժողովուրդների ազգային-ազատագրական շարժումների պատմության լուսաբանման հարցում երբեմն դրսևորվող իրարամերժ կարծիքները, սովետական իշխանության հաղթանակի համար մղված պայքարի պատմության լուսաբանման գործում թույլ տրվող սուբյեկտիվ գնահատումները, քաղաքական կուսակցություններին, ազգային առանձին գործիչներին տրվող գնահատականներում դասակարգային մոտեցման բացակայությունը:

Նման վիճակը հանդուրժել չի կարելի: Խնդրո առարկա հարցերը ոչ միայն գիտական, այլև գաղափարական բնույթի հարցեր են և դրանց լուծումը պահանջում է, որպեսզի մեր եղբայրական հանրապետությունների գիտությունների ակադեմիաները և կուսակցական կազմակերպությունների համապատասխան օղակները համատեղ միջոցներ ձեռնարկեն դրությունը շտկելու համար: Մասնավորապես անհրաժեշտ պետք է դիտվի ընդհանուր հետաքրքրություն ներկայացնող աշխատությունները նախքան նրանց հրատարակելը փոխադարձ գրախոսման ենթարկելը, ռեգիոնալ նշանակություն ունեցող պրոբլեմների համատեղ մշակումը: Այս հարցում շատ անելիքներ ունի նաև ՍՍՀՄ ԳԱ պատմության բաժանմունքը, որի վրա է դրված երկրում պատմագիտական հիմնարկների գործունեության կոորդինացման խնդիրը: Գործին մեծապես կարող էր նպաստել կովկասագիտական հատուկ հանդեսի հրատարակումը, որի էջերում կարելի կլիներ գիտական բանավեճեր ծավալել ընդհանուր հետաքրքրություն ներկայացնող հարցերի շուրջ:

Վերջերս տեղի ունեցավ ՀՍՍՀ ԳԱ պատմության ու տնտեսագիտության և փիլիսոփայության ու բանասիրության բաժանմունքների միացյալ ժողովը, որտեղ քննարկվեցին հասարակական գիտությունների ինստիտուտների խնդիրները ՍՄԿԿ XXVII համագումարի որոշումների և հասարակական գիտությունների ամբիոնների վարիչների համամիութենական խորհրդակցությունում ընկ. Մ. Ս. Գորբաչովի առաջ քաշած դրույթների լույսի ներքո: Քննադատելով մեր ժողովրդի հին և միջնադարյան ժամանակաշրջանի պատմության և մշակույթի հարցերի ուսումնասիրման բնագավառում տեղ գտած թերությունները ու սխալները, ժողովի մասնակիցները ամենայն սրությամբ նշեցին հասարակական գիտությունների ինստիտուտների հետ մնալը տեսական հարցերի մշակման գործում:

Այսօր մենք չենք կարող վկայել, թե մեր այս կամ այն ինստիտուտը հանդիսանում է երկրի առջև կանգնած որևէ նոր պրոբլեմի տեսական իմաստավորման հեղինակ: Մեր հասարակագետների մեջ ինչ-որ չհաղթահարված կաշկանդվածություն, անհամարձակություն կա տեսության ոլորտում նոր խոսք ասելու նկատմամբ: Մեր մտածողության մեջ արմատավորվել է տեսակետ, թե դա ուրիշներին է արտոնված: Մենք, որպես կանոն, տեսության հարցերում ավելի շատ հանդես ենք գալիս իբրև արդեն ճանաչում գտած տեսակետների պրոպագանդիստ: Այս, թող թույլ տրվի ասել, «օրինաչափությունը», իհարկե, խախտելու փորձեր արվում են, որոնք, սակայն, որակական հետևանքներ չեն ունենում: Մենք երկչոտ ենք եղել նույնիսկ այն դեպքերում, երբ տեսել ու հասկացել ենք, որ այս կամ այն հարցադրումը, պրակտիկ խնդրի լուծման եղանակը անհարիր են սոցիալիզմի բուն էությանը:

ՀՍՍՀ ԳԱ հասարակական գիտությունների ինստիտուտներում կատարվող գիտահետազոտական աշխատանքների և ուսումնասիրությունների տեսական և գաղափարաքաղաքական մակարդակը դեռևս լիովին չի համապատասխանում կյանքի առաջադրած նոր խնդիրներին: Դեռևս բավարար չէ աթեիստական դաստիարակության և հակակրոնական պրոպագանդայի ուղղությամբ տարվող աշխատանքների մակարդակը:

Դանդաղ են ընթանում ՀՍՍՀ ԳԱ հասարակական գիտությունների ինստիտուտների վերակառուցման ուղղությամբ տարվող աշխատանքները, արմատական բարելավման կարիք են զգում կադրերի պատրաստումը, գիտական հետազոտությունների իրականացման նյութատեխնիկական բազան, գիտահետազոտական աշխատանքների



կոորդինացիան, սերտ կապ չկա ՀՍՍՀ ԳԱ հասարակական գիտությունների ինստիտուտների և հանրապետության բուհերի հասարակագիտական ամբիոնների միջև:

Տարբեր բուհերի և գիտահետազոտական ինստիտուտների գիտնականների ջանքերի միավորմանը արգելք է հանդիսանում կանոնորոշ ակտերի բացակայությունը: Քրոնիկ բնույթ կրող հիվանդություն է, երբ ինստիտուտներում և ամբիոններում մշակվող թեմատիկան գերազանցապես որոշվում է ըստ առանձին գիտական աշխատողների նախասիրությունների, երբ մանրաթեմայնության վերացման ուղղությամբ տարվող աշխատանքները աչքակապության են վերածվում:

ԳԱ ղեկավարությունը, Երևանի պետական համալսարանի, հանրապետության մյուս բուհերի ռեկտորատները, կուսակցական կազմակերպությունները, ՀԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան (1986 թ.) պլենումում նշեց ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը, պետք է ինստիտուտների դիրեկտորներից և ամբիոնների վարիչներից «ավելի խիստ պատասխան պահանջեն կատարվող հետազոտությունների գաղափարական մակարդակի և որակի համար, ամենալուրջ ուշադրություն դարձնեն հասարակագետների պատրաստմանն ու դաստիարակմանը»: Պլենումը պահանջեց բարձրացնել գիտական և ստեղծագործական պրոբլեմների ու հարցերի քննարկման արդյունավետությունն ու կուլտուրան, համարձակորեն դիմել գիտական որոնումների, բարձրացնել գիտական կոլեկտիվների, յուրաքանչյուր գիտաշխատողի պատասխանատվությունը:

Հասարակագիտական ինստիտուտներում կատարվող բոլոր գիտահետազոտական աշխատանքները, նույնիսկ եթե դրանք վերաբերում են նախնադարյան տոներին ու դիցաբանությանը, ամբողջությամբ գաղափարական նշանակություն ունեցող գործեր են: Այս պարզ պատճառով էլ մենք չենք կարող այսօր, երբ առավել մեծ սրության է հասել պայքարը սոցիալիստական և բուրժուական գաղափարախոսությունների միջև, հատուկ պահանջկոտություն չցուցաբերել հրատարակվող աշխատությունների գիտական և գաղափարական մակարդակին, սոցիալական հետազոտությունների իրական արդյունքներին, որոնք պետք է ծառայեն մեր հասարակության զարգացման արագացմանը, հասարակական առաջադիմությանը: Հատկապես լուրջ ուշադրություն պետք է դարձվի սոցիալական ու տնտեսական կանխատեսումների, գիտատեխնիկական առաջադիմության սոցիալական, իրավական, տնտեսական և բազմերանգ այլ ասպեկտների հարցերին, ժողովուրդների բարեկամության կենարար ուժի բացահայտմանը, պատմական երևույթների ու դեմքերի, ազգային-ազատագրական շարժումների, քաղաքական կուսակցությունների գնահատման ժամանակ դասակարգային մոտեցմանը, հայրենասիրության և պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարների նպատակաուղղված պրոպագանդմանը, դաշնակցության հայրենադավ քաղաքականության մերկացմանը:

Անցյալին, սովորեցնում է Վ. Ի. Լենինը, պետք է դիմել «այն տեսակետից, ինչ որ վաղը կամ մյուս օրը մեր քաղաքականությանը պետք կգա» (**ԵԼԺ**, հ. 38, էջ 172):

Ցանկացած պրոբլեմի արդիականությունը պայմանավորված է ոչ թե նրա պատմական վաղեմությամբ, այլ այդ պրոբլեմի ունեցած քաղաքական ու գիտական նշանակությամբ, նրանով, թե ուսումնասիրվող հարցը որքանով է նպաստում մեր հասարակական առաջադիմությանը, կուսակցության գաղափարախոսական սկզբունքների հաստատմանը:

Պատմությունը ժողովրդի հիշողությունն է, երիտասարդությանը հայրենասիրության ոգով դաստիարակելու կարևոր միջոցը: Ուստի և սեփական ժողովրդի անցյալի նկատմամբ հետաքրքրության աճը պետք է ի սպաս դրվի հայրենասիրության ոգով մատաղ սերնդի դաստիարակության գործին: Գլխավորն այն է, որ այդ հետաքրքրությանը հաղորդվի ճիշտ ուղղություն, թույլ չտրվի պատմական փաստերի խեղաթյուրում:

Վերջին տարիների ընթացքում, օրինակ, լայն վիճաբանությունների առարկա են դարձել Հայկական լեռնաշխարհում բնակված ցեղերի էթնիկական պատկանելության, հայերի ծագման և որպես ժողովրդի կազմավորման, հայոց լեզվի ձևավորման պրոցեսի, վաղհայկական պետականության ստեղծման ու հարակից այլ հարցերը: Բուրժուական պատմագրության կողմից դրանց նենգափոխումը հեռու գնացող քաղաքական նպատակներ է հետապնդում:

Ինչո՞ւմն է հարցի էությունը: Ավելի քան մեկ դար է, ինչ պատմագրության մեջ

իշխում է հայ ժողովրդի ծագման հնդեվրոպական տեսությունը, ըստ որի հայերը Բալկաններից Փոքր Ասիա թափանցած հնդեվրոպական հայալեզու ցեղեր են եղել, որոնք նվաճել են Հայկական լեռնաշխարհը, ասիմիլյացիայի ենթարկել թվով իրենց 3—4 անգամ գերազանցող բնիկ ցեղերին:

Գերմանածին այս կանխամիտ վարկածը այսօր ճարպկորեն օգտագործվում է թուրքական և պարսկական ռեակցիոն պատմագրության կողմից՝ ժխտելու հայերի պատմական իրավունքը իրենց իսկ բնօրրանի նկատմամբ: Պատմության կեղծարարների ջանքերը այսօր կրկնապատկվել են այն պատճառով, որ պատմագիտական և լեզվաբանական նորագույն ուսումնասիրությունները խարխլում են հնդեվրոպական տեսության հիմքերը և ծանրակշիռ փաստարկներով առաջ են քաշում տեսակետ, ըստ որի հնդեվրոպական ցեղերի նախահայրենիքը եղել է ոչ թե Եվրոպան, այլ Մերձավոր ու Միջին Արևելքը, այդ թվում և Հայկական լեռնաշխարհը:

Մեր մասնագետ պատմաբաններն ու լեզվաբանները, տքնելով հին կոնցեպցիաների բեռի տակ, չեն շտապում հանդես գալ իրենց կարծիքով: Ինստիտուտների ղեկավարները չնկատելու են տալիս այս փաստը: Անհանգստություն չեն ապրում ԳԱ բաժանմունքներն ու նախագահությունը: Բացը լրացնում են «սիրողները», որոնք իրենց բարի մտադրությամբ, բայց պատմական նյութի խիստ թերի իմացությամբ գիտական վիճաբանությանը հաղորդում են սխալ ընթացք: Իսկ մամուլը, հեռուստատեսությունը, հրատարակչությունները հանդես չեն բերում զգուշություն: Մենք ավելի շատ ուժ ու եռանդ ենք ծախսում բորբոքված վիճաբանություններում, քան որոնողական բնույթ ունեցող այս պրոբլեմի գիտական մշակման ասպարեզում:

Այս օրինակը ցույց է տալիս, թե ինչպիսի քաղաքական արդիական հնչեղություն կարող են ստանալ նույնիսկ հազարամյակների վաղեմություն ունեցող պատմական փաստերը:

Մեր եզրակացությունն այն է, որ հայերի ծագման, նրանց՝ որպես ժողովրդի, կազմավորման և նախահայրենիքի, հնագույն Հայաստանում ապրած բազմաթիվ ցեղերի էթնիկական պատկանելության և նրանց լեզուների, հայոց լեզվի ձևավորման, այլ լեզուների հետ ունեցած նրա ծագումնաբանական կապերի, ինչպես նաև վաղհայկական պետականության ստեղծման հարցերը դեռևս կարոտ են խոր ու հիմնավոր կոմպլեքսային ուսումնասիրման և որ այդ խնդիրը այժմ, ավելի քան երբևիցե, հառնել է մեր պատմաբանների, հնագետների և լեզվաբանների առջև որպես հրատապ պրոբլեմ, որի լուծումը հնարավոր է միայն համատեղ ջանքերով:

Առհասարակ անհրաժեշտ է նոր թափ հաղորդել գիտական քննադատության զարգացմանը, հարձակողական պայքար մղել բուրժուական գաղափարախոսության դեմ, առանձնահատուկ ուշադրություն նվիրել մեթոդաբանական և աշխարհայացքային հարցերի լուսաբանմանը, համարձակություն հանդես բերել նոր գաղափարներ առաջ քաշելիս:

Հասարակագիտական ինստիտուտների գործունեությունը կարող է բարձրացվել կուսակցության կողմից առաջադրվող մակարդակին, եթե բոլոր օղակներում առաջին պլան մղվի մեր **աճի որակը,** եթե բարձրացվի յուրաքանչյուրիս պատասխանատվությունը երկրի առջև կանգնած խնդիրների լուծման գործում:

Այժմ, երբ հասարակական զարգացումն առաջադրում է այնպիսի պրոբլեմներ, որոնք առավելապես կոմպլեքսային բնույթ են կրում և չեն կարող լուծվել առանց տարբեր մասնագետների համատեղ ջանքերի, առաջնահերթ նշանակություն է ստանում հասարակական բոլոր գիտությունների ինտեգրացման հարցը: Մինչդեռ ԳԱ նախկին հասարակագիտական բաժանմունքը երկու բաժանմունքների վերածելը աստիճանաբար դրսևորում է իր բացասական կողմերը: Նկատելի է դարձել անջատվածությունը մեր հասարակագիտական ինստիտուտների միջև: Մեր ժողովրդի պատմության և մշակույթի պրոբլեմների համատեղ հետազոտությունները մղվում են հետին պլան: Մենք սկսել ենք քիչ մտածել, ավելի ճիշտ՝ գործնական քիչ քայլեր կատարել հասարակագիտական ինստիտուտների և բուհերի համապատասխան ամբիոնների համագործակցությունը սերտացնելու համար: Հայտնի են օրինակներ, երբ այդ պատճառով տեղի են ունենում գիտական ուժերի ջլատում և ֆինանսական միջոցների անշահավետ ծախսումներ: Նման աշխատաոճը ընդունելի չէ:

Ժամանակը պահանջում է քննադատաբար վերանայել գիտական աշխատանքի



կազմակերպման՝ իրենց չարդարացրած ձևերն ու մեթոդները, մտածել ԳԱ նախագահության և բաժանմունքների կողմից ինստիտուտներին ցույց տրվող ղեկավարման մակարդակի բարձրացման մասին, կառավարման մեթոդների ու ձևերի կատարելագործման մասին: Անհրաժեշտ է, մի կողմից, բարձրացնել բաժանմունքների ղեկավար դերը, մյուս կողմից՝ ըստ ամենայնի խրախուսել ինստիտուտների ինքնուրույնության սահմանների ընդլայնումը: Դեմոկրատական ցենտրալիզմից բխող երկմիասնական այդ խնդիրը, անշուշտ, պետք է լուծվի ԳԱ նախագահության գործունեության ակտիվացման պայմաններում: Եթե ավելի լայն նայենք իրերի դրությանը, ապա անհրաժեշտ է կատարելագործել գիտության կառավարման մեխանիզմը բոլոր մակարդակներում, աշխատանքները գնահատել ոչ թե երեկվա ձեռք բերածով, այլ այսօր լուծվող հարցերով ու վաղվա խնդիրներով: Մինչդեռ մենք՝ գիտության կազմակերպիչներս, ոչ բոլոր դեպքերում ենք ակտիվ ներգործում, որպեսզի պրոցեսը համապատասխանի խնդրի մակարդակին:

Ընկեր Մ. Ս. Գորբաչովի՝ ժամանակի ոգին արտահայտող այն ձևակերպումը, թե մենք այլևս չենք կարող ապրել ու աշխատել, մտածել և գործել հին ձևով, պետք է դառնա յուրաքանչյուրիս վարքագիծը պայմանավորող գործոն: Սովորել աշխատել նոր ձևով, մտածել նորովի՝ այս է ժամանակի պահանջը: Վերակառուցելու համար նախ և առաջ պետք է վերակառուցվել: Իսկ վերակառուցվել նշանակում է կարողանալ ժամանակի պահանջների ոգով ինքնաքննադատաբար վերագնահատել սեփական գործունեությունը: Ուրեմն, մեզանից յուրաքանչյուրը ինքն իրենից պետք է սկսի: Բայց դժբախտաբար շատ են նրանք, ովքեր միայն ուրիշներից են սպասում վերակառուցում: «Ընդ որում,— ինչպես ճիշտ նշեց ընկ. Մ. Ս. Գորբաչովը հասարակական գիտությունների ամբիոնների վարիչների համամիութենական խորհրդակցությունում,— արդեն «արագացում», «վերակառուցում» հասկացություններն էլ երբեմն ջանում են ներառնել հնացած դոգմաների ու ստերեոտիպների շրջանակների մեջ, ամլացնելով դրանց նորությունն ու հեղափոխական էությունը»:

Այսօրվա պրոցեսները չի կարելի հարմարեցնել հին կաղապարներին: «Ճշմարտության որոնումը,— ընդգծում է ընկ. Մ. Ս. Գորբաչովը,— պետք է ընթանա տարբեր տեսակետների զուգադրման, բանավեճերի ու քննարկումների, նախկին ստերեոտիպների վերացման պայմաններում»:

Առաջադրված խնդրի լուծման գործում մեծ անելիքներ ունեն ՀՍՍՀ ԳԱ «Պատմաբանասիրական հանդեսի» և «Լրաբերի» խմբագրությունները, որոնք բարձրացրել են պահանջկոտությունը տպագրության համար ներկայացվող հոդվածների նկատմամբ, իրենց ուշադրության կենտրոնում պահելով հանրապետությունում զարգացող գիտական ուղղությունները:

Հասարակագիտական բնույթի բոլոր հանդեսների համար սկզբունքային նշանակություն ունի «Կոմունիստ» հանդեսի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը, որը տեսական ու քաղաքական կարևորագույն նշանակություն ունեցող փաստաթուղթ է:

Մեր հանդեսները պրոբլեմային գիտական խորհուրդների, բաժանմունքների և ինստիտուտների հետ միասին հավասարապես պարտավոր են իրագործել նաև կոորդինացիոն ֆունկցիա: Ընդ որում անհրաժեշտ է բարելավել կոորդինացիոն աշխատանքները ոչ միայն հանրապետության ներսում, այլև աշխուժացնել կապերը եղբայրական հանրապետությունների հասարակագիտական ինստիտուտների և բուհերի համապատասխան ամբիոնների միջև: Գոյություն ունեցող վիճակը շատ հեռու է կուսակցության այսօրվա պահանջների մակարդակից: Բայց բավական չէ գիտակցել միայն խնդրի լուծման անհրաժեշտությունը: Գլխավորը գործը կազմակերպելու կարողության մեջ է: «Հաջող կառավարելու համար,— սովորեցնում է Վ. Ի. Լենինը,— բացի համոզել կարողանալուց... անհրաժեշտ է գործնականապես կազմակերպելու կարողություն: Սա ամենադժվար խնդիրն է...» (**ԵԼԺ**, հ. 36, էջ 212):

Հենց այդ դժվար խնդրի լուծման հարցում մենք դեռևս նկատելիորեն կաղում ենք: Այսպես, օրինակ, 1985 թ. նոյեմբերին ՀՍՍՀ ԳԱ նախագահության և հանրապետության բարձրագույն կրթության մինիստրության կոլեգիայի համատեղ նիստում քննարկվեց ՀՍՍՀ ԳԱ ինստիտուտների և բուհերի համագործակցության ուժեղացման ասպարեզում առաջադրվող խնդիրների հարցը: Ընդունվեց գործնական բնույթի որոշում: Անցել է մեկ տարի, սակայն որոշման շատ կետեր չեն կատարվել:

Ինչ հարցեր էլ կյանքը առաջ մղի, մեր ուշադրության կենտրոնում մշտապես պետք է գտնվի մարդը: Հասարակության առաջընթաց զարգացման մեջ մարդկային գործոնը վճռական նշանակություն ունի: Որքան էլ մենք կատարելագործենք մեր աշխատանքը, ինչպիսի խելացի պլաններ էլ որ կազմենք, վերջին հաշվով մեր հասարակագիտության մակարդակը որոշում են մարդիկ. ուրեմն, նրանց հետ տարվող աշխատանքից էլ մենք պետք է սկսենք մեր գործունեությունը: Անհրաժեշտ է լրջորեն մտածել և, թերևս, միջոցառումների մի ամբողջ համակարգ մշակել, որպեսզի հնարավոր լինի լուրջ տեղաշարժեր կատարել այս ասպարեզում: Կադրերի հետ տարվող աշխատանքի հարցը այսօր մղվել է առաջին պլան: Անհրաժեշտ է մտածել գիտության աշխատողների ուժերի ճիշտ օգտագործման մասին, վերջ տալ նրանց բազմաթիվ հանձնարարություններով ծանրաբեռնելուն, անօգուտ նիստերին ու խորհրդակցություններին մասնակից դարձնելուն: Այս ամենը հատկապես ծանր ու վտանգիչ հետևանքներ են ունենում գիտության կազմակերպիչների համար, որոնք, փոխանակ բուն գիտության զարգացմամբ զբաղվելու, ուժերը ծախսում են գիտությանը նպաստ չբերող գործերի վրա:

Գիտության աշխատողների կյանքի ու գործունեության կոմպլեքսային պրոբլեմների լուծումը՝ գիտական աշխատանքի ճիշտ կազմակերպումը, գիտության աշխատողների կենցաղային պայմանների բարելավումը, նրանց նյութական և բարոյական խրախուսման մեխանիզմի կատարելագործումը, ինստիտուտներում գիտական ստեղծագործական մթնոլորտի ստեղծումը կնպաստեն գիտական աշխատողի գործունեության արդյունավետ կազմակերպմանը: Գիտությունը մեծ ուժ է և այն հայրենիքի շահերին անմնացորդ ծառայեցնելը մեր՝ գիտության աշխատողներիս քաղաքացիական պարտքն է, հայրենասիրության մեր պարտքի դրսևորումը:

ՀՍՍՀ ԳԱ ավելի քան 8.500 մարդուց բաղկացած կոլեկտիվի աշխատանքների խոր վերակառուցման, հիմնարար հետազոտությունների ակտիվացման և կիրառական նշանակություն ունեցող մշակումների արդյունավետության բարձրացման գործում կարևոր դեր ունեն կատարելու կուսակցական սկզբնական կազմակերպությունները, որոնց թիվը հասնում է 40-ի և որոնցում ընդգրկված են ավելի քան 1.300 կոմունիստներ: Սակայն այդ կազմակերպությունները չունեն մեկ ընդհանուր կուսակցական ղեկավար մարմին, որը կարողանար ապահովել ԳԱ ինստիտուտներում տարվող կուսակցական-քաղաքական աշխատանքի կոորդինացումը: Այդ նպատակով անհրաժեշտ է ունենալ միասնական կուսակցական կոմիտե, ինչպիսին ունեն Ուկրաինայի, Բելոռուսիայի և այլ հանրապետությունների ակադեմիաները:

Հասունացել է նաև ակադեմիայում բազմատիրաժ թերթ ստեղծելու հարցը: Այդպիսի թերթեր ունեն նույնիսկ գիտական այն միավորումները (օրինակ, ՍՍՀՄ ԳԱ Սիբիրի բաժանմունքը), որտեղ չկան կուսակցական կոմիտեներ:

Կուսակցական միացյալ կոմիտեի և բազմատիրաժ թերթի ստեղծումը խոշոր ազդակ կհանդիսանան այն խնդիրների լուծմանը, որոնք դրվել են գիտության աշխատողների առջև ՍՄԿԿ XXVII համագումարի կողմից:

Ինչպես ամբողջ երկրում, այնպես էլ մեր հանրապետությունում արդեն նկատելի են վերակառուցման արդյունքները, ձեռք բերած դրական տեղաշարժերը: Դրանց ամրապնդման, վերակառուցմանը կայուն և անդառնալի բնույթ հաղորդելու գործում խթանիչ դեր ունի կատարելու գիտությունը: Անհրաժեշտ է գտնել կյանքի հետ հասարակական գիտությունների կապի ամրապնդման այնպիսի միջոցներ, որոնք շարժման մեջ դնեն առաջադրված խնդիրների լուծումը խթանող բոլոր գործոն լծակները:

---

# ԱՄՐԱՊՆԴԵԼ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅՈՒՆԸ, ԸՆԴԼԱՅՆԵԼ ՄՇԱԿՈՒԹԱՅԻՆ ԿԱՊԵՐԸ

**Նորա ՀԱԿՈԲՅԱՆ**
**Արտասահմանյան երկրների հետ բարեկամության և մշակութային կապի հայկական ընկերության նախագահ**

ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԲԱՐԴ ԻՐԱԴՐՈՒԹՅԱՆ ներկա պայմաններում ՍՄԿԿ-ն և սովետական կառավարությունը հետևողականորեն պայքարում են միջազգային հարաբերությունների բեկման, կայուն խաղաղության հաստատման համար: Սովետական արտաքին քաղաքականության հետևողականությունը վերստին հավաստեց ՍՄԿԿ XXVII համագումարը: «Սոցիալիզմն անվերապահորեն մերժում է պատերազմները որպես միջպետական քաղաքական և տնտեսական հակասությունների, գաղափարախոսական վեճերի լուծման միջոց: Մեր իդեալը զենքից և բռնությունից զերծ աշխարհն է, աշխարհ, որտեղ յուրաքանչյուր ժողովուրդ ազատորեն ընտրում է իր զարգացման ուղին, իր ապրելակերպը»,— համագումարում հայտարարեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Մ. Ս. Գորբաչովը:

Կայուն և հուսալի խաղաղությունը ենթադրում է ժողովուրդների միջև թշնամության, երկպառակության ու անվստահության վերացում: Այն պահանջում է բարիդրացիական և բարեկամական հարաբերությունների ամրապնդման քրտնաջան աշխատանք: Վ. Ի. Լենինը նշել է, որ առանց տարբեր լեզուներով խոսող մարդկանց փոխադարձ վստահության «...անհնարին են թե՛ ժողովուրդների խաղաղ հարաբերությունները և թե փոքրիշատե հաջող զարգացումն այն ամենի, ինչ արժեքավոր է արդի քաղաքակրթության մեջ» (**ԵԼԺ**, հ. 45, էջ 286):

Սովետական մարդիկ ժողովուրդների մշակութային փոխանակությունը և բազմաբնույթ կապերը դիտարկում են միջազգային փոխադարձ վստահության մթնոլորտի ստեղծման տեսանկյունից, որը հույժ անհրաժեշտ է կայուն խաղաղության համար: Այդ ամենի նշանակությունն արդի պայմաններում աճել է, քանի որ իմպերիալիզմի կողմից պարտադրված լարվածության, սպառազինությունների մրցավազքի, «հոգեբանական պատերազմի» քաղաքականությունը հրատապ է դարձրել ժողովուրդների միջև վստահության ամրապնդման հարցը:

Սակայն վստահությունը երկրների և ժողովուրդների, ինչպես նաև մարդկանց միջև ինքնին չի ստեղծվում: Այստեղ անհրաժեշտ են ոչ միայն քաղաքական գործիչների, այլև ողջ հասարակայնության միացյալ ջանքերը: Իրավահավասար, արգասավոր երկխոսություն է ծնվում այն ժամանակ, երբ առկա է ինֆորմացիայի, գիտելիքների, գաղափարների աշխույժ փոխանակություն, երբ ժողովուրդները հնարավորություն ունեն մոտիկից ծանոթանալու մեկմեկու պատմությանը, մշակույթին, ավանդույթներին, ներկային: Այս կարևոր և վսեմ առաքելությունն են ստանձնել արտասահմանյան երկրների հետ բարեկամության և մշակութային կապի ընկերությունները և արտասահմանում գործող նմանատիպ կազմակերպությունները: ՍՍՀՄ-ում դրանց գործունեությունը միավորում է բարեկամության սովետական ընկերությունների միությունը: Այն ստեղծվել է 1958 թվականին՝ դեռևս 1925 թվականին հիմնված արտասահմանի հետ մշակութային կապի համամիութենական ընկերության բազայի վրա: Իր գործունեության հենց սկզբից նա հանդես է գալիս նաև որպես խաղաղասեր ուժերի շարժման առավել ակտիվ կազմակերպություններից մեկը: Այսօր, երբ հակապատերազմական պայքարն աշխարհում աննախադեպ չափերի

գասկարում, Սիրիայում, ԳՖՀ-ում, ԱՄՆ-ում, Հոլանդիայում, Լիբանանում, Ճապոնիայում, Հնդկաստանում, Կանադայում և այլուր: Նման միջոցառումների մասնակից Սովետական Հայաստանի ներկայացուցիչները բազում հանդիպումներ են ունեցել արտասահմանյան հասարակայնության հետ, պատմել մեր հանրապետության առօրյայի մասին, մտքեր փոխանակել միջազգային հարցերի շուրջ, լուսաբանել սովետական արտաքին քաղաքականության էությունը:

Ավանդաբար ՍՍՀՄ օրերի ընթացքում իրականացվում է բազմազան և հագեցված մշակութային ծրագիր՝ համերգներ, ցուցահանդեսներ, կինոցուցադրումներ, ստեղծագործական երեկոներ: Տասնյակ հազարավոր մարդիկ արտասահմանում, նրանցից շատերը հավանաբար առաջին անգամ, հնարավորություն են ստանում ծանոթանալու մեր կերպարվեստի գլուխգործոցներին, պրոֆեսիոնալ և ինքնագործ լավագույն կոլեկտիվների արվեստին:

Մեր առաքելությունն արտասահմանում սոսկ կուլտուրական միջոցառումներով չի սահմանափակվում: Այն նաև արտասահմանյան հասարակայնությանը մեր իրականությանը, մեր բարոյականությանը, ժողովուրդների փոխհարաբերությունների մեր ըմբռնումներին ծանոթացնելու նպատակ է հետապնդում: Եվ պատահական չէ, որ արտասահմանյան հասարակայնության հետ ունեցած մեր ամեն հանդիպումից հետո աճում է Սովետական Հայաստանի բարեկամների թիվը:

Հարկ է նշել, որ հատկապես կուսակցության XXVII համագումարից հետո արտասահմանյան հյուրերի շրջանում նկատվում է հետաքրքրության խիստ բարձրացում մեր ներքին կյանքի, երկրում իրականացվող սոցիալ-տնտեսական վերակառուցման պրոցեսի նկատմամբ: Այս իրողությունը մենք չենք կարող հաշվի չառնել: Ժամանակը պահանջում է էկոնոմիկայի ոլորտը ևս պատշաճ ձևով ընդգրկել մեր գործունեության մեջ: Կուսակցության մշակած կուրսը պարզաբանելու հետ մեկտեղ այսօր հույժ կարևոր է մեր փաստարկումներն ամրապնդել այնպիսի օբյեկտների ցուցադրումով, որտեղ կարելի է, ինչպես ասում են, «շոշափել» վերակառուցումը, որտեղ կան արագացման սկսված պրոցեսի արդյունքներն ու հեռանկարները հրատակորեն և համոզիչ կերպով ներկայացնելու հնարավորություններ:

Տարբեր երկրների հասարակայնության կապերը երկկողմանի երթևեկությամբ փողոց են հիշեցնում: Այդ իսկ պատճառով արտասահմանյան հյուրերի ընդունումը, հանրապետությունում համատեղ միջոցառումների կազմակերպումը մեր գործունեության կարևորագույն խնդիրներից են: Յոթանասունական թվականների համեմատությամբ այդ աշխատանքի ծավալն աճել է երեք անգամ: Ամեն տարի ընկերությունը հյուրընկալում է քառասունից ավելի արտասահմանյան պատվիրակություն: Վերջին երեք տարում Հայաստանում կազմակերպվել են Իսպանիայի, ԳՖՀ-ի Հեսսեն երկրի (լանդի), Լիբիայի, Պորտուգալիայի օրեր:

Լավագույն փաստարկը հօգուտ մեր այն համոզմունքի, որ մենք կողմնակից ենք ազնիվ ու իրավահավասար մշակութային փոխանակության և մեր դռները չենք փակում արտասահմանյան հասարակայնության առջև, ինչպես երբեմն ներկայացնում են Արևմուտքում, դարձան Հեսսենի օրերը Հայաստանում: Ի դեպ, այդ միջոցառման միայն արևմտագերմանական կողմի մասնակիցների թիվը հասնում էր 280 մարդու:

Հանրապետության գիտական-մշակութային բարձր մակարդակը թույլ տվեց Հայաստանում կազմակերպել մի շարք կոնֆերանսներ, «կլոր սեղանի» շուրջը հանդիպումներ, գիտաժողովներ՝ արտասահմանյան ներկայացուցիչների մասնակցությամբ: Վերջին նմանօրինակ միջոցառումը 1985 թվականի աշնանը Երևանում կայացած Եվրոպական մշակութային ընկերության գործադիր կոմիտեի նիստն էր:

Արտասահմանյան հյուրերից շատերը մեր հանրապետությունում լինում են առաջին անգամ, և նրանց գերակշռող մասի պատկերացումները Հայաստանի մասին պատմաազգագրական բնույթ են կրում: Այդ իսկ պատճառով մենք ձգտում ենք մեր հյուրերի այցելությունը կազմակերպել այնպես, որ նրանք հնարավորություն ունենան ճանաչելու և ըմբռնելու ժամանակակից Սովետական Հայաստանի իրականությունը: Այդ ծանոթությունը չափազանց ընդգրկուն է՝ սկսած կոլտնտեսականի ընտանիք կատարած այցից մինչև հանրապետության Գերագույն սովետում կայացած զրույցը:



Հայաստան են ժամանում բազմաթիվ տուրիստական խմբեր, որոնց անդամները իրենց երկրներում գործող Սովետական Միության հետ բարեկամության ընկերության ակտիվիստներ են: Նրանց համար մենք հանդիպումներ ենք կազմակերպում աշխատավորության հետ: Բարեկամության հայկական ընկերությանը կից գործում է մշտական լեկտորիում՝ Հայաստանին նվիրված զրույցների հարուստ թեմատիկայով: Մեր ակտիվիստները հյուրերի համար «կլոր սեղանի շուրջը» նրանց մայրենի լեզվով զրույցներ են անցկացնում, կազմակերպում հանդիպումներ, կինոդիտումներ, համերգներ, բարեկամության երեկոներ: Ամեն տարի մենք ընդունում ենք բարեկամության արտասահմանյան ընկերությունների ավելի քան երեք հազար ակտիվիստների:

Արտասահմանյան հյուրերը Հայաստանի մասին բազմիցս գովեստի ու գնահատանքի խոսքեր են ասել: Նրանց մեջ քիչ չեն կապիտալիստական երկրների ներկայացուցիչները, որոնցից շատերը մեծագույն հարգանքով են նշում մեր հանրապետության աննախադեպ վերելքը: Ահա թե ինչ է գրել ԳՖՀ-ի Հեսսեն երկրի պրեմիեր-մինիստրի տեղակալ, ֆինանսների մինիստր Հանս Կրոլմանը. «Ես լավ ծանոթ եմ Հայաստանի պատմությանն ու մշակույթին և ուրախ եմ, որ տեսածից ու լսածից ստացած տպավորությունները չխաբեցին իմ սպասելիքները: Ես հիացած եմ Հայաստանի այսօրվա հրաշալի վերածնունդով: Հազիվ թե որևէ մեկն այսօր կարող է անտարբեր մնալ ձեր հանրապետության նվաճումների նկատմամբ»: Իսկ Կոպենհագենի համալսարանի դասախոս Բիրգիտ Օլսենը Հայաստան այցելելուց հետո իր տպավորություններն արտահայտել է այսպես. «Երբ գալիս էի ձեր երկիր, ինձ թվում էր, որ ես այնտեղ կտեսնեմ իր դժվարին ճանապարհից հոգնած, անցյալ կորուստների ծանրության տակ կքած մի ժողովրդի: Ես այդպես էի կարծում՝ ծանոթ լինելով սոսկ ձեր պատմությանը: Բայց, գալով Հայաստան, զարմանքով և, իհարկե, հիացմունքով տեսա սիրալիր, հյուրասեր և կենսուրախ, ուժով ու եռանդով, ապրելու և արարելու ցանկությամբ լի ժողովրդի, որը պահպանել է իր ինքնատիպությունն ու ազգային ավանդույթները: Ձեզ մոտ սահմանադրորեն ստեղծված են այնպիսի պայմաններ, որոնք ապահովում են ցանկացած ժողովրդի, ցանկացած ազգի ազատ զարգացումը»:

Կուսակցության XXVII համագումարում նշվեց, որ աշխատանքում վերակառուցումն անիմաստ է առանց մեր մտածողության վերակառուցման: Մենք պետք է սովորենք բացեիբաց, անկաշկանդ և, բնականաբար, առանց հուշաթերթիկի երկխոսություն վարել արտասահմանյան ընդդիմախոսների հետ: Այլ կերպ համաշխարհային հասարակական կարծիքի վրա ներգործելու, մարդկանց մտքերի համար մղվող պայքարում հաջողության չենք հասնի:

Մեր առջև նոր սրությամբ է ծառանում բարձր որակավորում ունեցող դասախոսների, պրոպագանդիստների, տարբեր բնագավառների մասնագետների ընտրության և արտասահման ուղարկելու հարցը: Սա դյուրին խնդիր չէ, եթե նկատի ունենանք, որ այսօր պահանջվում է նոր մակարդակի բարձրացնել արտասահմանյան լսարանի հետ տարվող մեր ամբողջ աշխատանքը: Ահա այդ աշխատանքի սոսկ մեկ ոլորտը: Հայտնի է, որ վերջին տարիներին բարեկամության ընկերությունների գործունեության մեջ բացառիկ կարևոր տեղ են գրավում բժիշկների ու իրավաբանների երկկողմ հանդիպումները: Բնական է, որ այդպիսի խմբերի մեջ պետք է ընդգրկվեն օտար լեզուների տիրապետող մարդիկ: Բայց եթե բժշկական աշխատողների ընտրությունն ինչ-որ կերպ կատարում ենք, ապա իրավաբանների հարցում դա չենք կարող ասել: Պետք է խոստովանել, որ մեր մասնագիտական սեկցիաները, ցավոք, չեն դարձել մեզ այնքան անհրաժեշտ մարդկանց պատրաստման դարբնոց: Մեր ոլորտում աշխատելու համար հատուկ պատրաստված կադրերի առկա դեֆիցիտի պայմաններում, որ զգացվում է տարիներ շարունակ, ընկերության երիտասարդական սեկցիան կարող էր դառնալ ամենատարբեր մասնագիտությունների մարդկանց ընտրության և պատրաստման լավագույն բազա՝ դրանով իսկ բարելավելով ընկերության պահանջները: Հետևապես, անհրաժեշտություն է առաջացել երիտասարդության հետ աշխատել ուսանողական տարիներից, նրա մեջ մեր գործունեության նկատմամբ հետաքրքրություն առաջացնել, ավելի ակտիվորեն խթանել օտար լեզուների ակումբների ստեղծումը՝ նրանց աշխատանքն ուղղելով մեզ

պետքական հունով: Այս գործում մենք ակնկալում ենք նաև հանրապետության ակադեմիական ինստիտուտների, բուհերի, հասարակագիտական ամբիոնների, ճյուղային գիտահետազոտական ինստիտուտների աջակցությունը՝ արտասահմանյան երկրների լսարաններում հանդես գալու համար նոր, կարող ուժեր տրամադրելու առումով: Անշուշտ, նշված ասպարեզում մեր աշխատանքի ծավալը տարեցտարի աճում է, խնդիրները բարդանում են, պահանջները՝ բարձրանում:

Ընթացիկ հոբելյանական տարում Սովետական Հայաստանը ՍՍՀՄ-ը ներկայացնելու է Ավստրալիայում, Իտալիայում, Շվեդիայում, Իսպանիայում, Լիբանանում, Եթովպիայում, Ֆիլիպիններում, ինչպես նաև հանրապետության հասարակայնության ներկայացուցիչներից կազմված հատուկ տուրիստական խումբ է մեկնելու Ավստրիա: Երկրների ընդգրկմամբ, միջոցառումների մասշտաբով նշանակալի այս աշխատանքը պահանջում է մեր բազմահազար ակտիվիստների, բարեկամության հայկական ընկերության ամբողջ կոլեկտիվի ուժերի մոբիլիզացում: Մենք քաջ գիտակցում ենք, որ առաջիկայում անցկացվելիք միջոցառումները թելադրում են որակական նոր աստիճանի բարձրացնել մեր կապերը ՀԱՄԽ-ի, ՀԼԿԵՄ Կենտկոմի, կուլտուրայի մինիստրության, գիտությունների ակադեմիայի, ստեղծագործական միությունների և հանրապետական մի շարք գերատեսչությունների հետ:

Աշխատանքի փորձը թելադրում է համագործակցության նոր ձևեր: Այսպես, Շվեդիայում Հայկական ՍՍՀ-ի մասնակցությամբ Սովետական Միության օրեր անցկացնելու համար ընտրվել է «Սովետական Հայաստանի երիտասարդությունը. նվաճումներ, պրոբլեմներ, հեռանկարներ» նշանաբանը: Այս միջոցառումը պատրաստվում է ՀԼԿԵՄ Կենտկոմի հետ համատեղ: Ի դեպ, օրերի այդ թեմատիկայի ընտրությունը պատահական չէ: Մենք լավ գիտենք երիտասարդության սոցիալական պրոբլեմները Եվրոպայի կապիտալիստական երկրներում և այդ ֆոնի վրա մեր հանրապետության օրինակով երիտասարդության կյանքի մասին ցուցադրելու և պատմելու շատ բան ունենք: Դրա հետ մեկտեղ, նման միջոցառումները հետապնդում են մի նպատակ ևս. նպաստել ՍՍՀՄ-ի հետ բարեկամության արտասահմանյան ընկերությունների մասսայական բազայի ընդլայնմանը, նրանց աշխատանքում ընդգրկել նոր, երիտասարդ ուժեր: Լիբանանում և Ավստրալիայում ՍՍՀՄ-ի օրերը նախատեսված է անցկացնել սփյուռքահայության հետ մշակութային կապի կոմիտեի մասնակցությամբ: Ավստրիա կուղարկվի մեր ակտիվիստների և գիտնականների խումբ, իսկ միջոցառումների ամբողջ ծրագիրը նախատեսված է պատրաստել հանրապետության գիտությունների ակադեմիայի նախագահության հետ միասին: Եթովպիայում խոշոր կոմպլեքսային միջոցառումները կանցնեն Լենինականի օրինակով:

Հանրապետությունն արտասահմանում ներկայացնելով՝ մշտապես հիշում ենք, որ մեզ վստահված է վեհ առաքելություն. չկորցնելով ազգային ինքնատիպությունը՝ ներկայացնել մեր մեծ հայրենիքը, նրա եղբայրական ժողովուրդների անխախտ ընտանիքը, հանդես գալ որպես միասնական, միաձույլ սովետական հասարակության ներկայացուցիչ:

Առաջադրված խնդիրների կենսագործման համար, անկասկած, անհրաժեշտ է նպատակասլաց աշխատանք: Կուսակցության XXVII համագումարը պահանջեց կատարելագործել գաղափարախոսական, պրոպագանդիստական աշխատանքի ձևերն ու մեթոդները, դրանք շաղկապել օրվա անմիջական խնդիրների հետ: Մեր աշխատանքի հետագա բարելավման և, առաջին հերթին, արտասահմանում բարեկամության հայկական ընկերության կողմից անցկացվող միջոցառումների քաղաքական արդյունավետության բարձրացման մասին նշվեց նաև Հայաստանի կոմկուսի XXVIII համագումարում, Կենտկոմի 1986 թվականի հոկտեմբերին կայացած պլենումում: Այդ պահանջները մեզ համար դարձել են ուղենիշ և գործնական աշխատանքի հիմնաքար:

Ընկերության վարչության վերջերս կայացած հինգերորդ կոնֆերանսում նոր պահանջների ոգով սահմանել ենք մեր առաջնահերթ խնդիրները, նշել դրանց լուծման կոնկրետ ուղիները: Դրանք նպատակամղված են բարձրացնելու հանրապետության հասարակայնության արտասահմանյան կապերի արդյունավետությունը, արտասահմանյան երկրների բնակչության լայն խավերին պարզ ու հասկանալի դարձնելու մեր երկրի խաղաղասիրական քաղաքականությունը:

---

# ԻՐԱՎՈՒՆՔԸ ԵՎ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՄԵԽԱՆԻԶՄԻ ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾՈՒՄԸ

**Կ. ԱՂԲԱՇՅԱՆ**
**Իրավաբանական գիտությունների թեկնածու**

ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԱՐԴԻ ՓՈՒԼԸ բնութագրող արտադրողական ուժերի որակական խոր փոփոխությունները և դրանց համապատասխան արտադրական հարաբերությունների կատարելագործումը պահանջում են հիմնավորապես բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը: Արտադրական հարաբերությունների կատարելագործման ուղին գիտատեխնիկական հեղափոխության նվաճումների հետ սոցիալիստական հասարակարգի առավելությունների զուգակցումն է, էկոնոմիկայի ինտենսիվ զարգացմանն անցնելը, պլանավորումն ու կառավարումը արմատապես բարելավելը:

Ժողովրդատնտեսական խնդիրների հաջող լուծման կարևոր գործոն է տնտեսական մեխանիզմի կատարելագործումը: Կոմունիստական շինարարության բոլոր փուլերում ՍՄԿԿ-ն մեծ ուշադրություն է նվիրել այդ հարցին: Դա լիովին համապատասխանում է արտադրության հասարակական բնույթի մասին մարքս-լենինյան ուսմունքին: Կ. Մարքսը նշում էր, որ «Համեմատաբար խոշոր չափերով կատարվող անմիջաբար հասարակական կամ համատեղ ամեն մի աշխատանք ավելի կամ պակաս չափով կարիք ունի կառավարման, որը ներդաշնակություն է սահմանում անհատական աշխատանքների միջև և կատարում է այն ընդհանուր ֆունկցիաները, որոնք ծագում են արտադրական ամբողջ մարմնի շարժումից՝ ի տարբերություն նրա ինքնուրույն օրգանների շարժման: Առանձին ջութակահարը ինքն է ղեկավարում իրեն, նվագախումբը կարիք ունի դիրիժորի» (Կ. Մարքս, **Կապիտալ,** հ. 1, գիրք 1, 1954, էջ 348): Ելնելով մարքսիզմ-լենինիզմի տեսական դրույթներից, ՍՄԿԿ XXVII համագումարը տնտեսական մեխանիզմի կատարելագործման կարևոր խնդիրներ առաջադրեց: Ինչպես նշված է ՍՄԿԿ Կենտկոմի Քաղաքական զեկուցման մեջ, անհրաժեշտ է, «որ մեր ամբողջ արտադրությունը գործնականորեն ենթարկենք հասարակական պահանջմունքներին, մարդկանց կարիքների բավարարմանը, կառավարումը նպատակամղենք արդյունավետության և որակի բարձրացմանը, գիտատեխնիկական առաջադիմության արագացմանը, ժողովրդական տնտեսության յուրաքանչյուր օղակում և առաջին հերթին աշխատավորական կոլեկտիվներում աշխատանքի արդյունքներով՝ աշխատողների շահագրգռվածության, նախաձեռնության և սոցիալիստական ձեռներեցության զարգացմանը» (**ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը,** էջ 46): Համագումարն անհրաժեշտ համարեց վերակառուցել կառավարումն ու տնտեսավարումը, դրանք նպատակամղել դեպի վերջնական արդյունքները, խստորեն պահպանել կատարողական կարգապահությունը և տնտեսական օրենսդրության նորմերը:

Իր էությամբ տնտեսագիտական, կազմակերպական-իրավական այս խնդիրը ծնունդ է առել բուն մեխանիզմի արտասովոր բարդությունից և հսկայական մասշտաբներից, նրա գործունեության ծախքերից և հակասություններից, այն պրոբլեմներից, որոնք դրա օգնությամբ չի հաջողվել լուծել կամ լուծվել են ոչ լրիվ: Ուստի տնտեսական մեխանիզմի բարեփոխումները չեն կարող սահմանափակվել միայն այս կամ այն մակարդակի կամ շերտի, առանձին վերցված ֆունկցիայի, կառուցված-

քային կազմավորումների գործունեության բարելավմամբ: Չի կարելի բավարար համարել այդ մեխանիզմի տարրերի, լծակների և այլ բաղադրիչների մասնակի փոփոխությունները: Անհրաժեշտ է, չհրաժարվելով ընթացիկ, մասնակի և առանձին կատարելագործումներից, առաջնությունը տալ նրա հեռանկարային, ընդհանուր և կոմպլեքսային վերակառուցմանը, պլանավորված և համակողմանի կատարելագործմանը: Նման պայմաններում զգալիորեն բարձրանում է պահանջկոտությունը տնտեսական հարաբերությունների իրավական կարգավորման արդյունավետության նկատմամբ:

Մեր երկրում տնտեսական գործունեության ղեկավարումը և դրա բուն ընթացքը իրականացվում է իրավունքի նորմերին համապատասխան: Այդ նորմերի հրատարակումը, իրավական նորմատիվ կարգավորումը ժողովրդական տնտեսության ղեկավարման յուրօրինակ ձև են, որոնց նշանակությունը սոցիալիզմի օրոք խիստ մեծանում է, քանի որ տնտեսական գործունեության թե՛ կառավարումը, թե՛ պլանավորումը և թե հսկողությունը պետք է իրականացվեն օրենսդրությանը համապատասխան: Այդ իմաստով տնտեսական հարաբերությունների իրավական նորմատիվ կարգավորումը էկոնոմիկայի ղեկավարման հիմնական ձևն է:

Արդի պայմաններում էապես մեծանում է տնտեսական հարաբերությունների իրավական կարգավորման նշանակությունը: Կուսակցությունը խնդիր է դրել ժողովրդական տնտեսության մեջ ապահովել կազմակերպվածություն ու կարգապահություն: Ուստի մեծ ուշադրություն է դարձվում տնտեսական օրենսդրության կատարելագործմանը, սոցիալիստական էկոնոմիկայի իրավական կարգավորման բարելավմանը:

Դեռևս ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի 1975 թ. հունիսի 25-ի որոշման մեջ ուշադրություն է հրավիրվել տնտեսական օրենսդրության էական թերությունների առկայության վրա և նշվել դրա հետագա կատարելագործման անհրաժեշտությունը: Որոշմամբ սահմանված են այն խնդիրները, որոնք պետք է լուծի տնտեսական օրենսդրությունը: Դրանք են՝ տնտեսական մեխանիզմի բոլոր օղակների հստակ գործունեության ապահովումը, ժողովրդական տնտեսության կառավարման բոլոր մակարդակներում իրավունքների և պատասխանատվության ճիշտ զուգակցումը, մինիստրությունների և գերատեսչությունների, ինչպես նաև միավորումների, ձեռնարկությունների նախաձեռնության ըստ ամենայնի զարգացումը, տնտհաշվարկային հարաբերությունների ընդլայնումը, տնտեսական պայմանագրի դերի բարձրացումը, սոցիալիստական օրինականության և պետական կարգապահության հետագա ամրապնդումը:

Այդ որոշումն ընդունելուց հետո զգալի աշխատանք է կատարվել տնտեսական օրենսդրության համակարգման ուղղությամբ: ՍՍՀՄ սահմանադրությունը ամրապնդել է էկոնոմիկայի ղեկավարման հիմնական սկզբունքները: ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը կարևոր որոշումներ են ընդունել արտադրության արդյունավետության բարձրացման վրա տնտեսական մեխանիզմի ներգործությունն ուժեղացնելու, տրանսպորտի, շինարարության, ագրոարդյունաբերական կոմպլեքսի, մեքենաշինության բնագավառների աշխատանքը բարելավելու մասին: Նոր կանոնակարգեր են հրատարակվել արտադրատեխնիկական նշանակության արտադրանքի և ժողովրդական սպառման ապրանքների, ինչպես նաև գյուղատնտեսական մատակարարումների մասին: Արբիտրաժի մասին ընդունվել է նոր օրենսդրություն, որն էապես բարձրացրել է նրա դերը ժողովրդական տնտեսության մեջ: Հրատարակվում են ՍՍՀՄ և Հայկական ՍՍՀ օրենքների հավաքածուներ, որոնց կառուցվածքային բաժիններից մեկն է ժողովրդական տնտեսության վերաբերյալ օրենսդրությունը:

Այնուամենայնիվ, գործող տնտեսական օրենսդրությունը դեռևս լիովին չի համապատասխանում տնտեսական մեխանիզմի արմատական բարելավման խնդիրներին: «Մեր օրենսդրությունը՝ քաղաքացիական և աշխատանքային, ֆինանսական և վարչական, տնտեսական և քրեական, պետք է ավելի ակտիվորեն օգնի կառավարման տնտեսագիտական մեթոդների ներդրմանը, աշխատանքի և սպառման չափի գործում վերահսկողությանը, սոցիալական արդարության սկզբունքների կենսագործմանը» (**ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը,** էջ 86);



Արտադրության ինտենսիվացումը, մասնագիտացման և կոոպերացման բազայի վրա նրա համակենտրոնացումը, էկոնոմիկայի ղեկավարման ճյուղային և տերիտորիալ սկզբունքների փոխներգործության ուժեղացումը պայմանավորեցին ժողովրդական տնտեսությունում կազմակերպչական նոր ձևերի՝ ագրոարդյունաբերական միավորումների և տերիտորիալ-արտադրական համալիրների ստեղծումը: Ձևավորվել են միասնական համակարգեր՝ տրանսպորտային, էներգետիկ և այլն: Սակայն այդ համալիրների ստատուսը դեռևս պատշաճ իրավական հիմնավորում չի ստացել: Չեն մշակվել արտադրական և ապրանքային ռեսուրսների բաշխման պլաններ կազմելու վրա պայմանագրի ներգործության իրավական արդյունավետ ձևեր, որոնք անհրաժեշտ են դրանց հիմնավորվածությունն ու կայունությունը ամրապնդելու, նյութական բարիքներ արտադրողների իրավունքներն ընդլայնելու համար:

Տնտեսական օրենսդրությունը դեռևս չի վերածվել միասնական հստակ համակարգի, միևնույն հարցերը լուծվում են տարբեր որոշումներով և գերատեսչական տարաբնույթ նորմատիվ ակտերով: Չնայած վերջին շրջանում նորմատիվ տնտեսությունը նկատելիորեն կարգավորվել է, սակայն որոշ գերատեսչություններ շարունակում են ընդունել այնպիսի ակտեր, որոնք երբեմն հակասում են օրենսդրությանը: Դրա հետևանքով նորմատիվ փաստաթղթերը դեռևս մեծածավալ են: Գերատեսչական այդպիսի ակտերի հսկայական թիվը հանգեցնում է ոչ միայն տնտեսական օրենսդրության համակարգի բարդացմանը, այլև ձեռնարկությունների ու միավորումների իրավունքների սահմանափակմանը: Մինչդեռ ՍՄԿԿ XXVII համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի պլենումների որոշումներում բազմիցս ընդգծվել է ձեռնարկությունների և միավորումների ինքնուրույնության ընդլայնման, նրանց գործունեությունում սոցիալիստական ձեռներեցության զարգացման անհրաժեշտությունը: Այդ պահանջների իրականացումը ենթադրում է ձեռնարկություններին օժտել տնտեսական լայն իրավունքներով: 1983 թ. հունիսի 14-ին ընդունվել է ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշումը՝ «Տնտեսական գործունեությունը պլանավորելիս արտադրական միավորումների (ձեռնարկությունների) իրավունքները ընդլայնելու և աշխատանքի արդյունքների համար նրանց պատասխանատվությունը ուժեղացնելու ուղղությամբ լրացուցիչ միջոցառումների մասին» (СП СССР, 1983, № 20, ст. 109):

Այստեղ տեղին է անդրադառնալ ձեռնարկությունների և միավորումների տնտեսական ինքնուրույնության, նախաձեռնության և սոցիալիստական ձեռներեցության իրավաբանական ապահովման հարցերին: Այլ կերպ ասած՝ ինչ պետք է անել, որպեսզի ստեղծվեն հանրային արտադրության արդյունավետության բարձրացմանը նպաստող իրավաբանական պայմաններ: Նախ պետք է բարելավել տնտեսական օրենսդրության ընդհանուր վիճակը: Ընդսմին, բավարար չէ առանձին որոշումներ ընդունել այս կամ այն հարցի առթիվ, անհրաժեշտ է ապահովել ամբողջ տնտեսական օրենսդրության հստակ գործունեությունը այն բազմաբնույթ և երբեմն էլ տնտեսական բարդ կապերի պայմաններում, որոնք ստեղծվում են տնտեսական մեխանիզմի օղակների միջև հորիզոնական և ուղղահայաց գծերով:

Սոցիալիստական օրինականության խստիվ պահպանումը ամբողջ տնտեսական մեխանիզմի գործունեության կարևոր պայմանն է: Ուստի էկոնոմիկայի բնագավառի օրենսդրության կոդիֆիկացումը և դրա հիման վրա առանցքային ակտի՝ ՍՍՀՄ տնտեսական օրենսգրքի ընդունումը կամրապնդի սոցիալիստական տնտեսավարման առավել ընդհանուր և կարևոր կանոնները, երկրի միասնական ժողովրդատնտեսական կոմպլեքսի ղեկավարման սկզբունքները, ձևերն ու մեթոդները: Դրան կնպաստի նաև ժողովրդական տնտեսության որոշակի ճյուղերի և ոլորտների վերաբերյալ օրինագծերի ընդունումը:

Տնտեսական մեխանիզմի կատարելագործման համար կարևոր նշանակություն ունի գիտատեխնիկական առաջադիմությունը: Այս բնագավառում ձևավորվում և հետզհետե ավելի լայն զարգացում է ստանում նոր տեխնիկայի ստեղծման ու ներդրման տնտհաշվարկային սիստեմը, որն իրացվում է արդյունաբերական շատ մինիստրություններում և լավ արդյունքներ է տալիս: «Ժողովրդական տնտեսության մեջ գիտատեխնիկական առաջադիմությունն արագացնելու միջոցառումների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի 1983 թ. օգոստոսի 18-ի որոշ-

մամբ նախատեսվել է նոր տեխնիկայի ստեղծման ու ներդրման տնտհաշվարկային կարգը տարածել ոչ միայն արդյունաբերության, այլև գյուղատնտեսության, շինարարության, տրանսպորտի, կապի բնագավառի, նյութատեխնիկական մատակարարման, երկրաբանական-հետախուզական աշխատանքների վրա: Այսպիսով, դա վեր է ածվում էկոնոմիկայում գիտատեխնիկական առաջադիմության կազմակերպման ընդհանուր համակարգի:

Տնտեսական մեխանիզմի կատարելագործման կարևոր տարրեր են ժողովրդատնտեսական պլանավորման մակարդակի բարձրացումը, հիմնավորվածության և հաշվեկշռվածության ապահովումը, ճյուղային և տերիտորիալ պլանավորման զուգակցումը, որպես մեկ միասնություն՝ արդյունաբերության և կապիտալ շինարարության, արդյունաբերության և տրանսպորտային համակարգի, ագրոարդյունաբերական համալիրի զարգացման գիտականորեն հիմնավորված չափանիշների մշակումը: Վերջին տարիներին այստեղ նկատվում են նոր միտումներ. պլանավորումը գնալով կողմնորոշվում է դեպի ժողովրդատնտեսական վերջնական արդյունքները: Սակայն մինչև վերջ մշակված չէ պլանավորման իրավաբանական մեխանիզմը. թեպետ օրենսդրությամբ նախատեսված են պլանային ցուցանիշներ և նորմատիվներ, դրանց իրական պահպանման իրավաբանական երաշխիքներ չկան: Տնտեսական ղեկավարման մարմինները ձեռնարկությունների և միավորումների համար երբեմն հաստատում են չնախատեսված ցուցանիշներ, խախտում են պլանների փոփոխման կարգը՝ դրա համար չկրելով որևէ պատասխանատվություն: Հետևաբար, անհրաժեշտ է օրենսդրությամբ նախատեսված պլանային ցուցանիշների և նորմատիվների ռեալ պահպանման իրավաբանական հստակ երաշխիքներ սահմանել, միջոցներ ձեռնարկել պլանային գործունեության մեջ օրինականությունն ապահովելու ուղղությամբ: Դա հնարավորություն կընձեռի ստեղծել սոցիալիստական տնտեսավարման կայուն պայմաններ, որոնք անհրաժեշտ են արտադրության արդյունավետության բարձրացման խնդիրների լուծման համար: Այս նպատակով իրավագետները մշակում են նոր օրենք, որը միասնական համակարգի կվերածի պլանավորման մասին ամբողջ օրենսդրությունը:

Ժողովրդական տնտեսության հարակից ճյուղերի գործունեության կոորդինացման հետագա բարելավման համար կարևոր նշանակություն ունի տնտեսական ղեկավարման ֆունկցիոնալ մարմինների՝ պետպլանի, պետմատի, գների պետկոմի, պետստանդարտի և մյուս այն կազմակերպությունների աշխատանքի կարգավորումը, որոնք ղեկավարում են գործունեության ֆունկցիոնալ ձևերը և նպաստում ժողովրդական տնտեսության ճյուղերի առավել հստակ կոորդինացմանը:

Հատուկ ուշադրություն է պահանջում հանրային արտադրության հիմնական օղակում՝ ձեռնարկություններում (միավորումներում) տնտեսական մեխանիզմի կոմպլեքսային կատարելագործումը, որը հնարավորություն կընձեռի առավել հետևողականորեն իրացնել դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքները: Ձեռնարկությունները, արտադրական և գիտաարտադրական միավորումները անհրաժեշտ է վերածել արդի բարձր կազմակերպված բջիջների, որոնք գործում են լիակատար տնտհաշվարկի հիման վրա, ընդունակ են լայն շրջանակի ֆունկցիաներ իրականացնել արտադրության պլանավորման և կառավարման, գիտատեխնիկական կատարելագործման, աշխատավորական կոլեկտիվների սոցիալական զարգացման բնագավառում: Ավարտին է մոտենում սոցիալիստական ձեռնարկության (միավորման) մասին նոր օրենքի մշակումը, որն իրավաբանորեն կամրապնդի տնտեսավարման մեթոդները վերակառուցելու, արտադրական կոլեկտիվները մանրախնդիր խնամակալությունից և վարչարարությունից զերծ պահելու գիծը:

Ձեռնարկությունների դերի բարձրացումը, նրանց ինքնուրույնության ընդլայնումը, նյութական շահագրգռվածության և պատասխանատվության ուժեղացումը պետք է շաղկապվեն արտադրության կառավարման, դրա արդյունավետության բարձրացման գործում աշխատանքային կոլեկտիվների մասնակցության ակտիվացման հետ: ՍՍՀՄ Գերագույն սովետի ընդունած՝ Աշխատավորական կոլեկտիվների և ձեռնարկությունների, հիմնարկների, կազմակերպությունների կառավարման գործում նրանց դերի բարձրացման մասին ՍՍՀՄ օրենքը առաջադրում է տնտեսավարման կոլեկտիվ սուբյեկտի տեսության հետագա մշակման խնդիրը:



Պատասխանատվության դերի և նշանակության բարձրացումը տնտեսական մեխանիզմի կատարելագործման բնութագրիչ տարրն է: Արտադրության հարաճուն մասշտաբների, դրա զարգացման ինտենսիվ մեթոդների գերակշռման պայմաններում զգալիորեն աճում է կարգապահությունը, այդ թվում նաև տնտեսական կարգապահությունն ամրապնդելու անհրաժեշտությունը: Այստեղ մեծ դեր են կատարում պատասխանատվությունը, դրա գործողության մեխանիզմի կատարելագործումը՝ տնտեսական հարաբերություններում օրինականությունն ամրապնդելու, հանրային արտադրության արդյունավետությունը բարձրացնելու նպատակով:

Այդ պրոցեսը մեծապես պայմանավորված է ժողովրդական տնտեսության մեջ տնտեսական պայմանագրի նշանակության բարձրացմամբ: Տնտեսական պայմանագիրը օգտագործվում է որպես արտադրական միավորումների և ձեռնարկությունների գործունեության գնահատման չափանիշ: Այսպես, ձեռնարկությունների տնտեսական խթանումը կատարվում է՝ նկատի ունենալով արտադրատեխնիկական նշանակության արտադրանքի և ժողովրդական սպառման ապրանքների մատակարարումների պլանների կատարումն ըստ նոմենկլատուրայի (տեսականու) և կնքված պայմանագրի՝ նախատեսված ժամկետներում: Մեծանում է պայմանագրի դերը արտադրության մեջ գիտատեխնիկական նվաճումները ներդնելիս և, գլխավորը, որպես տնտեսական գործունեության պլանավորման գործիք: Ընդլայնվում է պայմանագրային հարաբերությունների ոլորտը, տնտեսական կապերը միջնորդավորվում են պայմանագրերով: Կուսակցական, սովետական, տնտեսական մարմինները կոչված են բարձրացնելու պայմանագրի՝ որպես պարտադիր իրավաբանական փաստաթղթի, հեղինակությունը: Դրա ամեն մի կետի կատարումը՝ տնտեսական հարաբերությունների օրենքն է:

Տնտեսական պայմանագրի օգտագործումը որպես պլանավորման գործիք, պայմանագրային հարաբերությունների ոլորտի ընդլայնումը և, հետևաբար, պլանի և պայմանագրի մերձեցումը ֆունկցիոնալ առումով իր արտացոլումն է գտնում պլանային առաջադրանքները և պայմանագրային պարտավորությունները չկատարելու համար պատասխանատվության մերձեցման, միասնական տնտեսաիրավական պատասխանատվության մեջ: Վերջինս իր մեջ ընդգրկում է պատասխանատվությունը ինչպես տնտեսական առանձին իրավախախտումների, այնպես էլ պլանը չկատարելու համար:

Տնտեսական մեխանիզմի կատարելագործումը կոչված է նպաստելու մատակարարումների կարգապահության ամրապնդմանը:

Պայմանագրային կարգապահությունն ամրապնդելու նպատակով վերջերս ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը ընդունեցին որոշում «Արտադրանքի և ապրանքների մատակարարման պայմանագրերի կատարման համար միավորումների, ձեռնարկությունների և կազմակերպությունների պատասխանատվությունը բարձրացնելու մասին», որը ուժի մեջ է մտել 1987 թ. հունվարի 1-ից: Այս տարվանից սկսած, որպես ձեռնարկությունների տնտեսական գործունեության արդյունքների գնահատման հիմնական ցուցանիշ, նախատեսվում է կնքված պայմանագրերին համապատասխան արտադրանքի մատակարարումների առաջադրանքների և պարտավորությունների հարյուր տոկոսանոց կատարումը:

Տնտեսական օրենսդրության կատարելագործման առումով ուշադրության է արժանի արտադրատեխնիկական նշանակության արտադրանքի մատակարարումների, ժողովրդական սպառման ապրանքների մատակարարումների, գյուղատնտեսական տեխնիկայի մատակարարումների կանոնադրությունները միավորելու և դրանց հիման վրա մատակարարումների օրենք հրատարակելու առաջարկությունը՝ դրանում արտացոլելով ինչպես արտադրանքի, այնպես էլ ապրանքների մատակարարումների տնտեսական հարաբերությունների առանձնահատկությունները: Անհրաժեշտ է ստեղծել այնպիսի պայմաններ, որ տնտեսական մարմինները փնտրեն լրացուցիչ ռեզերվներ իրենց պայմանագրային պարտավորությունների կատարման համար, այլ ոչ թե դրանց չկատարման բացատրություն, հարգելի պատճառներ:

Էկոնոմիկայի կառավարումը վերակառուցելու համար հրատապ հարց է արտադրության պլանների և նյութատեխնիկական մատակարարման պլանների հավասարակշռվածությունը, կայունությունը: Գործող օրենսդրությունը մինիստրություն-

ների պարտավորեցնում է պլանների ամեն կարգի փոփոխությունները, ճշտումները համաձայնեցնել պետմատի հետ՝ մատակարարումների շուտափույթ շտկումների համար: Այս պահանջը հաճախ խախտվում է, քանի որ կոնկրետ իրավաբանական պատասխանատվություն նախատեսված չէ առաջադրանքների անհիմն փոփոխությունների համար: Ժամանակն է ՍՍՀՄ պետպլանի, պետմատի և կենտվիճվարչության մակարդակի հատուկ նորմատիվ ակտ ընդունել արտադրության և մատակարարումների պլանները փոփոխելու կարգի ու ժամկետների, դրանց խախտման համար պաշտոնատար անձանց պատասխանատվության մասին:

Էկոնոմիկայի զարգացման արդի փուլը բնութագրվում է միջճյուղային տնտեսական կոմպլեքսների ստեղծմամբ (օրինակ՝ կապի միասնական ավտոմատացված համակարգ, նավթի ու գազի մատակարարման միասնական համակարգ և այլն): Միջճյուղային կազմավորումների ստեղծումը արագացնում է էկոնոմիկայի ճյուղերի անող փոխկապակցվածությունը, նոր պահանջներ է ներկայացնում էկոնոմիկայի պլանավորմանը և կառավարմանը:

Տնտեսական մեխանիզմի արդյունավետ գործունեության համար նման պայմաններում կարևորվում են միջճյուղային տնտեսական հարաբերությունների իրավական կարգավորման հարցերը: Անհրաժեշտություն է առաջանում հստակ փոխներգործություն հաստատել ինչպես տարբեր, այնպես էլ համասեռ արտադրական ճյուղերի միջև: Բարձրանում է տրանսպորտի դերը, որն ապահովում է հանրային արտադրության պրոցեսում առաջացող բոլոր փոխադարձ կապերը: Սակայն տրանսպորտային գործունեությունը կարգավորող նորմատիվ ակտերում չկան դրույթներ փոխադրումների հնգամյա պլանավորման և դրան համապատասխան երկարաժամկետ պայմանագրերի մասին, իսկ դա խոչընդոտում է բեռներ առաքողների (ստացողների) և նյութատեխնիկական մատակարարման մարմինների հետ ուղղակի երկարաժամկետ կապերի մեջ տրանսպորտը ներգրավելուն: Այդ իսկ պատճառով նպատակահարմար է ՍՍՀՄ տրանսպորտային օրենսդրության ներկայումս մշակվող հիմունքներում նախապատրաստել ամբողջությամբ վերցրած տրանսպորտային գործունեության կոմպլեքսային պլանավորման դրույթներ, որոնք ընդգրկեն ոչ միայն բեռնափոխադրումների հնգամյա և տարեկան պլանավորման բոլոր հարցերը, այլև տրանսպորտային գործունեության այլ տեսակները և դրանց հիման վրա երկարաժամկետ պայմանագրեր կազմելը:

Իրավական հետազոտությունների և մշակումների հետագա կատարելագործումը, տնտեսական օրենսդրության արդյունավետության բարձրացումը մեծապես նպաստում են կուսակցության առաջադրած խնդիրների հաջող լուծմանը, երկրի ժողովրդական տնտեսության արագ զարգացմանը:

---



# ՎԵՐԱՀՍԿՈՂՈՒԹՅՈՒՆ ԲՈԼՈՐ ՕՂԱԿՆԵՐՈՒՄ

**Մ. ԽԱՉԱՏՐՅԱՆ**
*ՀԿԿ Աշտարակի շրջկոմի առաջին քարտուղար*

ՎԵՐԱՀՍԿՈՂՈՒԹՅՈՒՆԸ կուսակցական-կազմակերպական աշխատանքի կարևոր բնագավառ է: Այսօր կուսակցությունը պահանջում է վերահսկողությունը ծառայեցնել երկրի տնտեսական ու սոցիալական զարգացումն արագացնելու նպատակին, այն արմատավորել ամենուրեք, կյանքի բոլոր ոլորտներում, արտադրության բոլոր տեղամասերում: Երկրի ընդհանուր վերակառուցման կուրսը թելադրում է վերակառուցել նաև վերահսկողության ձևերն ու մեթոդները, ապահովել դրա բարձր արդյունավետությունը, օպերատիվությունն ու հրապարակայնությունը:

Կուսակցական աշխատանքում և առհասարակ տնտեսական ու քաղաքական գործունեության բոլոր բնագավառներում վերահսկողության ուժեղացման հարցերը հանգամանորեն արծարծվեցին ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան (1985 թ.) պլենումում, կուսակցության XXVII համագումարում: Համագումարին տված Կենտկոմի Քաղաքական զեկուցման մեջ ընկ. Մ. Ս. Գորբաչովն ասաց. **«...կուսակցության մեջ չկան և չպետք է լինեն վերահսկողությունից դուրս, քննադատության առաջ փակ կազմակերպություններ, չկան և չպետք է լինեն կուսակցական պատասխանատվությունից պատնեշված ղեկավարներ» (ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը, էջ 113—114):**

Հիրավի. վերահսկողությունից դուրս ոչ մի աշխատող և ոչ մի բնագավառ չպետք է լինի: Ամեն ոք պետք է հաշիվ տա իր արածի ու անելիքի մասին, ամենայն պատասխանատվությամբ վերաբերվի տրված հանձնարարության կատարմանը, շահագրգռություն հանդես բերի իր ղեկավարած տեղամասի գործերի վիճակի բարելավման համար:

Մեր կադրերի առջև դնում ենք այսպիսի պահանջ. եթե քեզ վստահել են այս կամ այն բնագավառը, ապա վարիր գործիմացորեն, հաշվի առ, որ դու այնտեղ կուսակցության, պետության ներկայացուցիչն ես և պետք է բարոյահոգեբանական առողջ մթնոլորտ ապահովես տվյալ կոլեկտիվում, պայքարես բացասական երևույթների դեմ, տիրոջ սրտացավություն դրսևորես աշխատանքի ու հանրային ունեցվածքի նկատմամբ և նույնը պահանջես ենթականերից: Ցավոք, դեռևս լինում են և հակառակ կերպ մտածողներ ու գործողներ: Եվ մենք այդպիսիների նկատմամբ վարվում ենք ամենայն անզիջողությամբ, կուսակցական սկզբունքայնության դիրքերից գնահատում յուրաքանչյուրի գործունեությունն ու վարվելակերպը:

Ասածս հիմնավորեմ կոնկրետ օրինակներով: Լուրջ ահազանգերից հետո ուսումնասիրեցինք Չրջկոոպի գործունեությունը: Պարզվեց, որ առևտրի ցանցում խիստ անբավարար է սոցիալիստական սեփականության պահպանման, նյութական պատասխանատու կադրերի ընտրության, նշանակման և դաստիարակության աշխատանքը, այն չի բավարարում արդի պահանջները: Հայտնաբերվեցին պետական ունեցվածքի խոշոր չափերի հափշտակության, չարաշահման, յուրացման փաստեր: Շրջկոոպի վարչության և հասարակական սննդի միավորման ղեկավարության անբավարար հսկողության հետևանքով միավորման պահեստում և Արագածոտնի սով-

խոզի խանութում յուրացրել էին շուրջ 80 հազար ռուբլու կոոպերատիվ միջոցներ: Մեծ չափերի էին հասնում գերնորմատիվային մնացորդները, կատարվել էին առևտրի կանոնների, ազգաբնակչության սպասարկման այլ կոպիտ խախտումներ:

Այս ամենը հուշեց մեզ՝ արմատական միջոցներ ձեռնարկել վիճակը շտկելու, առևտրի ցանցում պատշաճ կարգուկանոն հաստատելու, կադրերի պատասխանատվությունը բարձրացնելու համար: Շուտով շրջկոմի բյուրոյում քննարկեցինք սպառողական կոոպերացիայի հետագա զարգացման և բարելավման վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշման կենսագործման և սոցիալիստական սեփականության պահպանության նպատակով շրջկոոպի կուսկազմակերպության կատարած աշխատանքի հարցը: Դրա շուրջը գործնական խոսակցություն ծավալվեց, բացահայտվեցին այլ թերություններ: Ստիպված էինք կազմակերպչական միջոցների դիմել. կուսակցական խիստ պատասխանատվության ենթարկվեցին շրջկոոպի մի քանի ղեկավար աշխատողներ: Կոոպերատիվ ունեցվածքի պահպանման նկատմամբ անբավարար հսկողություն սահմանելու, ստուգումների բարձր որակը չապահովելու համար շրջկոոպի բաժինների վարիչներ, կոմունիստներ Վ. Խոյեցյանին և Ռ. Մովսիսյանին հայտարարվեց խիստ նկատողություն՝ գրանցելով հաշվառման քարտում: Նրանք ազատվեցին իրենց զբաղեցրած պաշտոններից: Հաշվի առնելով, որ շրջկոոպի նախագահ Ռ. Մաղաքյանը նոր աշխատող է, բյուրոն բավարարվեց նրան խիստ նախազգուշացնելով և ուշադրությունը հրավիրեց պետական միջոցների պահպանության ուժեղացման վրա: Շրջկոոպի ղեկավարությանը և կուսկազմակերպությանը հանձնարարվեց ամուր հիմքերի վրա դնել սոցիալիստական սեփականության պահպանությունը, միջոցներ ձեռնարկել խախտումները, չարաշահումները նախականխելու համար, քննության առնել սովետական առևտրի կանոնների խախտման, վատնում-յուրացումների յուրաքանչյուր դեպք և իսպառ վերացնել դրանք:

Շրջկոմի բաժինները որոշման կատարումը վերցրին խիստ հսկողության տակ: Դրա կատարման ընթացքի ուսումնասիրությունից հետո շրջկոմի բյուրոյի նիստերից մեկում լսեցինք շրջկոոպի վարչության նախագահի հաշվետվությունը: Ձեռնարկված միջոցների արդյունքը եղավ այն, որ խիստ կրճատվեցին պետական միջոցների յուրացման, չարաշահման դեպքերը, բարելավվեց նյութական պատասխանատու անձանց ընտրության ու պատասխանատվության բարձրացման գործը, սկսեցին կատարվել պետական պլանային առաջադրանքները:

Կամ մեկ ուրիշ օրինակ. Օշականի սովխոզի կուսկազմակերպությունը և նրա բյուրոն վերջին տարիներին լրջորեն չէին զբաղվում կոմունիստների կողմից ՍՄԿԿ կանոնադրական պահանջների կատարման ապահովման, նրանց ակտիվության բարձրացման, հանրային ունեցվածքի պահպանության կարևոր խնդիրներով: Առանձին կոմունիստներ կատարում էին կանոնադրական խախտումներ, տարբեր զանցանքներ: Կուսկազմակերպության աշխատանքը ինչպես հարկն է չգլխավորելու, կուսակցական, պետական և կատարողական կարգապահությունը տնտեսությունում ամուր հիմքերի վրա չդնելու համար կուսբյուրոյի նախկին քարտուղարներ Գ. Հովակիմյանը և Ա. Մանուկյանը ժամանակին ազատվել էին իրենց պարտականություններից: Կուսկազմակերպության մարտունակությունը և կոմունիստների պատասխանատվությունը բարձրացնելու նպատակով ուսումնասիրվեց այդ հարցը և շրջկոմի բյուրոյի 1985 թ. սեպտեմբերի 20-ի նիստում լսվեց կուսբյուրոյի հաշվետվությունը: Բացահայտվեցին աղաղակող այլ թերություններ: Պարզվեց, որ կաթնապրանքային ֆերմայում ստեղծվել է խառնափնթոր վիճակ, կան շռայլման, վատնման, յուրացման ու աչքակապության փաստեր, որոնց հետևանքով տնտեսությանը հասցվել է շուրջ 28 հազար ռուբլու վնաս: Մեղավորները, իհարկե, պատասխանատվության ենթարկվեցին: Սովխոզի դիրեկտոր Ռ. Գալստյանը ազատվեց աշխատանքից և վտարվեց ՍՄԿԿ շարքերից: Նման պատիժ կրեցին գլխավոր հաշվապահ Ռ. Խաչատրյանը, աշխղեկ Թ. Գալոյանը, գնորդ Գ. Վահանյանը: Քննարկումը և ձեռնարկված միջոցները բարերար ազդեցություն ունեցան. կազմակերպությունն ու նրա բյուրոն աստիճանաբար հաղթահարում են դժվարությունները, սովխոզի դիրեկցիայի հետ մշակում ու լուծում արագացման և վերակառուցման կուրսից բխող տնտեսական և սոցիալ-քաղաքական արմատական խնդիրներ:



Չնայած ձեռք բերած որոշ հաջողություններին, կազմակերպության աշխատանքում դեռևս կան լուրջ բացթողումներ՝ կոմունիստների ակտիվության բարձրացման և վերահսկողության բարելավման առումով: Կան նաև պրոբլեմներ, որոնց լուծումը կապված է օբյեկտիվ և սուբյեկտիվ մի շարք պատճառների հետ: Շրջկոմն օգնում է կուսկազմակերպությանն ու դիրեկցիային՝ շտկելու և լուծելու դրանք:

Կուսակցական վերահսկողության իրականացման գործում լուրջ անելիքներ ունեն ադմինիստրացիայի գործունեությունը վերահսկող հանձնաժողովները: Նրանց օգնությամբ սկզբնական կուսկազմակերպություններն իրականացնում են սիստեմատիկ վերահսկողություն կուսակցության ու կառավարության որոշումների, տնտեսական և սոցիալական զարգացման պլանների կատարման նկատմամբ: Այլ խոսքով, հանձնաժողովների գործունեությունն ուղղվում է աշխատանքային կոլեկտիվների առջև ծառացած խնդիրների լուծմանը: Այս առնչությամբ որոշակի փորձ են կուտակել նաև մեր շրջանի սկզբնական կազմակերպություններին առընթեր ստեղծված ադմինիստրացիայի գործունեությունը վերահսկող հանձնաժողովները:

Այսպես, № 1 և № 32 ՇՄՇ-ների սկզբնական կուսկազմակերպությունների ադմինիստրացիայի գործունեությունը վերահսկող հանձնաժողովները պարբերաբար ուսումնասիրում են գործերի վիճակը, կուսակցական ժողովներում քննարկման համար նախապատրաստում ղեկավար կադրերի հաշվետվություններ: Հանձնաժողովի նախաձեռնությամբ № 1 ՇՄՇ-ի սկզբնական կուսկազմակերպության ժողովում քննարկվել են շարասյան պետ Ս. Հովհաննիսյանի, գլխավոր ինժեներ Գ. Համզոյանի հաշվետվությունները, նրանց տրվել են կոնկրետ հանձնարարություններ՝ տեղ գտած թերությունները վերացնելու համար: Հանձնաժողովի ուսումնասիրման արդյունքների հիման վրա ժողովը գործնական միջոցառումներ է մշակել շինանյութերի ու կառուցվածքների պահպանման, խնայողաբար օգտագործման համար: Այժմ հանձնաժողովների ուշադրության կենտրոնում են գտնվում անավարտ շինարարությունների ավարտման և գործարկվող օբյեկտների որակի ապահովման հարցերը: Նման օրինակներ կարելի է բերել նաև մյուս կուսկազմակերպություններից:

Կուսակցական արդյունավետ վերահսկողության իրականացման և, հետևաբար, ժողովրդական տնտեսության տարբեր բնագավառներում գործերի վիճակի բարելավման համար վճռական դեր են խաղում կոմունիստների քննադատական դիտողությունները: Դրանք երբեմն քննարկումների առիթ են ծառայում և մեծապես նպաստում թերությունների վերացմանը, այս կամ այն տեղամասի առջև ծառացած խնդիրների լուծմանը: Հիշում եմ մի այսպիսի դեպք. կուսշրջկոմի 1985 թ. հունիսին տեղի ունեցած պլենումում Կարբիի սովխոզի բանվորուհի, ՀԿԿ շրջկոմի անդամ Ս. Ալեքսանյանն անդրադարձավ իրենց տնտեսությունում կադրերի ընտրության ու տեղաբաշխման, աշխատանքային և պետական կարգապահության ամրապնդման, սոցիալիստական սեփականության պահպանության հարցերին, նշեց այդ բնագավառներում տեղ գտած թերությունները: Կոմունիստի ելույթը մեզ համար լուրջ ահազանգ դարձավ, և հարկ համարեցինք շրջկոմի բյուրոյում անդրադառնալ նրանում արված դիտողություններին: Ի՞նչ տվեց այդ քննարկումը: Պարզվեց, որ սովխոզի դիրեկցիան ու կուսբյուրոն իրոք անբավարար են զբաղվում կադրերի ընտրության և տեղաբաշխման հարցերով, գլխավոր մասնագետները չեն ապահովում պլանների կատարումը բոլոր ցուցանիշներով, գլխավոր անասնաբույժ Ս. Հովսեփյանը դեռևս չի կարողանում վերակառուցել իր աշխատանքը կուսակցության ներկա պահանջներին համապատասխան: Անասնապահական մթերքների արտադրությունը 1982 թ. սկսած նվազում է, ցածր է կովերի կաթնատվության և գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության մակարդակը: Կուսբյուրոն վատ է կազմակերպում միջին օղակի կադրերի հետ տարվող աշխատանքը, հազվադեպ է անդրադառնում կուսկազմակերպության ընդունած որոշումների կատարման ընթացքին, անհրաժեշտ պահանջկոտություն հանդես չի բերում կոմունիստների նկատմամբ: Նրանցից մի քանիսը պլանները չկատարելու և աշխատանքում թերանալու համար ենթարկվել են վարչական տույժերի:

Բյուրոյի որոշմամբ հանձնարարեցինք սկզբնական կուսկազմակերպությանը՝ Ս. Ալեքսանյանի ելույթում արծարծված հարցերը քննարկել կուսակցական ժողովում և միջոցառումներ մշակել թերությունները կարճ ժամանակում վերացնելու համար,

բարելավել միջին օղակի կադրերի հետ տարվող աշխատանքը, լսել նրանց հաշվետվությունները, ապահովել կոմունիստների ավանգարդային դերը բոլոր բնագավառներում:

Շրջանային կուսկազմակերպության կոնֆերանսում և կուսակցական հաշվետու-ընտրական ժողովներում կոմունիստները հանդես են գալիս շրջանի ժողովրդական տնտեսության տարբեր բնագավառների գործերի վիճակը բարելավելու շահերից բխող բազմաբնույթ քննադատական դիտողություններով և առաջարկություններով: Դրանք զգալի թիվ են կազմում: Հետևաբար, մենք անհրաժեշտ գտանք ստեղծել հատուկ հանձնաժողով և նրա միջոցով օպերատիվ կերպով լուծել առաջ քաշված հարցերը: Հանձնաժողովի կազմում ընդգրկվեցին կուսշրջկոմի քարտուղարներ ու բաժինների վարիչներ, շրջսովետի և քաղսովետի գործկոմի նախագահներ ու բաժինների վարիչներ: Այս կամ այն առաջարկությունը կամ դիտողությունը ընթացք տալու համար նրանցից որևէ մեկը պատասխանատու է դառնում և գործնական կերպով զբաղվում տվյալ հարցով, ապա արդյունքների մասին իրազեկ պահում հանձնաժողովի անդամներին: ՀԿԿ Կենտկոմի քարտուղարությունը հավանություն տվեց մեր նախաձեռնությանը և հանձնարարեց ավելի զարգացնել ու կատարելագործել այն:

Սկզբնական շրջանում հանձնաժողովն իր նիստերում անդրադառնում էր միայն շրջանային կուսկազմակերպության կոնֆերանսում և կուսակցական հաշվետու-ընտրական ժողովներում արված քննադատական դիտողությունների և առաջարկությունների իրագործման հարցերին: Հետագայում նա ընդարձակեց իր գործունեության շրջանակը: Այժմ արդեն հանձնաժողովն ընթացք է տալիս նաև կուսշրջկոմի պլենումներում, կուսակցական ակտիվի ժողովներում, բյուրոյի նիստերում, տեղական սովետների նստաշրջաններում, կուսակցական հերթական ժողովներում արված քննադատական դիտողություններին և առաջարկություններին: Անհրաժեշտության դեպքում այդ հարցը դրվում է կուսշրջկոմի բյուրոյի քննարկմանը:

Կոմունիստների քննադատական դիտողությունների և առաջարկությունների հիման վրա կուսշրջկոմը հանձնաժողովի միջոցով ևս իրականացնում է վերահսկողությունը կուսկազմակերպությունների, սովետական և տնտեսական մարմինների նկատմամբ, բարելավում գործերի վիճակը այս կամ այն տեղամասում:

Հանձնաժողովը հետևում է, թե հանրապետական մարմիններն ինչպես են լուծում առաջ քաշված այս կամ այն հարցը, շրջանային մարմիններն ինչպես են կատարում իրենց պարտականությունները: Ընդ որում մենք քննադատական դիտողություններին և առաջարկություններին ընթացք տալու վրա հրավիրում ենք նաև շրջանային մարմինների սկզբնական կուսկազմակերպությունների ուշադրությունը: Եվ, իհարկե, այդ ճանապարհով հասնում ենք որոշակի արդյունքի: Այսպես, անցած տարի կուսկազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովներում և շրջանային կուսկազմակերպության կոնֆերանսում լուրջ քննադատություն եղավ Աշտարակի քաղսովետի գործկոմի և «Գյուղշին» № 2 տրեստի հասցեին: Որոշ ժամանակ անց կուսշրջկոմում անդրադարձանք այդ խնդրին: Պարզվեց, որ քաղսովետի և տրեստի սկզբնական կուսկազմակերպությունները պարբերաբար անդրադառնում են իրենց հասցեին արված քննադատական դիտողությունների ու առաջարկությունների իրականացման հարցերին, մշակում համապատասխան միջոցառումներ: Քաղսովետի գործկոմի նիստերում լսվում են բաժինների վարիչների հաշվետվությունները: Այդ ամենը նպաստում է գործերի վիճակի բարելավմանը: Վկայությունը՝ նրանց հասցեին արված քննադատական դիտողությունների նվազումը: Եթե 1983-ին քաղսովետի գործկոմի և նրա բաժինների հասցեին եղել է 49, 1984-ին՝ 40 քննադատական դիտողություն, ապա 1985-ին՝ ընդամենը 13: Քննադատական դիտողությունների հիման վրա բարեկարգվել են Աշտարակ քաղաքն ու իր շրջակայքը, կարգավորվել են էլեկտրալուսավորությունը, ջրամատակարարումը, ջեռուցումը, վերակառուցվել է շրջանի առաջին հեղկոմի նախագահ Գ. Գրիգորյանի հուշահամալիրը, լուրջ աշխատանք է կատարվում քաղաքի ճարտարապետական կոթողների նորոգման և վերակառուցման համար: Իսկ ինչ մնում է «Գյուղշին» № 2 տրեստին, ապա նա էապես բարելավել է շինարարության որակը, և 1985-ին առաջին անգամ շրջանը կատարեց շինմոնտաժային աշխատանքի պլանը:

Ուսումնասիրությամբ միաժամանակ պարզեցինք, որ երբեմն թույլ է կապը



քննադատող և քննադատվող կազմակերպությունների միջև, շինարարական առանձին կազմակերպություններում (օրինակ, № 14 ՇՄԾ-ում) խիստ անկանոն է քննադատական դիտողությունների քննարկման և իրականացման գործը: Առանձին դիտողություններ ու առաջարկություններ ժամանակին չեն գրանցվում և դուրս են մնում կուսակցական վերահսկողությունից: Հաշվի առնելով այդօրինակ թերացումը՝ քննադատվող մարմինների ղեկավարներից ու սկզբնական կուսկազմակերպություններից պահանջում ենք ժամանակին գրանցել ամեն մի դիտողություն ու առաջարկություն և դրանց կատարման մասին տեղեկացնել ինչպես կուսշրջկոմին, այնպես էլ քննադատող կազմակերպությանը:

Կուսակցական վերահսկողության միջոցով մենք լուծում ենք շրջանի համար կենսական նշանակության շատ խնդիրներ: Դրա համար հարկ է լինում ոչ միայն ուսումնասիրություններ կատարել և ստուգումներ անցկացնել, այլև անհատական զրույցներ ունենալ հիմնարկ-ձեռնարկությունների տնտեսությունների ղեկավարների հետ:

Մեր շրջանի համար հողօգտագործումը և ոռոգման գործը լուրջ պրոբլեմներ են: Շրջանի ղեկավարությունը նախկինում շատ է քննադատվել հողն ու ջուրն անարդյունավետ օգտագործելու համար: Եվ մենք, հետևություն անելով դրանից, ձգտում ենք այդ ասպարեզում անհրաժեշտ կարգուկանոն հաստատել: Ահա մի բնորոշ օրինակ: Ուջանի սովխոզի առջև լուրջ պրոբլեմ էր ծագել: Այն առնչվում էր նոր ոռոգման համակարգերի օգտագործման և կերի բազայի ամրապնդման հետ: Տեղում կատարված ուսումնասիրությունից պարզվեց, որ ոռոգման նոր համակարգերը, անձրևացման սարքավորումները կանոնավոր չեն օգտագործվում, ջրի կորուստներ են լինում, ցանքադաշտերը համաչափ չեն ջրվում, հողի էրոզիայի տեղիք է տրվում: Տնտեսության դիրեկտոր Ս. Պողոսյանը հրավիրվեց կուսշրջկոմ, նրա հետ ունեցած զրույցը գործնական բնույթ էր կրում: Ապա հարկ եղավ զրուցել նաև «Հայգլխջրշին» գլխավոր վարչության ղեկավարների հետ: Վարչության գլխավոր ինժեներ Գ. Էյրամջյանի հետ եղանք Ուջանում, նորից ուսումնասիրեցինք վիճակը և հանձնարարություն տվեցինք տնտեսության ղեկավարներին, թե կոնկրետ ինչ պետք է անեն գործերը կարգավորելու համար: Հարցի արմատական լուծման նպատակով դիմեցինք ագրոարդի հանրապետական կոմիտեի ղեկավարության օգնությանը և այն անհապաղ ստացանք: Կոմիտեն հանձնարարել է իր նախագծային կազմակերպությանը՝ Ուջանի սովխոզի 120 հեկտար հողատարածության վրա անձրևացման սարքավորումներ տեղադրել: Ի՞նչ կտա դա: Նախ՝ կլուծվի կերի բազայի ամրապնդման հարցը և երկրորդ՝ հնարավոր կլինի անցնել խոշոր եղջերավոր անասունների մսուրային պահվածքի շուրջ տարին:

Հողերի արդյունավետ օգտագործման և կերի բազայի ամրապնդման առումով նկատելի աշխատանք է կատարվում նաև Կարբիի, Օհանավանի սովխոզներում և շրջանի այլ տնտեսություններում:

Կուսակցական վերահսկողության ուժեղացման գործում վճռական դեր են խաղում ներկուսակցական աշխատանքի հարցերին նվիրված սեմինար-խորհրդակցությունները: Ոսկեվազում անցկացված նման խորհրդակցությանը մասնակցում էին ագրոարդի համակարգի սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարները: Նրանք ծանոթացան այդ սովխոզի կազմակերպությունում կուսակցական տնտեսության վարման, քննադատական դիտողությունների և առաջարկությունների, ընդունված որոշումների կատարման, վերահսկողության իրականացման, աշխատանքի կազմակերպման առաջավոր ձևերի ներդրման դրվածքին: Կուսկազմակերպության բյուրոյի քարտուղար Մ. Մանուկյանն իր ելույթը նվիրեց կուսակցական վերահսկողության կազմակերպման ու իրականացման հարցերին: Սեմինար-խորհրդակցությունում ելույթ ունեցան կուսկազմակերպությունների քարտուղարներ, շրջանի ղեկավար աշխատողներ: Մասնակիցների ուշադրությունը հրավիրվեց այն բանի վրա, որ կուսակցական վերահսկողությունից չպետք է վրիպի ոչ մի բնագավառ, ոչ մի աշխատող:

Նման բնույթի մի սեմինար-խորհրդակցություն էլ հրավիրվել է Սասունիկի սովխոզի կուսկազմակերպությունում: Մասնակիցները ուսումնասիրել են, թե ինչպես է այդտեղ իրականացվում արտադրության կուսակցական ղեկավարումը, կազմակեր-

պությունն ինչպես է օգտվում ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ վերահսկողության իրավունքից:

Ինչո՞ւ էինք ընտրել հատկապես Սասունիկի կուսկազմակերպությունը: Բանն այն է, որ Սասունիկը մեր ամենաառաջավոր տնտեսություններից է: Այստեղ բարձր մակարդակով է վարվում և՛ հողագործությունը, և՛, մասնավորապես, անասնապահությունը: Այդ ճյուղերի ձեռքբերումներում կոմունիստները մեծ ներդրում ունեն: Կուսկազմակերպությունը և նրա բյուրոն մշտապես խորամուխ են լինում արտադրության խնդիրների մեջ, վերահսկողություն իրականացնում արտադրության բոլոր ճյուղերի, բոլոր օղակների, նրանց ղեկավարների գործունեության նկատմամբ: Լավ է կազմակերպված կոմունիստների տեղաբաշխման, կադրերի ընտրության գործը: Մի խոսքով, սեմինար-խորհրդակցության մասնակիցների համար ուսանելի շատ բան կար: Տնտեսությունում ստեղծվել է համերաշխ, միասնական կոլեկտիվ, մասնագետների և ղեկավարների միջև հաստատվել են փոխադարձ հարգանքի և ըմբռնողության լավ հարաբերություններ: Այդ ամենի շնորհիվ տեղամասերում տիրում է բարոյահոգեբանական առողջ, թերությունների և թերացողների նկատմամբ՝ անհանդուրժողականության մթնոլորտ:

Սովխոզի ղեկավարությունը ամեն կերպ ջանում է լուծել աշխատավորների կարիքներին ու պահանջներին առնչվող հարցերը, ամրապնդում է բանվորական կադրերը, նրանց կապում հողի հետ, ժամանակին տեսնում ու շտկում թերությունները: Իսկ աշխատավորներն իրենց հերթին զորավիգ են դառնում ղեկավարության, կուսկազմակերպության բոլոր ձեռնարկումներին, հոգատար վերաբերմունք դրսևորում հայրենի հողի ու ջրի, տնտեսության առաջընթացի նկատմամբ: Փոխադարձ ըմբռնողությունն ու պահանջկոտությունը հաջողությունների երաշխիք են դառնում: Վկայությունը բարձր արդյունքներն են: Այստեղ կովերի միջին կաթնատվությունը հասել է 3.400 կիլոգրամի, գյուղատնտեսական կուլտուրաներից կայուն, առատ բերք է ստացվում:

Շրջանի տնտեսական և սոցիալական զարգացումն արագացնելու շահերից ելնելով՝ մենք հաճախ խորհրդի ենք նստում այս կամ այն բնագավառի աշխատողների հետ, նրանց հետ քննարկում թերությունների ու թերացումների պատճառները, նշում դրանց վերացման միջոցները: Անցյալ տարվա սկզբներին այդպիսի մի խորհրդակցություն նվիրեցինք հույժ կարևոր օբյեկտների շինարարության հարցին: Առիթը շրջանի ղեկավար մարմինների հասցեին ՀԿԿ Կենտկոմի քննադատությունն էր՝ Բյուրականի աստղադիտարանի շինարարության ձգձգման կապակցությամբ: Ագրոարդի շինտրեստի Աշտարակի № 14 ՇՄՇ-ի պետը հավաստիացրեց, որ հուլիսի սկզբներին կավարտվի լաբորատորիայի կառուցումը «լավ» կամ «գերազանց» գնահատականով: Խորհրդակցությունը ի գիտություն ընդունեց նաև գլխավոր ինժեների հայտարարությունը՝ լաբորատորիայի կառուցումն այդ ժամկետում ավարտելու վերաբերյալ: Առաջ անցնելով ասեմ, որ նրանք իրենց խոստումը կատարեցին:

Մեկ անգամ չէ, որ շինարարական կազմակերպությունները քննադատվել են շինմոնտաժային աշխատանքների ցածր որակի համար: Ճիշտ է, այդ ասպարեզում որոշ դրական տեղաշարժեր կատարվել են, սակայն առանձին օբյեկտներ, մասնավորապես բնակելի տներ և կուլտուր-կենցաղային ու արտադրական բնույթի շենքեր, շահագործման են հանձնվում բավական լուրջ թերություններով: Կառուցող կազմակերպությունների ղեկավարները դրա համար լուրջ կշտամբանքի են ենթարկվել: Կուսշրջկոմը զբաղվում է կառույցներում շինմոնտաժային աշխատանքի որակը էապես բարձրացնելու հարցերով, և այդ առնչությամբ ուժեղացնում է վերահսկողությունը շինարարական կազմակերպությունների նկատմամբ:

Կուսակցությունն անչափ կարևորում է ժողվերահսկողության մարմինների դերը վերահսկողական աշխատանքի կազմակերպման գործում: Այդ իրողության ցայտուն վկայությունն է ՍՍՀՄ ժողովրդական վերահսկողության կոմիտեի գործունեության վերաբերյալ ՍՍՀՄ Գերագույն սովետի վերջերս ընդունած որոշումը, որը բխում է ՍՄԿԿ XXVII համագումարի պահանջներից: Ժողովրդական վերահսկողությունը մեզ մոտ դիտվում է որպես սոցիալիստական դեմոկրատիայի կարևոր ձև, պետական և հասարակական գործերի կառավարման մեջ սովետական մարդկանց ակտիվությունը զարգացնելու, օրինականությունն ու կարգապահությունն ամրապնդելու գործուն միջոց:



Ժողվերահսկողության Աշտարակի շրջկոմը, նրա խմբերն ու պոստերը ակտիվորեն օգտագործում են կուսակցության ու կառավարության դիրեկտիվների ու որոշումների, սովետական օրենքների պահանջների, պետական պլանների ու առաջադրանքների կատարման նկատմամբ վերահսկողություն իրականացնելու իրենց վերապահված լիազորությունները: Նրանք պարբերաբար ուսումնասիրություններ ու ստուգումներ են անցկացնում հիմնարկ-ձեռնարկություններում, տնտեսություններում, ուժեղացնում պահանջկոտությունը տնտեսական ղեկավարների և պաշտոնատար անձանց նկատմամբ, բարձրացնում նրանց պատասխանատվությունը պետական կարգապահության և սոցիալիստական օրինականության խախտումների, պաշտոնական դիրքի չարաշահումների վերացման, պետությանը պատճառված վնասի փոխհատուցման համար: Անհրաժեշտության դեպքում նրանց ուսումնասիրությունների արդյունքները դառնում են կուսշրջկոմի և սկզբնական կուսկազմակերպությունների քննարկման առարկա: Միայն 1986 թ. կուսշրջկոմի բյուրոյում քննարկվել է այդպիսի հինգ հարց: Վերահսկողության շրջկոմի ուսումնասիրությունների նյութերի հիման վրա մի շարք տնտեսությունների ղեկավարներ ենթարկվել են տույժերի: Շրջկոմի բյուրոյում քննարկել ենք նաև ժողվերահսկողության շրջկոմի նախագահի հաշվետվությունը՝ ժողովրդական տնտեսության բոլոր օղակներում պետական և աշխատանքային կարգապահության ամրապնդման, կազմակերպվածության, կարգուկանոնի հաստատման վերաբերյալ:

Կուսշրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները անհրաժեշտ օգնություն են ցույց տալիս ժողվերահսկողության շրջկոմին, տեղական խմբերին և պոստերին՝ արդյունավետ վերահսկողություն իրականացնելու գործում, նպաստում վերահսկիչների ակտիվության բարձրացմանը, հոգ տանում նրանց ուսուցման ու դաստիարակության մասին: Սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների և վերահսկողության խմբերի ղեկավարների համար հրավիրել ենք սեմինար-խորհրդակցություն, նրանց հետ քննարկել վերահսկողության արդյունավետության բարձրացման հրատապ հարցեր: Շրջանում ըստ ամենայնի կարևորվում է վերահսկողության համակարգի կադրերի ընտրությունը, նրանում ամրապնդվում է կուսակցական միջուկը. այսօր շրջանի յուրաքանչյուր երկրորդ վերահսկիչը կոմունիստ է: Ժողվերահսկողության բոլոր խմբերի նախագահները կուսկազմակերպությունների քարտուղարների տեղակալներ կամ բյուրոների անդամներ են:

Խոսելով վերահսկողության մասին, չի կարելի չանդրադառնալ նաև իրավապահպան մարմինների հսկողական ֆունկցիաների իրականացմանը: ՀԿԿ Կենտկոմի քարտուղարությունը, քննարկելով մեր շրջանի ագրոարդի համակարգում սոցիալիստական սեփականության պահպանման նպատակով տարվող աշխատանքի հարցը, նշել էր, որ իրավապահպան մարմինները, ինչպես հարկն է, հսկողություն չեն սահմանում այդ բնագավառի նկատմամբ, ժամանակին չեն բացահայտում հանրային ունեցվածքի շռայլումների և հափշտակումների փաստերը: Ի կատարումն Կենտկոմի քարտուղարության որոշման՝ մենք ուժեղացրել ենք հսկողությունը իրավապահպան մարմինների գործունեության նկատմամբ: Ընթացիկ տարում կուսշրջկոմի բյուրոյի ընդլայնված նիստում քննարկել ենք շրջանային ժողդատավորի հաշվետվությունը, բացահայտել դատարանի աշխատանքի թերությունները և մշակել նրա, ինչպես և մյուս իրավապահպան մարմինների կադրերի պատասխանատվության բարձրացման միջոցառումներ:

Արդյունավետ վերահսկողություն ամենուրեք՝ ահա կուսակցության այսօրվա պահանջը, որ մեզ համար դարձել է գործունեության նշանաբան և ուղեցույց: Աշխատանքի բոլոր բնագավառների, բոլոր տեղամասերի նկատմամբ հետևողական վերահսկողություն իրականացնելու շնորհիվ հաջողությամբ են լուծվում շրջանի առջև ծառացած տնտեսական և սոցիալական զարգացման խնդիրները:

Կուսակցության շրջկոմը և սկզբնական կազմակերպությունները, լուրջ հետևություններ անելով կուսակցության առաջադրած արագացման և վերակառուցման ստրատեգիական կուրսից, իրենց ողջ ջանքերը կողղեն դրանից բխող պահանջների իրականացմանը: Այդ գործում վճռական դեր կխաղա կուսակցական արդյունավետ վերահսկողությունը:

# ԿԱԴՐԵՐԻ ՈՒԺՆ ՈՒ ԵՌԱՆԴԸ՝ ԱՐԱԳԱՑՄԱՆ ԳՈՐԾԻՆ

**Հ. ՀԱԽԻՆՅԱՆ**
**«Նաիրիտ» գիտաարտադրական միավորման կուսկոմիտեի քարտուղար**

ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ սովետական հասարակության զարգացման բոլոր փուլերում առանձնահատուկ նշանակություն է տվել կադրային քաղաքականությանը՝ այն համարելով հասարակական պրոցեսների վրա ակտիվորեն ներգործելու կարևորագույն լծակներից մեկը: Ելնելով տվյալ պատմական փուլում լուծվող խնդիրների բնույթից՝ կուսակցությունը մշտապես կատարելագործում է իր կադրային քաղաքականությունը, այն հարստացնում նոր բովանդակությամբ, կադրերի առջև դնում նոր խնդիրներ: ՍՄԿԿ XXVII համագումարին տված Քաղաքական զեկուցման մեջ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովն ասաց. «Կուսակցության գործին նվիրված, նրա քաղաքական գծի կենսագործման համար մղվող պայքարի ավանգարդում ընթացող կադրերը մեր ամենագլխավոր, ամենաթանկ հարստությունն են» (**ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը**, էջ 118):

Հասարակական վերափոխումների, տնտեսական ու սոցիալական զարգացումն արագացնելու ներկա փուլի ծրագրերի բարդությունն ու մասշտաբայնությունը պահանջում են որակական տեղաշարժ կատարել կադրերի հետ տարվող աշխատանքում, արմատապես վերակառուցել մարդկանց մտածողությունն ու հոգեբանությունը, աշխատանքի ոճն ու մեթոդները, նրանց ուժերը նպատակամղել արագացման ու վերակառուցման խնդիրների լուծմանը: Կուսակցության այդ պահանջները դիտելով որպես գործողության ուղեցույց՝ «Նաիրիտ» գիտաարտադրական միավորման (ԳԱՄ) կուսկոմիտեն պլանաչափ և հետևողական աշխատանք է ծավալել միավորման կադրերի մտածողության ու հոգեբանության մեջ բեկում մտցնելու, արտադրական կոլեկտիվներում գործարար, ստեղծագործական մթնոլորտ արմատավորելու համար: Այն հանգամանքը, որ միավորումն ունի հարուստ կադրային պոտենցիալ, հնարավորություն է ընձեռում քաղաքական ու տնտեսական աշխատանքը կազմակերպել ավելի արդյունավետորեն: Բոլոր ստորաբաժանումներն ու աշխատանքային տեղամասերը հիմնականում ապահովված են քաղաքականապես հասուն, գործունյա, պրոֆեսիոնալ պատրաստվածություն ունեցող կադրերով: Սոցիալիստական աշխատանքի հերոս Ս. Պետրոսյանը, Աշխատանքային փառքի երեք աստիճանների շքանշանակիր Վ. Ազիզյանը, եռակցող, Լենինի և Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր Ռ. Ղալթախչյանը, օպերատոր, Հոկտեմբերյան հեղափոխության շքանշանակիր Ռ. Ղալումյանը, Աշխատանքային փառքի երրորդ աստիճանի ասպետ Հ. Կասինյանը, որոնց անունները լայնորեն հայտնի են հանրապետության աշխատավորությանը, մշտապես գտնվում են նորի ու առաջավորի ավանգարդում, հանդես գալիս լավ նախաձեռնություններով, անձնական օրինակ ցույց տալիս կոլեկտիվի մնացած անդամներին: Ձեռնարկության տեխնոլոգիական բարդ հանգույցների ղեկավարումը վստահված է արտադրության լավագույն հրամանատարներ Գ. Ավագյանին, Ֆ. Մարկոսյանին, Վ. Ծահնազարյանին, որոնք, որոնելով աշխատանքի կազ-



մակերպման նոր, առաջավոր մեթոդներ, արդարացնում են կոլեկտիվի վստահությունը, հաջողությամբ ապահովում պլանային առաջադրանքների կատարումը:

Ակտիվ, ստեղծագործական աշխատանք են ծավալում միավորման գիտական կադրերը: Ձեռնարկության գիտական կենտրոնում՝ պոլիմերների համամիութենական ինստիտուտում, ներգրավված են գիտության երեք դոկտոր, 57 թեկնածու, որոնք զգալի ավանդ են ներդնում գիտատեխնիկական նվաճումները արտադրության մեջ ներդնելու, ձեռնարկության արտադրատնտեսական առաջընթացն ապահովելու գործում:

ՍՄԿԿ XXVII համագումարի, Կենտկոմի ապրիլյան (1985 և 1986 թթ.), հունիսյան (1986 թ.) պլենումների որոշումները ելակետ են դարձել մեզ համար կադրերի հետ տարվող աշխատանքում: Կուսկոմիտեն լուրջ խնդիրներ և առանձնակի պահանջներ է դնում գիտական կադրերի առջև, որոնց գործելակերպով, ստեղծագործական եռանդով է մեծապես պայմանավորված արտադրության որակական վերափոխումների հիման վրա նրա ինտենսիվացման ապահովումը: Ինստիտուտի կուսկազմակերպությունը հետևողականորեն զբաղվում է գիտնականների գործունեության արմատական վերակառուցման հարցերով, փորձում է նրանց ուժերը նպատակամղել արտադրության առջև ծառացած հրատապ պրոբլեմների լուծմանը: Համագումարից հետո անցած ամիսներին ամրապնդվել է գիտություն—արտադրություն կապը, լուծվել են մի շարք արմատական արտադրական խնդիրներ. բութադիենից քլորոպրենի ստացման, կաուչուկի, քլորի արտադրություններում ներդրվել են գիտական նոր մշակումներ, իրականացվել են առաջավոր տեխնոլոգիայի արմատավորման միջոցառումներ, որոնք հնարավորություն են տվել զգալիորեն բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, բարելավել շրջակա միջավայրը:

Հատկանշական է հետևյալ օրինակը: Բութադիենից քլորոպրենի ստացման արտադրությունում թողարկվող արտադրանքի՝ քլորոպրենի բաղադրության մեջ կողմնակի նյութերի քանակը նախատեսվածից բարձր էր: Անհրաժեշտություն էր առաջացել մշակել տեխնոլոգիական նոր պրոցես, որին էլ ձեռնամուխ եղան ինստիտուտի գիտաշխատողները: Եվ շուտով № 24 լաբորատորիայի կոլեկտիվը, քիմիական գիտությունների թեկնածու Ս. Հակոբյանի ղեկավարությամբ, հասավ ցանկալի արդյունքի: Ներդրման գործում ներգրավվեցին նաև արտադրության ինժեներատեխնիկական աշխատողները, մասնավորապես արտադրության պետի տեղակալ Գ. Խաչանյանը, ապարատավարների բրիգադը՝ Հ. Կասինյանի ղեկավարությամբ: Նրանք միավորվեցին մեկ ընդհանուր՝ գիտատեխնիկական ստեղծագործական կոլեկտիվի մեջ: Նոր պրոցեսը ներդրվեց ժամկետից զգալիորեն շուտ: Դրա շնորհիվ կատարելագործվեց քլորոպրենի ստացման տեխնոլոգիան, բարձրացավ նրա որակը, ձեռնարկությունն ստացավ ավելի քան տասը միլիոն ռուբլու տնտեսական օգուտ: Այդ նորույթը համոզիչ կերպով ցույց տվեց, որ տնտեսական վերակառուցումն արդյունավետ ներգործություն է ունենում կադրերի մտածողության ու հոգեբանության վրա, նրանց համակում խոր հավատով գիտատեխնիկական նվաճումների ներդրման և դրանց արդյունավետության բարձրացման ռեալության նկատմամբ: Տեխնիկական նորամուծությունը կոլեկտիվի մարդկանց առջև բացեց նախաձեռնության ու ստեղծագործական ակտիվության դրսևորման լայն ասպարեզ:

Այս ձեռքբերումները, ինչ խոսք, պայմանավորված են աշխատանքի հմուտ ղեկավարմամբ, արտադրության գործերի նկատմամբ կուսակցական ազդեցության ուժեղացմամբ: Արդյունավետ հսկողություն սահմանելով ինստիտուտի կոլեկտիվի գործունեության վրա՝ կուսկոմիտեն նիստերից մեկում լսեց միավորման գլխավոր դիրեկտորի գիտության գծով տեղակալ, քիմիական գիտությունների դոկտոր Գ. Մարտիրոսյանի հաշվետվությունը՝ ձեռնարկությունում գիտատեխնիկական առաջընթացի արագացման խնդիրների լուծման վերաբերյալ: Հաջողությունների հետ միաժամանակ նշվեց, որ գիտական մշակումների ներդրման որոշ աշխատանքներ ձգձգվում են, դեռևս ցածր է դրանց արդյունավետությունը:

Լուրջ պահանջներ ներկայացնելով գիտական կադրերին՝ կուսկոմիտեն հետևողական աշխատանք է ծավալում նաև արտադրության մարդկանց նորովի, ստեղծագործաբար աշխատելու ոգով դաստիարակելու, նրանց պատասխանատվությունն է՛լ ավելի բարձրացնելու նպատակով: Արդեն նկատելի են առաջին տեղաշարժերը:

Մի ժամանակ քլորի արտադրության բաց էլեկտրոլիզի տեղամասի մոնտաժման աշխատանքները կատարվում էին կապալառու շինարարական վարչությունների ուժերով: Տեսնելով աշխատանքում առաջացող դժվարությունները և որոնելով դրա ոճի վերակառուցման առավել արդյունավետ ուղիներ՝ արտադրության կոլեկտիվը արտադրության պետ, միավորման կուսկոմիտեի անդամ Վ. Ծաղկազարյանի ղեկավարությամբ որոշեց էլեկտրոլիզի վաննաների հավաքման ու մոնտաժման աշխատանքները կատարել սեփական ուժերով:

Գործի նկատմամբ նորովի մոտեցման այդպիսի օրինակները եզակի չեն: Նման վերաբերմունքի կարելի է հանդիպել քլորոպրենային կաուչուկների նոր արտադրությունում, որի կոլեկտիվի առջև ծառացած է արտադրության հզորության յուրացման հարցը: Այս արտադրությունը, որը հագեցած է ավտոմատ տեխնոլոգիական հարահոս գծերով, տասից ավելի բնապահպանական օբյեկտներով, հնարավորություն է ընձեռում կրճատել ձեռքի աշխատանքը, մի շարք աշխատատար պրոցեսներ, բարելավել արտադրանքի որակը և ձեռնարկության էկոլոգիական պայմանները: Միավորումում թողարկվող արտադրանքի որակի շեշտակի բարձրացման հիմնական ուղին կուսկոմիտեն և տեխնիկական ղեկավարությունը տեսնում են այս արտադրության հզորության օր առաջ յուրացման մեջ: Ուստի ավելի է կարևորվում արտադրությունը համապատասխան կադրերով համալրելու, նրանց ակտիվությունը բարձրացնելու հարցը: Կուսկոմիտեն, ելնելով ստեղծված իրավիճակից, իր նիստերից մեկում քննարկեց արտադրության կադրերի կոմպլեկտավորման վիճակը, ընդունեց համապատասխան որոշում: Այլ արտադրամասերից այստեղ տեղափոխեցինք եռանդուն, գործունյա տնտեսական ղեկավարներ Վ. Ապրեսյանին, Ս. Մելիքյանին, Ֆ. Գալստյանին, Գ. Ասլիկյանին և ուրիշների: Սակայն հարկ է նշել, որ արտադրությունը դեռևս լիովին ապահովված չէ համապատասխան բարձրորակ բանվորական և ինժեներական կադրերով, և այս ասպարեզում դեռ անելիքներ քիչ չկան:

Սոցիալ-տնտեսական զարգացման արագացման այնպիսի գործոններ, ինչպիսիք են թողարկվող արտադրանքի որակի բարելավումը, խնայողության ռեժիմի ուժեղացումը, կարգապահության ու կազմակերպվածության ամրապնդումը, պահանջում են, որ դրանցով զբաղվենք հետևողականորեն: Կոմունիստների ուժերի ճիշտ տեղաբաշխումը, այն հանգամանքը, որ տնտեսական ղեկավարների 93, միջին օղակների ղեկավարների 47 տոկոսը կոմունիստներ են, հնարավորություն է ընձեռում վերահսկողությունից դուրս չթողնել ոչ մի կազմակերպություն: **«...Կուսակցության մեջ չկան և չպետք է լինեն վերահսկողությունից դուրս, քննադատության առաջ փակ կազմակերպություններ, չկան և չպետք է լինեն կուսակցական պատասխանատվությունից պատնեշված ղեկավարներ»,**— նշված է ՍՄԿԿ XXVII համագումարին տրված Կենտկոմի Քաղաքական զեկուցման մեջ (էջ 113—114): Այս կարևոր դրույթը մեզ համար գործողության ուղեցույց է: Այժմ, երբ կուսակցությունն առաջ է քաշել արտադրանքի պետընդունման հրատապ խնդիրը, ավելի քան երբևէ բարձրանում է կադրերի դերը: Իր հերթական նիստում քննարկելով այդ հարցը՝ միավորման կուսկոմիտեն մշակեց միջոցառումների ծրագիր և այն դրեց գործողության մեջ: Ըստ այդ ծրագրի, սկզբնական կուսկազմակերպությունները, ամենից առաջ, կոմունիստների և ապա բանվորական կոլեկտիվի շրջանում ծավալում են քաղաքական-մասսայական և բացատրական ակտիվ աշխատանք: Սեմինարների, դիսպետչերական խորհրդակցությունների ժամանակ մեկնաբանվում, պարզաբանվում են արտադրանքի պետընդունման էությունը, նշանակությունը ու կարևորությունը սոցիալ-տնտեսական զարգացման արագացման կուրսի իրականացման գործում:

Առանձնացվել են չորս խմբեր, որոնք վերահսկողություն են իրականացնում տարբեր օղակներում և փուլերում: Այստեղ կուսկոմիտեն հատուկ նշանակություն է տալիս պետընդունման գործով զբաղվող կադրերի, համապատասխան մասնագետների ընտրությանը՝ ջանալով ընդգրկել քաղաքական ու տեխնիկական լայն մտահորիզոն ունեցող մարդկանց:

Կոմունիստների ուժերի ճիշտ տեղաբաշխումը հաջողության երաշխիք է: Դրանում համոզվել ենք մեր միավորման աշխատանքի պրակտիկայով: Կոնկրետ մեզ մոտ արտադրության և հասարակական-քաղաքական աշխատանքի նկատմամբ կուսակցական ազդեցության ուժեղացմանը մեծապես նպաստում է նաև այն հանգա-



մանքը, որ միավորման հասարակական կազմակերպությունների ընտրովի մարմիններում ընդգրկված են 420 կոմունիստներ: Արհմիութենական սկզբնական կազմակերպությունների նախագահների 45 տոկոսը, կոմերիտական կազմակերպությունների քարտուղարների՝ 45, ժողվերահսկողության խմբերի նախագահների 98 տոկոսը ՍՄԿԿ անդամներ են:

Կուսկոմիտեն սեմինար-պարապմունքների, անհատական զրույցների միջոցով սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների ուշադրությունը բևեռում է հրատապ լուծում պահանջող հարցերի վրա, ուղղություն տալիս նրանց աշխատանքին՝ ելնելով կուսակցության համագումարի այն դրույթից, որ **«չի լինում կոմունիստի ավանգարդային դեր առհասարակ, այն արտահայտվում է պրակտիկ գործերով»** (էջ 110):

Կուսակցական ակտիվի հետ տարվող աշխատանքն ավելի նպատակասլաց ու արդյունավետ դարձնելու համար սահմանել ենք սկզբնական կուսկազմակերպության քարտուղարի օր, որի ժամանակ միավորման կուսկոմիտեի քարտուղարը, նրա տեղակալները լինում են կազմակերպություններում, ծանոթանում գործերի վիճակին, օգնում նրանց քարտուղարներին՝ գտնելու հուզող հարցերի պատասխանները:

Ժամանակակից արտադրության կառավարման, աշխատանքի կազմակերպման հաջողությունը մեծապես պայմանավորված է տնտեսական ղեկավարների արդյունավետ գործունեությամբ, նրանց ձեռներեցությամբ, գործի նկատմամբ ցուցաբերվող ճիշտ մոտեցմամբ: Ելնելով այդ կարևոր հանգամանքից՝ կուսկոմիտեն հետևողական աշխատանք է տանում նաև տնտեսական ղեկավար կադրերի գործունեության նկատմամբ կուսակցական ազդեցությունն ուժեղացնելու համար: Այդ նպատակով լայնորեն կիրառվում են պրակտիկայում իրենց արդարացրած այնպիսի ձևեր, ինչպիսիք են հաշվետվությունների քննարկումը, կուսակցական բնութագրերի հաստատումը: Կուսկոմիտեն լսել է միավորման գլխավոր էներգետիկ Ա. Հովհաննիսյանի, գլխավոր ինժեներ Լ. Ազատյանի, գլխավոր դիրեկտորի՝ տնտեսավարման գծով տեղակալ Ա. Միրումյանի հաշվետվությունները, նրանց տվել կոնկրետ, գործի շահերից բխող հանձնարարականներ: Քննարկելով գործարանի գլխավոր ինժեներ Ա. Բախտամյանի հաշվետվությունը՝ կոմիտեն նրան հանձնարարեց մոբիլիզացնել կոլեկտիվի մարդկանց ուժերը՝ ժամանակին գործարկելու կարբինոլի ստացման նոր տեղակայանքը: Քացախաթթվի արտադրության պետ Ֆ. Մարկոսյանի հաշվետվության քննարկման ժամանակ շեշտը դրվեց արտադրանքի որակի բարելավման, խնայողության ռեժիմի ուժեղացման նպատակով տարվող աշխատանքի վրա:

Տնտեսական կադրերի հետ տարվող աշխատանքի արդյունավետ ձևեր են նրանց ղեկավարման ոճի առանձնահատկությունների վերլուծությունն ու փորձի ընդհանրացումը: Անցած տարի կաուչուկի արտադրության պետ նշանակվեց Գ. Ավագյանը: Նա կարճ ժամանակամիջոցում կարողացավ կոլեկտիվի ուժերը համախմբել և արտադրությունը դուրս բերել նոր բնագիծ: Գ. Ավագյանի աշխատանքի ոճի վերլուծությունը ցույց տվեց, որ նա, ճիշտ ըմբռնելով նորովի աշխատելու անհրաժեշտությունը, ստեղծագործական որոնումների միջոցով գտնում է աշխատանքի կազմակերպման նոր, առավել արդյունավետ ձևեր, հասնում որոշակի հաջողության: Նախորդ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ կաուչուկի արտադրության աճը կազմել է 30 տոկոս: Կոլեկտիվը պարբերաբար կատարում է իր առաջադրանքներն ու ստանձնած պարտավորությունները:

Կուսկոմիտեն հոգ է տանում, որպեսզի աշխատանքային կոլեկտիվներն ակտիվորեն մասնակցեն կադրերի ընտրության, տեղաբաշխման հարցերի լուծմանը, լիարժեք օգտվեն իրենց տրված լայն իրավունքներից: Կուսկոմիտեն, միավորման ղեկավարությունը պաշտպանեցին պոլիմերների ինստիտուտի № 24 լաբորատորիայի կոլեկտիվի առաջարկությունը՝ լաբորատորիայի վարիչի պաշտոնում առաջադրելով քիմիական գիտությունների թեկնածու Ս. Հակոբյանին: Եվ նա, պետք է ասել, արդարացնում է իր նկատմամբ ցուցաբերված վստահությունը: Նման ձևով, աշխատանքային կոլեկտիվի կարծիքը հաշվի առնելով, քացախաթթվի արտադրության 1—17 արտադրամասի պետ նշանակվեց Յու. Հարությունյանը:

Կադրային ճիշտ քաղաքականության երաշխիքը հուսալի ռեզերվի առկայությունն է: Դրանում մեկ անգամ չէ, որ համոզվել ենք: Կուսկոմիտեն պլանաչափ

աշխատանք է տանում կադրային ռեզերվի հետ, որտեղ ընդգրկված են 76 աշխատողներ: Քննարկումների, սիստեմատիկ հսկողության միջոցով բացահայտում ենք նրանց կազմակերպչական ունակությունները, զարգացնում աշխատանքի նկատմամբ ստեղծագործական մոտեցման հակումները՝ միշտ ելակետ ունենալով ռեզերվում հեռանկարային երիտասարդներ ընդգրկելու անհրաժեշտությունը: Վերջին մեկ տարում ռեզերվից պատասխանատու աշխատանքի են առաջ քաշվել վեց մարդ: Բոլոր դեպքերում չափանիշ են ծառայել մարդու քաղաքական ու գործարար հատկանիշները, ընդունակությունները, նաև անձնական ներդրումը ընդհանուր հաջողությունների ապահովման գործում:

Կադրերի որակական կազմի բարելավման լուրջ ազդակ է ատեստացիան: Վերջին շրջանում խիստ ուժեղացվել է կուսակցական պահանջկոտությունը ատեստացիոն հանձնաժողովների գործունեության նկատմամբ: Ընդ որում ատեստացիայի ժամանակ կարևորվում են ոչ միայն աշխատողի գիտական, տեխնիկական գիտելիքներն ու գործարար հատկանիշները, այլև անձնական ներդրումը ընդհանուր ձեռքբերումներում, քաղաքական պատրաստվածությունը:

Ժամանակակից արտադրությունը պահանջում է տեխնիկապես գրագետ, ունակ կադրեր: Հաշվի առնելով այդ իրողությունը՝ մենք նկատելի տեղաշարժեր ենք կատարել նաև նրանց ուսուցման համակարգի կատարելագործման ասպարեզում: Միավորման տեխնիկական ուսուցման բաժնին առընթեր դասընթացներում ամեն տարի իրենց որակավորումն են բարձրացնում տասնյակ բանվորներ: Առանձին դասընթացներ են գործում հերթափոխերի պետերի, բրիգադավարների համար: Այս տարի, տնտեսավարման նոր մեթոդներին անցնելուց առաջ, միավորման տնտեսագիտական ծառայության բոլոր բաժինների ղեկավարները վերապատրաստման դասընթացներ անցան Մոսկվայի կադրերի որակավորման բարձրացման ինստիտուտում:

Կուսկոմիտեն հատուկ ուշադրություն է նվիրում նաև երիտասարդների աշխատանքային դաստիարակության, մասնագիտական կողմնորոշման հարցերի լուծմանը: Ներկայումս 201 աշխատողներ սովորում են բուհերում, 108-ը՝ միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում՝ զուտ քիմիական մասնագիտությունների գծով:

Այսօր առանց գաղափարադաստիարակչական աշխատանքի արմատական վերակառուցման անհնար է ձևավորել նոր հոգեբանություն, նոր վերաբերմունք ժամանակի առաջադրած խնդիրների նկատմամբ: Եվ միանգամայն բնական է, որ կուսկոմիտեն վճռական նշանակություն է տալիս պրոպագանդիստական կադրերի հետ տարվող աշխատանքին: Այսօր միավորման 85 տնտեսական ղեկավարներ պրոպագանդիստներ են, նրանք գաղափարախոսական աշխատանքը սերտորեն շաղկապում են սոցիալ-տնտեսական խնդիրների հետ, այն ի սպաս դնում արտադրատնտեսական առաջընթացին:

Որոշ դրական տեղաշարժ է կատարվել աշխատողների սոցիալ-կենցաղային պայմանների բարելավման գործում: Միավորման տարածքում արդյունաբերական և պարենային խանութների կողքին բացվեց նաև բանջարեղենի խանութ: Շուտով շահագործման կհանձնվի «Նաիրիտ» կենցաղի տունը, որի ծառայությունից կարող են օգտվել ոչ միայն մեր միավորման, այլև հարևան ձեռնարկությունների աշխատողները: Առավել հրատապ ու կենսական նշանակություն են ձեռք բերում կոլեկտիվի մարդկանց բնակարանային պայմանների բարելավման հարցերը:

Սակայն հարկ է նշել, որ կադրերի հետ տարվող աշխատանքում մենք դեռևս հանդիպում ենք ոչ քիչ դժվարությունների: Դրա պատճառն այն է, որ արագացման ու վերակառուցման անհրաժեշտությունը գիտակցել են բնավ ոչ բոլորը: Շատերին դեռևս խանգարում է իներցիան, սովորույթի ուժը: Եվ մենք դեռ շատ անելիքներ ունենք սկզբնական կուսկազմակերպությունների մարտունակության բարձրացման, կադրերի հետ տարվող աշխատանքի ոճի ու մեթոդների կատարելագործման ասպարեզում: Ելնելով դրանից՝ «Նաիրիտ» գիտաարտադրական միավորման կուսկազմակերպությունը որոնում ու գտնում է մարդկային գործոնի ակտիվացման նոր ձևեր ու եղանակներ, այն հաշվով, որ միավորման կոլեկտիվի ողջ պոտենցիալը անմնացորդ կերպով ծառայեցվի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման խնդիրների լուծմանը:

---



# ՄՇՏԱԿԱՆ ՀԱՆՁՆԱԺՈՂՈՎՆԵՐԻ ԱԿՏԻՎՈՒԹՅՈՒՆԸ

**Վ. ՈՍԿԱՆՅԱՆ**
*Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի ավագ ռեֆերենտ*

ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԴԵՊՈՒՏԱՏՆԵՐԻ սովետների մշտական հանձնաժողովներն իրենց գործունեությամբ կոչված են նպաստելու սովետի՝ որպես պետական իշխանության ներկայացուցչական մարմնի, աշխատանքի անընդհատությանն ու բարձր արդյունավետությանը, մասսաների հետ նրա կապերի ամրապնդմանը, պետական կառավարման գործում բնակչության ներգրավմանը: Մշտական հանձնաժողովների հիմնական խնդիրներն են՝ սովետում և նրա գործադիր կոմիտեում քննարկվող հարցերի վերաբերյալ եզրակացությունների նախապատրաստումը և առաջարկությունների մշակումը, ակտիվ մասնակցությունը շրջանային, գյուղական, ավանային սովետների, նրանց գործադիր կոմիտեների և վերադաս պետական մարմինների որոշումների կենսագործման կազմակերպչական աշխատանքին: Հանձնաժողովները վերահսկում են ՍՍՀՄ և Հայկական ՍՍՀ օրենսդրության պահպանման նպատակով տվյալ սովետի գործադիր կոմիտեի վարչությունների, բաժինների, շրջանի տարածքում տեղաբաշխված ձեռնարկությունների, հիմնարկների ու կազմակերպությունների ծավալած գործունեությանը, աջակցում ընտրողների պատվիրանների կատարմանը:

Երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու գործում կարևորելով սովետների և նրանց մշտական հանձնաժողովների դերը՝ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովը XXVII համագումարին տված Քաղաքական զեկուցման մեջ ասաց. «Պետք է շատ ավելի արդյունավետորեն անցկացնել սովետների նստաշրջանները, ուժեղացնել մշտական հանձնաժողովների վերլուծական և վերահսկիչ գործունեությունը, բարելավել դեպուտատական հարցապնդումների պրակտիկան: Հանձնաժողովների հանձնարարականները, դեպուտատների առաջարկություններն ու դիտողությունները պետք է մանրակրկիտ քննարկվեն և հաշվի առնվեն գործադիր մարմինների կողմից» (էջ 79):

Պլանավորման, տնտեսության կառավարման բարելավման, արտադրության արդյունավետության և արտադրանքի որակի բարձրացման, գիտատեխնիկական նվաճումների և առաջավոր փորձի արմատավորման, տնտեսական և սոցիալական զարգացման պլանների կատարման վերահսկման, անտնտեսվարության և շռայլումների դեմ պայքարի հետ կապված հարցերի քննարկումը մշտական հանձնաժողովների

հիմնական և թուն պարտականությունն է: Այդ իրողությունը ճիշտ են ընկալում Ճամշադինի շրջանի տեղական սովետների մշտական հանձնաժողովները: Նրանք իրենց ուշադրության կենտրոնում են պահում շրջանում լայն սպառման ապրանքների թողարկման, գյուղերի ու ավանների բարեկարգման, մատաղ սերնդի կրթության ու դաստիարակության, առևտրի, հասարակական սննդի, առողջապահության, բնակչության կենցաղային սպասարկման բարելավման գործը, այն ամենը, ինչը նպաստում է սովետական մարդկանց բարեկեցության անշեղ բարձրացմանը: Այդ գործին նրանք ակտիվորեն մասնակից են դարձնում և արդյունավետորեն օգտագործում դեպուտատների ուժերը, նրանց օգնությամբ կազմակերպական-մասսայական աշխատանքը սերտորեն զուգակցում տնտեսական և սոցիալ-կուլտուրական շինարարության կոնկրետ խնդիրներին, նպաստում դրանց լուծմանը: Մշտական հանձնաժողովներն ակտիվորեն մասնակցում են սովետների նստաշրջաններում քննարկվելիք հարցերի նախապատրաստմանն ու ընդունած որոշումների կենսագործմանը: Վերջերս, օրինակ, Ճամշադինի շրջսովետի նստաշրջանը ՍՄԿԿ XXVII համագումարի որոշումների լույսի ներքո քննարկեց իր առջև ծառացած խնդիրները: Հարակից զեկուցումով հանդես եկավ շրջսովետի արդյունաբերության և շինարարության մշտական հանձնաժողովի նախագահ Ս. Մելքոնյանը: Հարցի նախապատրաստմանը ակտիվորեն մասնակցել էին նաև այլ հանձնաժողովներ: Նրանց և դեպուտատների գործուն մասնակցության շնորհիվ նստաշրջանն անցավ բարձր մակարդակով:

Հատկանշական է, որ նստաշրջանի որոշման կատարմանը հետամուտ է լինում ոչ միայն գործադիր կոմիտեն, այլև քննարկված հարցին առնչվող մշտական հանձնաժողովը: Այդ առումով դրվատանքի է արժանի շրջսովետի ագրոարդյունաբերության և բնության պահպանության մշտական հանձնաժողովի (նախագահ՝ Հ. Այվազյան) գործունեությունը: Հանձնաժողովը շրջսովետի նստաշրջանի քննարկմանն է ներկայացրել «Կոլտնտեսություններում և սովխոզներում աշխատանքի կազմակերպման կապալային եղանակի արմատավորման ընթացքի մասին» հարցը: Քննարկումն անցել է դեպուտատների ակտիվ մասնակցությամբ և լավ արդյունք է տվել: Այսօրվա դրությամբ կապալային եղանակը լայնորեն արմատավորվել է շրջանի բոլոր կոլեկտիվ և պետական տնտեսություններում:

Լավ նախաձեռնությունների հեղինակ է երիտասարդական գործերի մշտական հանձնաժողովը: Անցյալ տարի այն իր հերթական նիստն անցկացրեց գյուղական, ավանային սովետների համանուն հանձնաժողովների հետ համատեղ: Քննարկման էր դրված կոլտնտեսություններում ու սովխոզներում աշխատող երիտասարդության կուլտուրական հանգստի կազմակերպման հարցը: Հանձնաժողովի արտագնա նիստից հետո ընդունված որոշման կատարումը վերցվեց հսկողության տակ և գործի վերածվեց: Էապես բարելավվեց շրջանի երիտասարդության կուլտուրական հանգստի կազմակերպումը:

Հետաքրքիր ու բազմաբովանդակ է դարձել Արծվաբերդի գյուղական սովետի մշտական հանձնաժողովների գործունեությունը: Կապի ու տրանսպորտի, ինչպես նաև գյուղատնտեսության և բնության պահպանության մշտական հանձնաժողովների նախաձեռնությամբ քննարկվել և լուծվել է շատ կարևոր մի հարց: Տարիներ շարունակ կոլտնտեսության տրանսպորտային միջոցները՝ ավտոմեքենաներն ու տրակտորները, աշխատանքից հետո կանգնեցվում էին վարորդների բակերում: Շատ էր խոսվել այդ մասին, սակայն գործը տեղից չէր շարժվել, իսկ մեքենաները բակերում կանգնեցնելը ոչ մի լավ բան չէր խոստանում: Փաստորեն տրանսպորտը դուրս էր մնացել հսկողությունից և կողմնակի եկամտի աղբյուր դարձել առանձին մարդկանց համար: Մշտական հանձնաժողովները մանրամասն ուսումնասիրեցին ստեղծված իրավիճակը և հանգեցին այն եզրակացության, որ հնարավոր է վերջ տալ այդ երևույթին: Հարցը ներկայացվեց գործկոմի նիստի քննարկմանը, որոշվեց մեկընդմիշտ արգելել տրանսպորտի միջոցները վարորդների բակերում կանգնեցնելը: Այնուհետև կարգի բերվեց ավտոկայանը և յուրաքանչյուր մեքենայի համար առանձին տեղ հատկացվեց: Կարճ ասած, կանխվեց կոլտնտեսության տրանսպորտային միջոցները անաշխատ եկամտի միջոց դարձնելու բուն հնարավորությունը:



Ակտիվ գործունեության շատ օրինակներ կարելի է թվարկել Մովսեսի, Վարագավանի, Նորաշենի, Վ. Կարմիրաղբյուրի, Ծաղկավանի, Չորաթանի գյուղական սովետների մշտական հանձնաժողովների գործունեությունից: Նրանք ակտիվորեն առաջ են քաշում արտադրության կազմակերպմանը, բնակավայրերի բարեկարգմանը, սպասարկման ոլորտի բարելավմանը վերաբերող շատ հարցեր, օգնում գործադիր կոմիտեներին՝ դրանց լուծման գործում:

ՍՄԿԿ XXVII համագումարում նշվեց, որ մարդկանց առողջության պահպանումը և ամրապնդումը առաջնակարգ կարևորության գործ է: Առողջության պրոբլեմը պետք է դիտել սոցիալական լայն դիրքերից: Այս պահանջներից լուրջ հետևություն են անում նաև առողջապահության և սոցապահովության մշտական հանձնաժողովները: Այսպես, շրջսովետի առողջապահության և սոցիալ-ապահովության մշտական հանձնաժողովի ուշադրության կենտրոնում են ազգաբնակչության բուժպրոֆիլակտիկ և դեղորայքային սպասարկման որակի ու կուլտուրայի բարձրացման հարցերը: Դրանք քննարկման առարկա են դառնում հանձնաժողովի նիստերում: Եվ առողջապահական օբյեկտները վերջին տարիներին որոշ հաջողությունների են հասել: Ամրապնդվել է բուժպրոֆիլակտիկ հիմնարկների նյութատեխնիկական բազան, ձեռք են բերվել անհրաժեշտ սարքավորումներ, բարձրացվել է բժիշկների և միջին բուժաշխատողների մասնագիտական որակավորումը: 1985 թվականը կարելի էր շրջանում համարել առողջապահական հիմնարկների շինարարության տարի: Ներկայումս ընթացքի մեջ է կենտրոնական հիվանդանոցի 60 մահճակալանոց կցաշենքի և կենտրոնական շրջանային դեղատան եռահարկ շենքի շինարարությունը: Սանէպիդկայանն արդեն տեղափոխվել է համապատասխան մակերեսով նոր շենք:

Շրջանային և գյուղական սովետները կիրառում են մշտական հանձնաժողովների ակտիվության բարձրացման զանազան ձևեր ու մեթոդներ: Իրեն արդարացրել է նրանց հաշվետվությունների քննարկման ձևը: Վերջերս շրջանային սովետի նստաշրջանում քննարկվեց արդյունաբերության և շինարարության մշտական հանձնաժողովի հաշվետվությունը: Արձանագրվեց, որ հանձնաժողովը պարբերաբար հրավիրում է նիստեր, քննարկում շրջանի համար կենսական նշանակություն ունեցող հարցեր: Այսպես, գործարար մթնոլորտում քննարկվել են ծխախոտի ֆերմենտացիոն և գինու գործարաններում գյուղատնտեսական հումքի ընդունման նախապատրաստման, արդյունաբերական ձեռնարկություններում աշխատատար պրոցեսների մեքենայացման, արտադրության մեջ նոր տեխնիկայի ներդրման և այլ հարցեր: Ելնելով ՍՄԿԿ XXVII համագումարի պահանջներից՝ հանձնաժողովը մշակել է 1986—1990 թթ. միջոցառումների պլան, որտեղ առանձնահատուկ տեղ է հատկացված արդյունաբերության ինտենսիվ զարգացմանը և գիտատեխնիկական առաջընթացի արագացմանը: Հանձնաժողովի ակտիվ գործունեության պտուղներն արդեն երևում են. վերակառուցման մեծամասշտաբ աշխատանքներ են տարվում պահածոների գործարանի բոլոր արտադրամասերում և ծխախոտի ֆերմենտացիոն գործարանում, բարեկարգվում, ծաղկապատվում և կանաչապատվում է բանվորական Այգեպար ավանը:

Շրջսովետի գործկոմն ամենօրյա օգնություն է ցույց տալիս մշտական հանձնաժողովներին: Հանձնաժողովի անդամները հաճախակի սեմինար խորհրդակցությունների են հրավիրվում գործադիր կոմիտեում: Նրանք ստանում են մեթոդական խորհուրդներ, ունկնդրում դասախոսություններ:

Մեծ անելիքներ ունեն մշտական հանձնաժողովներին առընթեր դեպուտատական խմբերն ու պոստերը: Ակտիվորեն են գործում հատկապես Պառավաքարի, Մովսեսի, Արծվաբերդի, Այգեպարի պահածոների գործարանի խմբերն ու պոստերը: Նրանք հետևում են բերքահավաքի և կերի կուտակման հաջող անցկացմանը, հումքի անկորուստ վերամշակմանն ու բարձրորակ պահածոների պատրաստմանը:

Այս ամենը լավ է, սակայն դեռևս թույլ է մշտական հանձնաժողովների ու դեպուտատական խմբերի համագործակցությունը: Առանձին դեպքերում նույնիսկ անտեսվում է վերջիններիս դերը արտադրական հարցերի լուծման գործում, իսկ հաճախ էլ նրանց առաջարկությունները մնում են անհետևանք: Բավականին թերու-

թյուններ կան կուլտուր-կենցաղային, կապի ու տրանսպորտային սպասարկման, բնակավայրերի բարեկարգման և առևտրի բնագավառներում: Հարցեր էլ կան, որոնց լուծումը կապված է շրջանի սոցիալ-տնտեսական զարգացման հետ և դրա համար պահանջվում է վերադաս մարմինների ակտիվ միջամտությունը: Ահա մի օրինակ. Հանրապետության և Միության այլ բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական կրթության հաստատություններում ներկայումս սովորում են շամշադինցի 1.176 ուսանողներ, այդ թվում միայն Երևանի պոլիտեխնիկական ինստիտուտում՝ 284-ը: Հայրենի շրջան վերադառնալով՝ նրանցից շատերը, ըստ մասնագիտության աշխատանք չգտնելով, ստիպված կլինեն հեռանալ շրջանից և գործ փնտրել ուրիշ վայրերում: Երիտասարդությանը տեղում պահելու, նրա ուժերը հեռավոր լեռնային շրջանի բարգավաճմանը ծառայեցնելու համար ժամանակը չէ՞, արդյոք, որ հանրապետության պետպլանը մտածի շրջանի խոշոր բնակավայրերում բացելու արդյունաբերական ձեռնարկությունների մասնաճյուղեր և արտադրական օբյեկտներ:

ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումը հատուկ ուշադրություն նվիրեց սովետների աշխատանքի մի այնպիսի կարևոր ձևի արդյունավետ կիրառման վրա, ինչպիսին է դեպուտատական հարցապնդումը: ՍՍՀՄ սահմանադրության 105 հոդվածին համապատասխան դեպուտատն իրավունք ունի հարցապնդում անելու համապատասխան պետական մարմինների ու պաշտոնատար անձանց: Վերջիններս պարտավոր են պատասխան տալ հարցապնդմանը սովետի նստաշրջանում, իսկ պետական, հասարակական մարմինների, ձեռնարկությունների, հիմնարկների ու կազմակերպությունների ղեկավարները պետք է առանց ձգձգելու ընդունեն դեպուտատին և սահմանված ժամկետներում քննության առնեն նրա առաջարկությունները: Դեպուտատի հարցապնդմամբ քիչ հարցեր չեն լուծվել նաև Շամշադինի շրջանում: Այսպես, լուծվել են Այգեձոր գյուղի «Գոմեր» թաղամասի բնակիչներին խմելու ջրով, «Միջին» թաղամասի բնակիչներին՝ ոռոգման ջրով ապահովելու հարցերը, Չինարիի տնտեսությանը տրամադրվել են լրացուցիչ ավտոմեքենաներ, Ծաղկավանում կառուցվել է կապի բաժանմունքի շենք:

Ցավոք, միշտ չէ, որ մշտական հանձնաժողովները հասնում են ցանկալի արդյունքի շրջանի կամ գյուղի առջև ծառացած կենսական խնդիրների լուծման գործում: Այսպես, շրջսովետի նստաշրջանը 1985 թ. սեպտեմբերի 27-ին քննարկել է «ՍՄԿԿ Կենտկոմի 1984 թ. ապրիլյան պլենումի որոշումների կենսագործման նպատակով տարվող աշխատանքների մասին» հարցը: Հարակից զեկուցումով հանդես է եկել շրջանային սովետի առողջապահության և սոցիալական ապահովության մշտական հանձնաժողովի նախագահը: Ընդունված որոշման մեջ նշվել է, որ տարիներ շարունակ շրջանի հասարակական սննդի և առևտրի օբյեկտները չեն նորոգվել: Տասը տարուց ավելի է, ինչ նորոգման կարիք ունեն շրջկենտրոնի, Արծվաբերդի, Մովսեսի, Պառավաքարի, Նորաշենի առևտրական օբյեկտները: Սանիտարական տեսակետից անմխիթար վիճակում են Այգեպարի պահածոների, ծխախոտի ֆերմենտացիոն գործարանների, Բերդի, Նավուրի, Պառավաքարի, Ծաղկավանի բանվորական ճաշարանները: Սննդամթերք տեղափոխող ավտոմեքենաներում չեն ապահովվում սանիտարական կանոնները: Մի շարք բանվորական և դպրոցական ճաշարաններում տաք ճաշեր չեն պատրաստվում: Այս հարցերի կապակցությամբ շրջսովետի նստաշրջանը հանձնարարություններ է տվել շրջկոոպի վարչության նախագահին, սակայն անցել է բավական ժամանակ, իսկ թերությունները չեն վերացվել:

Այգեպարի գյուղական սովետի արդյունաբերության, շինարարության և կոմունալ տնտեսության մշտական հանձնաժողովը (նախագահ՝ Նազիկ Մխիթարյան) ուսումնասիրել է բնակչությանը խմելու ջրով ապահովելու հարցը: Ջուրն անցյալում ավան է բերվել ֆերմենտացիոն գործարանի աշխատողների ջանքերով: Հետագայում ավանում կառուցվել են արդյունաբերական ուրիշ ձեռնարկություններ, զարկ է տրվել բնակելի շենքերի կառուցմանը, և, բնական է, որ խմելու ջուրը ավանի այսօրվա պահանջները չի բավարարում: Հանձնաժողովն այդ հարցը մտցրեց սովետի նստաշրջանի քննարկմանը, ընդունվեց ծավալուն որոշում, բայց այսօրվա վիճակով ավանի ջրի հարցը մնում է չլուծված:

Հաճախ էլ մշտական հանձնաժողովները հարկ եղած չափով չեն միջամտում այնպիսի գործերի կարգավորմանը, որոնք գտնվում են իրենց անմիջական իրավասության շրջանակում: Այսպես, բարեկարգման խիստ կարիք ունի Մովսես, Նավուր, Արծվաբերդ գյուղերի հեռախոսային ցանցը: Դեռևս ցածր է սպասարկման կուլտուրան կապի շրջանային հանգույցում: Այս մասին խոսվել է նաև շրջսովետի վերջին նստաշրջանում, սակայն դեռևս առկա են դժգոհությունները և բողոքները: Հարկ է, որպեսզի շրջսովետի արդյունաբերության, կապի և տրանսպորտի մշտական հանձնաժողովը և կապի շրջանային հանգույցը հաճախակի անդրադառնան այս հարցերին, վերացնեն նկատված թերությունները և արմատապես բարելավեն այդ գործը:

Տասնմեկերորդ հնգամյակի տարիներին շրջանում գազիֆիկացման բավականին աշխատանքներ են կատարվել, սակայն, որքան էլ զարմանալի է, գազիֆիկացված գյուղերում գազի օգտագործման իրավունք չի տրվել կուլտուրայի տներին, ակումբներին, դպրոցներին և հասարակական նշանակության մյուս օբյեկտներին: Նավուր, Ներքին Կարմրաղբյուր, Չինարի, Այգեձոր գյուղերի, Այգեպարի բանավանի բնակիչները խնդրում են արագացնել գազիֆիկացման աշխատանքները: Այս փաստերը վկայում են, որ արդյունաբերության և շինարարության մշտական հանձնաժողովները նույնպես անտարբերություն են ցուցաբերել հարցերի լուծման նկատմամբ:

Կուսակցությունը մեծ և պատասխանատու խնդիրներ է դրել տեղական սովետների առջև: Իսկ մշտական հանձնաժողովները՝ սովետների այդ կարևոր մարմինները, պետք է լինեն համագումարի որոշումների կենսագործման, սոցիալ-տնտեսական զարգացման արագացման համար մղվող պայքարի առաջին գծում: Այսպես են ընկալում իրենց խնդիրները Շամշադինի տեղական սովետների մշտական հանձնաժողովները և նրանցում ներգրավված դեպուտատները:

---

# ՊԱՐԵՆԱՅԻՆ ԾՐԱԳՐԻ ԿԱՏԱՐՄԱՆ ՀԱՄԱՐ

ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԱԳՐԱՐԱՅԻՆ քաղաքականության իրականացման շնորհիվ էական տեղաշարժեր են կատարվել մեր երկրի գյուղատնտեսության, նրա հետ առնչվող ճյուղերի նյութատեխնիկական բազայի ամրապնդման գործում: ՍՄԿԿ XXVII համագումարը, հանգամանորեն անդրադառնալով այդ բնագավառին, խնդիր դրեց տասներկուերորդ հնգամյակում զգալիորեն բարելավել պարենի մատակարարումը: Նախատեսվում է ավելի քան կրկնապատկել գյուղատնտեսական մթերքների արտադրության աճի տեմպերը, ապահովել մեկ շնչին ընկնող մսի, կաթի, բանջարեղենի, պտղի սպառման զգալի հավելում: Այս գործում, անշուշտ, մեծ է ժողովրդական դեպուտատների տեղական սովետների դերը: Այդ հարցը պարզելու համար մեր արտահաստիքային թղթակից **Ն. Մովսիսյանը** վերջերս եղավ ժողովրդական դեպուտատների Աբովյանի շրջսովետի գործկոմում, շրջանի տնտեսություններում, հարցազրույց ունեցավ տեղական սովետների ու տնտեսությունների ղեկավարների հետ:

**ՀԱՐՑ.— Ի՞նչ են անում պարենային ծրագրի կատարման նպատակով Աբովյանի շրջանային և գյուղական սովետները:**

**Գ. ՄԱՆՈՒԿՅԱՆ (Աբովյանի շրջսովետի գործկոմի նախագահ).—** Պարենային ծրագրի իրականացումը բարդ ու մասշտաբային խնդիր է և պահանջում է կազմակերպվածություն, նորովի մտածելու, գործելու, արտադրությունում ճիշտ կողմնորոշվելու քաղաքականություն: Այդ առնչությամբ ՍՄԿԿ XXVII համագումարը լուրջ և կարևոր խնդիրներ դրեց նաև տեղական սովետների առջև: Նպատակն այն է, որ յուրաքանչյուր սովետ դառնա լիիրավ ու պատասխանատու տերն այն ամենի, ինչը վերաբերում է մարդկանց ամենօրյա պահանջմունքների ու կարիքների բավարարմանը, հատկացվող միջոցների, եղած հնարավորությունների ու ռեզերվների արդյունավետ օգտագործմանը, բնակչության սպասարկման բնագավառում բոլոր կազմակերպությունների աշխատանքների կոորդինացմանն ու վերահսկմանը: Դրան է նպատակամղված շրջանային և գյուղական սովետների, նրանց գործադիր կոմիտեների ու բաժինների ողջ գործունեությունը: Իմ միտքը հաստատելու համար բերեմ մեկ բնորոշ օրինակ: 1985 թ. հոկտեմբերին շրջսովետի նստաշրջանում քննարկվեց աշխատանքի կազմակերպման առաջավոր ձևերի ու եղանակների ներդրման ու արմատավորման, գիտատեխնիկական առաջադիմության արագացման գործում շրջանի կոլեկտիվ ու պետական տնտեսություններին ագրոարդյունաբերական միավորման կողմից ցույց տրվող օգնության հարցը՝ կապված ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան (1985 թ.) պլենումի հետ:

Ինչպես զեկուցողը (ագրոարդի շրջանային միավորման նախագահ՝ Մ. Հակոբյան), այնպես էլ ելույթ ունեցողները, վերլուծելով շրջանում տիրող վիճակը, միաժամանակ ցույց տվեցին, որ շատ տնտեսություններում դեռևս աշխատում են հին ձևով, արտադրության մեջ դժվարությամբ է ներդրվում կապալային եղանակը: Նստաշրջանը պահանջեց բոլոր տնտեսություններում անցնել այդ առաջավոր եղանակին, ստեղծել նպաստավոր պայմաններ դրա ներդրման ու արմատավորման համար:

Նստաշրջանի որոշման կատարմանը շրջսովետի գործկոմն անդրադարձավ անցած տարվա օգոստոսի 29-ի նիստում: Պարզվեց, որ այս ասպարեզում անցած ժամանակաշրջանում շրջանի տնտեսություններում, իրոք, զգալի աշխատանք է կատարվել: Դաշտավարական 36 և անասնապահական 11 բրիգադներ այժմ աշխատում են կապալային եղանակով: Դրա շնորհիվ Գեղաշենի տնտեսությունը, օրինակ, նախորդ տարվա 451-ի փոխարեն 1986 թ. նույն տարածությունից ստացել է 1.100 տոննա համախառն բերք: Զգալի աճ են ապահովել նաև Կապուտանի, Կամարիսի,



Գառնիի և շրջանի այլ տնտեսություններ: Կամ վերցնենք անասնապահությունը: Եթե 1985 թ. ութ ամսում շրջանի տնտեսությունները արտադրել ու պետությանն են վաճառել 8.926 տոննա կաթ, ապա անցած տարի այդ թիվը հասել է 9.254-ի: Հատկապես բարձր արդյունքներ են ձեռք բերել Կոտայքի, Ակունքի, Զովաշենի կոլտնտեսությունները ու Զովքի պետական տնտեսությունը:

**ՀԱՐՑ.— Ինչպե՞ս են զբաղվում սովետների մշտական հանձնաժողովները պարենային ծրագրի իրականացման հարցերով:**

**Գ. ՄԱՆՈՒԿՅԱՆ.—** Առհասարակ դեպուտատական մշտական հանձնաժողովները բոլոր հարցերում էլ զորավիգ են տվյալ սովետին, նրա գործադիր կոմիտեին: Դրա համար ամեն ինչ արվում է նրանց գործունեությունն աշխուժացնելու, շրջանի առջև ծառացած սոցիալ-տնտեսական խնդիրների լուծմանը նրանց ակտիվ մասնակցությունն ապահովելու համար: Օրինակ, մեր շրջսովետում գործում են 13 մշտական հանձնաժողովներ, որոնցում ընդգրկված են 97 դեպուտատներ: Ի դեպ, նրանցից շատերն աշխատում են բուն արտադրությունում և ոչ միայն քայլում են առջևից, այլև օգնում են ետ մնացողներին, լուծում այս կամ այն հարցը: Գյուղատնտեսության մշտական հանձնաժողովը (նախագահ՝ Ակունքի կոլտնտեսության նախագահ Պ. Հարությունյան) ուսումնասիրում ու քննարկում է կարևոր ու հրատապ հարցեր: Ընդ որում մեծ տեղ է հատկացնում պարենային ծրագրի իրականացմանը: Եվ պետք է ասել, որ հանձնաժողովի ակտիվ աշխատանքը զգալիորեն նպաստել է գյուղատնտեսության բնագավառում շրջանի հաջողությունների ձեռքբերմանը: Հանձնաժողովը լուրջ ուշադրություն է հատկացնում հողային ու ջրային ռեսուրսների, գյուղատնտեսության զարգացման առկա ռեզերվների ու հնարավորությունների արդյունավետ օգտագործմանը, նոր ռեզերվների հայտնաբերմանը: Վերջերս հանձնաժողովը կրկին անդրադարձավ շրջանում ջրային պաշարների խնայողաբար օգտագործման հարցին, ընդունեց համապատասխան որոշում: Արդյունքը եղավ այն, որ 450 հեկտար հողատարածություն առաջիկայում կոռոգվի անձրևացման եղանակով: Ընթացքի մեջ են շինարարական աշխատանքները:

Հանձնաժողովի ուշադրությունից չի վրիպել նաև արոտավայրերի ջրարբիացման հարցը: Ունկնդրելով ընտրողների պատվիրաններին՝ ժողովրդի ընտրյալներն այսօր այդ ասպարեզում որոշակի աշխատանք են կատարում: Անցած տարի շահագործման հանձնվեց Արմաղանի 4.500 հեկտար արոտավայրերի ջրարբիացման համակարգը, որը կնպաստի անասնապահության հետագա զարգացմանը, պարենային ծրագրի իրականացմանը: Սակայն, երբ կատարվածը վերլուծում ենք կուսակցության XXVII համագումարի, Կենտկոմի 1986 թ. հունիսյան պլենումի պահանջների լույսի ներքո, ապա ավելի ցայտուն են դառնում մեր առաջիկա անելիքները, պարզորոշ երևում են մեր թերությունները ու բացթողումները:

Այսօր մեր նպատակն է հանձնաժողովների գործունեությունն ավելի աշխուժացնել ու մոտեցնել արտադրությանը, ինչպես ասում են, ծանրության կենտրոնը տեղափոխել բրիգադ ու օղակ, դաշտ ու ֆերմա, այնտեղ, ուր վճռվում է արտադրության բախտը: Միայն այս եղանակով մենք կարող ենք պատվով լուծել այն խնդիրները, որոնք կուսակցությունն ու կառավարությունը դրել են տեղական սովետների առջև: Ինչպես շրջանային, այնպես էլ գյուղական ու ավանային սովետներն իրենց նիստերում ու նստաշրջաններում պարբերաբար լսում են գյուղատնտեսական հանձնաժողովների հաշվետվությունները, այս կամ այն թերությունը վերացնելու համար ձեռնարկում համապատասխան միջոցներ:

**ՀԱՐՑ.— Ի՞նչ տեղաշարժեր են կատարվել շրջանում ագրոարդյունաբերական համալիրի ստեղծումից հետո, ի՞նչ են անում տեղական սովետները պարենային ծրագրի կատարման գործում նրա դերը բարձրացնելու համար:**

**Մ. ՀԱԿՈԲՅԱՆ (ագրոարդյունաբերական շրջմիավորման խորհրդի նախագահ).—** Վերջին տարիներին շրջանի գյուղատնտեսության բնագավառում ներդրվել են շուրջ 17 միլիոն ռուբլու հիմնական միջոցներ: Դրանց հաշվին ամրապնդվել է այդ ճյուղի նյութատեխնիկական բազան, կառուցվել են անասնապահական համալիրներ, թռչնանոցներ, հիմնվել են 710 հեկտար ինտենսիվ այգիներ, ձեռք է բերվել նոր տեխնիկա, իրականացվել են ջրաշինարարական և մելիորացիոն աշխատանքներ: Սակայն, հարկ է խոստովանել, որ դեռևս անհրաժեշտ փոխհատուցում չի

ստացվել: Մի շարք տնտեսություններում մթերքների աճի տեմպերը զգալիորեն ետ են մնում հատկացված փոնդերի աճի տեմպերից: Ինչ խոսք, այս հանգամանքը լրջորեն անհանգստացնում է շրջանի կուսակցական, սովետական և մյուս կազմակերպություններին, ագրոարդյունաբերական շրջմիավորման խորհրդին: Այժմ ամեն ինչ արվում է վիճակը արագորեն շտկելու համար: Այդ նպատակով կուսշրջկոմի հետ մշակվել և գործողության մեջ է դրվել մինչև 1990 թվականն ընկած ժամանակաշրջանի համար Աբովյանի շրջանի պարենային ծրագիրը: Նրանում խորությամբ ու բազմակողմանիորեն արտացոլված են գյուղատնտեսության զարգացման գործում կուսակցական, սովետական, տնտեսական մարմինների, կոլտնտեսությունների, սովխոզների և գյուղատնտեսական մյուս կազմակերպությունների կոնկրետ անելիքները, ցույց են տրված գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման ինտենսիվ գործոնները, դրանց կոմպլեքսային լուծման ուղիները:

Շրջանի պարենային ծրագրի իրականացման համար ագրոարդյունաբերական միավորումը հաջողությամբ ապահովում է տերիտորիալ ղեկավարման սկզբունքը, կապ ստեղծում շրջանային բոլոր օղակների միջև: Սակայն նա միաժամանակ նաև մեծ անելիքներ ունի ղեկավարման մեխանիզմի կատարելագործման, պլանավորման, նյութական խրախուսման, վարձատրման առաջավոր եղանակների արմատավորման, ինչպես նաև տեղերում տնտհաշվարկի ամրապնդման, գյուղատնտեսության հետագա մասնագիտացման հարցերի լուծման ասպարեզում:

Ճիշտ է, ներկայումս ագրոարդյունաբերական միավորումների ստեղծումը հնարավորություն է տվել վերացնելու շրջանի տարածքում գտնվող որոշ տնտեսությունների տարանջատվածությունը, սակայն, իրականում, դրանց մի մասը դուրս է մնացել միավորումից, և փաստորեն այս հանգամանքը դժվարացնում է նրա աշխատանքի արդյունավետ կազմակերպման գործը: Խոսենք փաստերով. այժմ շրջանի տարածքում են գտնվում անտառային տնտեսության պետական կոմիտեի ենթակայության ութ տնտեսություններ: Դրանց գյուղատնտեսական մթերքների մթերումների պլանավորումը կատարվում է մեր, իսկ ֆինանսավորումը՝ պետական կոմիտեի կողմից: Նման տնտեսություններում համեմատաբար թույլ է պլանային կարգապահությունը, որը բացասաբար է անդրադառնում գյուղատնտեսական մթերքների արտադրության շրջանային ցուցանիշների վրա: Եթե շրջանի յուրաքանչյուր կովի տարեկան միջին կաթնատվությունն անցած հնգամյակում կազմել է 2.419 կիլոգրամ, ապա անտառային տնտեսության պետական կոմիտեի վեց տնտեսություններում այն չի անցել 2.100 կիլոգրամից, էլ չենք խոսում առաջավոր տնտեսությունների մասին, ուր կաթնատվությունն անցել է 3.500—4.000 կիլոգրամի սահմանագիծը:

Այդ տնտեսություններում ցածր է նաև պտղատու այգիների բերքատվությունը: Այն տատանվում է չորսից քանհինգ ցենտների սահմաններում և շրջանի միջին ցուցանիշից պակաս է 20, իսկ առաջավոր տնտեսություններից՝ 50 ցենտներով: Այգիների նման բերքատվությունը բացատրվում է ծառերի ծերացմամբ, անտառի նպատակով հիմնված խառն այգիների առկայությամբ, որտեղ խիստ ցածր է մշակության մակարդակը: Վերադաս կազմակերպությունները տվյալ տարածքում իրենց ենթակայության տնտեսությունների ինտենսիվացման հետ առնչվող հարցերը պարտավոր են լուծել՝ հաշվի առնելով շրջանի զարգացման դինամիկան:

Այս տարի դուրս գրվեցին շուրջ 864 հեկտար ապրանքային տեսքը կորցրած այգիներ, որոնց ազատված տարածքները հետագայում պետք է զբաղեցվեն կերային կուլտուրաներով: Ազատված 65 հեկտարի վրա այս տարի ցանվեցին առվույտ և կերի ճակնդեղ, իսկ նախկինում դուրս գրված 1.000 հեկտար հողատարածությունում կատարվել է հացազգի խոտաբույսերի ցանք: Դա, անտարակույս, կնպաստի կերի սեփական արտադրության ավելացմանը:

Արտադրության ճիշտ կազմակերպումը մեծապես պայմանավորված է մարդկանց բանիմացությամբ, ակտիվությամբ, գործի նկատմամբ սրտացավությամբ, ինչպես ասում են՝ մարդկային գործոնով: Այդ տեսակետից մեզ մոտ մեծ ուշադրություն է նվիրվում կադրերի ընտրությանը, աշխատանքի ու արտադրության կազմակերպման առաջավոր եղանակների կիրառմանը: Վերջին տարիներին, ինչպես ասաց ընկ. Մանուկյանը, արտադրության մեջ լայնորեն ներդրվել է կոլեկտիվ կապալը: Այնտեղ, ուր արտադրության ղեկավարը գիտակից վերաբերմունք է ցուցաբերում մարդկանց



և առաջավոր եղանակների ներդրման նկատմամբ, կան մեծ տեղաշարժեր ու մեծ էլ արդյունք է ստացվում: Գառնիի, Մայակովսկու, Կոտայքի, Արամուսի տնտեսությունները կապալային եղանակի արմատավորման շնորհիվ մեծ հաջողությունների են հասել ծխախոտի մշակության գործում: Այդ տնտեսություններում յուրաքանչյուր տարի հեկտարից ապահովվում է 34—45 ցենտներ բերք, բարձր է երկկողմանի շահագրգռվածությունը. բանվորի միջին աշխատավարձը կազմում է 600—800 ռուբլի, իսկ հեկտարի շահութաբերության աստիճանը՝ 30—50 տոկոս:

Մեծ անելիքներ ունենք կոլտնտեսություններում ու սովխոզներում տնտհաշվարկի արմատավորման գործում: Արդեն ժամանակն է մտածելու ոչ թե արտադրել ինչպես պատահի, այլ ինչպես հարկն է՝ նվազագույն ծախսումներով ապահովել առավելագույն արդյունք, այսինքն այն, ինչ պահանջեց մեր կուսակցության համագումարը:

**ՀԱՐՑ.— Ընկեր Հակոբյան, վերջերս հրապարակվեց ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի՝ «ՍՄԿԿ XXVII համագումարի որոշումների լույսի ներքո ժողովրդական դեպուտատների սովետների դերի հետագա բարձրացման և սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու համար նրանց պատասխանատվության ուժեղացման միջոցառումների մասին» որոշումը, ուր ասված է. «Ակտիվորեն օժանդակել այգեգործական ընկերությունների ու բանջարաբույծների կոլեկտիվների, քաղաքացիների անձնական օժանդակ տնտեսությունների զարգացմանը»: Ի՞նչ է արվում այս ասպարեզում ձեզ մոտ:**

**Մ. ՀԱԿՈԲՅԱՆ.—** Օգնում ենք ինչով հնարավոր է, ինչով կարող ենք՝ սկսած հողամասերի ընտրությունից ու տրամադրումից, ապահովում ենք պարարտանյութերով, թունանյութերով, անգամ՝ տնկիներով: Կուսակցության ու կառավարության այս որոշումը մեզ պարտադրում է ավելի մեծ ուշադրություն դարձնել այդ հարցերին: Մենք որոշել ենք անձնական օժանդակ տնտեսություններից գնել նրանց արտադրած մթերքները, որպեսզի դրանց իրացման համար ժամանակ չծախսվի:

**ՀԱՐՑ.— Կուսակցության XXVII համագումարի, ինչպես նաև ՍՄԿԿ Կենտկոմի այս տարվա հունիսյան պլենումի որոշումներն ու երկրի աշխատավորներին ուղղված Կենտկոմի Դիմումը ինչպիսի՞ արձագանք են գտել Աբովյանի շրջանի աշխատավորների մոտ:**

**Պ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ (Ակունքի կոլտնտեսության նախագահ, շրջսովետի դեպուտատ).—** Ծանոթանալով այդ պատմական փաստաթղթերին՝ նրանք առաջին հերթին ընկալում են դրանց խորությունը, կոնկրետությունը, մոբիլիզացնող ուժը և միաժամանակ անում անհրաժեշտ հետևություն: Նրանք լավ գիտեն, որ առանց նախաձեռնության, նվիրվածության, վերակառուցման ու սեփական աշխատանքի նկատմամբ ունեցած պահանջկոտության, ինչպես նշում է կուսակցությունը, դժվար է հասնել որոշակի հաջողությունների: Ահա թե ինչու մարդկանց մոտ այդ գործոնների ապահովումը այսօր դարձել է առաջնահերթ խնդիր:

Համագումարի մշակած՝ գյուղատնտեսության զարգացման արագացման ստրատեգիական նոր կուրսի իրականացումը ենթադրում է անասնապահության և երկրագործության համակողմանի ինտենսիվացում և այդ բնագավառներում եղած հնարավորությունների առավելագույն օգտագործում: Մեր տնտեսություններում, օրինակ, կաթի ու մսի արտադրությունը արդյունաբերական հիմքերի վրա փոխադրելու համար պահանջվում էր կարճ ժամանակամիջոցում ստեղծել կովերի նոր, արդյունավետ, կաթնատու ցեղեր, որոնք իրենց կենսաբանական ու տնտեսական հատկանիշներով գերազանցեին գոյություն ունեցող տեսակներին: Եվ այդ գործում ակունքցիներին օգնության ձեռք մեկնեցին Երևանի անասնաբուծական-անասնաբուժական ինստիտուտի բուծման ամբիոնի աշխատողները: Կատարված բարդ տրամախաչումից կոլտնտեսությունում ստացվել են առավել մթերատու տեսակներ: Տասնհինգից քսան ամսական հասակում անասունների կենդանի քաշը հասնում է 350—410 կիլոգրամի: Դրա շնորհիվ կոլտնտեսությունում անցյալ տարի յուրաքանչյուր կովի կաթնատվությունը կազմեց 3.670, իսկ պետությանը հանձնված խոշոր եղջերավոր անասունների միջին կենդանի քաշը՝ 400 կիլոգրամ: Դրանով պետք է բացատրել վերջին տարիներին տնտեսության անասնապահության բնագավառի դրամական եկամուտների զգալի աճը: 1980 թ. 350 հազարից դրանք հասել են 537 հազար ռուբլու, միաժամանակ իջել է արտադրանքի ինքնարժեքը:

# ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԻՐԱՎԱՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒԹՅԱՆ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ՊԱՅՄԱՆԱՎՈՐՎԱԾՈՒԹՅԱՆ ՀԱՐՑԵՐԸ

**Ա. ԽԱՉԱՏՈՒՐՅԱՆ**
**Երևանի պետական համալսարանի իրավաբանական ֆակուլտետի ասպիրանտ**

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ քաղաքական սիստեմի զարգացման կարևորագույն ուղղությունը պետական ու հասարակական կյանքում իրավական հիմունքների ամրապնդումն է: Դրանով է պայմանավորված արդի փուլում սովետական պետության նորմաստեղծարար ակտիվ գործունեությունը՝ ՍՍՀՄ և միութենական ու ինքնավար հանրապետությունների սահմանադրությունների հիման վրա գործող օրենսդրության նորացումը, նրա հետագա զարգացումն ու կատարելագործումը, ինչպես և գործող օրենսդրության համապարփակ համակարգումը, որն իր արտահայտությունն է գտել ՍՍՀՄ և միութենական հանրապետությունների օրենքների համահավաք ժողովածուների ստեղծման մեջ:

ՍՄԿԿ XXVII համագումարը խնդիր դրեց հաստատակամորեն կատարելագործել օրենսդրությունը, վերահսկել, թե ինչպես են գործում մեր օրենքները, քանի որ «կուսակցության մշտական հոգատարության առարկա են եղել և մնում են **պետական ու հասարակական կյանքի իրավական հիմքի ամրապնդումը,** սոցիալիստական օրինականության ու իրավակարգի անշեղ պահպանումը...» (**ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը,** էջ 225): Դրա հետ կապված՝ խնդիր է դրվում այսուհետև էլ բարելավել սովետական օրենքների որակը, որպեսզի մեր օրենսդրությունը «ավելի ակտիվորեն օգնի կառավարման տնտեսագիտական մեթոդների ներդրմանը, աշխատանքի և սպառման չափի գործուն վերահսկողությանը, սոցիալական արդարության սկզբունքների կենսագործմանը» (նույն տեղը, էջ 86): Նշված խնդիրների լուծման համար ելակետային է Կ. Մարքսի այն դրույթը, որ «օրենսդիրը... օրենքներ չի **կերտում,** նա չի հորինում դրանք, այլ միայն ձևակերպում է... գիտակցական որոշակի օրենքներով արտահայտում է հոգևոր հարաբերությունների ներքին օրենքները» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, **Երկեր,** «Հայաստան» հրատ., 1985, էջ 179): Այստեղից հետևում է օրենսդրության սոցիալական պայմանավորվածության հետազոտության կարևոր նշանակությունը, այսինքն՝ այն սոցիալական գործոնների հետազոտման, որոնք էական ազդեցություն են գործում նրա հետագա զարգացման ու կատարելագործման վրա:

...Սովետական իրավագիտությունը դրական ներդրում է կատարել օրենսդրության զարգացման վրա սոցիալական դետերմինանտների ազդեցության հետազոտման ոլորտում: Ցույց է տրվել, որ իրավունքը միջնորդավորում է հասարակության սոցիալ-տնտեսական և քաղաքական զարգացման օբյեկտիվ օրինաչափությունները բազում տարբեր սոցիալական ֆենոմենների ազդեցության ներքո, որոնք հանդես



են գալիս որպես օրենսդրական գործունեության սոցիալական գործոններ: Այդ գործոնների ազդեցությունն ընդգրկում է իրավաստեղծագործության ողջ պրոցեսը՝ սկսած իրավական կարգավորման պահանջմունքների հայտնաբերման փուլից և վերջացրած ընդունված օրենսդրական ակտի հրատարակմամբ ու կիրառմամբ:

Ամբողջությամբ օրենսդրական գործունեության սոցիալական գործոնների փոխազդեցությունը քննարկվում է ամենատարբեր շահերի փոխազդեցության տեսանկյունից՝ հասարակական հարաբերությունների իրավական միջնորդավորվածության պրոցեսում, քանի որ տիրապետող դասակարգերի (իսկ սոցիալիզմի պայմաններում՝ ամբողջ ժողովրդի) կամքը «չի կարող բովանդակազուրկ լինել: Այն միշտ ուղղված է այդ կամքը կրողների ինչ-որ նպատակների հասնելուն, որոնք սովորաբար բովանդակվում են նրանց զանազան պահանջմունքների, շահերի բավարարման մեջ: Նրա կոնկրետ բովանդակությունը վերջին հաշվով որոշվում է հասարակության կյանքի նյութական պայմաններով, սոցիալական զարգացման օրինաչափություններով» (И. Ф. Казьмин, **Общие проблемы права в условиях научно-технического прогресса.** М., «Юрид. лит.», 1986, с. 5—6). Այդ պահանջմունքներն ու շահերը, լինելով իրավունքի նկատմամբ արտաքին գործոններ, «վճռական կերպով ազդում են իրավունքի ներքին բովանդակության վրա» (նույն տեղը, էջ 6):

Իրավաստեղծարար գործունեության վրա սոցիալական գործոնների ազդեցության բովանդակային ասպեկտների հաշվառմամբ առանձնանում են իրավաստեղծարար գործունեության հիմնական գործոնները, որոնք իրենց հերթին ստորաբաժանվում են երկու խմբի՝ հաշվի առնելով սոցիալական գործոնի ազդեցության և իրավաստեղծագործական պրոցեսի այս կամ այն սուբյեկտների գործողությունների միջև պայմանավորվածության առկայությունը կամ բացակայությունը: Դրա հիման վրա առանձնանում են հիմնական գործոնները, որոնք արտացոլում են հասարակական կյանքի (տնտեսական, էկոլոգիական, ժողովրդագրական, աշխարհագրական) պայմանները և գործոններ, որոնք արտացոլում են հասարակական գիտակցությունը (քաղաքական-իրավական, գաղափարախոսական, սոցիալ-կուլտուրական, ազգային, ազգամիջյան): Գոյություն ունեն նաև կազմակերպական, ծրագրավորող, գիտական ու ինֆորմացիոն գործոններ, որոնք ապահովում են հիմնական գործոնների ազդեցությամբ առաջացած պրոբլեմային իրադրության պատշաճ լուծումը:

Խտացնելով և առավել լրիվ արտահայտելով սովետական իրավաստեղծագործության հիմնական գծերը, ՍՍՀՄ, ինքնավար և միութենական հանրապետությունների սահմանադրությունները ամուր իրավական հիմք են դարձել սովետական օրենսդրության հետագա զարգացման ու կատարելագործման համար: Այդ կարևորագույն քաղաքական-իրավական փաստաթղթերը մարմնավորել են մեր պետության գոյության ողջ ժամանակամիջոցում կուտակված հասարակական հարաբերությունների սահմանադրական իրավական կարգավորման փորձը: Դրանց ընդունումից հետո, համեմատաբար կարճ ժամանակամիջոցում, նշանակալից աշխատանք կատարվեց ինչպես համամիութենական, այնպես էլ հանրապետական օրենսդրության նորացման նպատակով: Հաշվի առնելով առաջիկա իրավաստեղծագործական աշխատանքների վիթխարի ծավալը, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը և միութենական հանրապետությունների Գերագույն սովետի նախագահությունները հաստատեցին հատուկ պլաններ՝ օրենսդրությունը ՍՍՀՄ և միութենական հանրապետությունների սահմանադրություններին համապատասխանեցնելու համար (տե՛ս Ведомости Верховного Совета СССР, 1977, № 51, ст. 746; Ведомости Верховного Совета Армянской ССР, 1978, № 12, ст. 145): Հետագայում պլանայնությունը դարձավ համաժողովրդական պետության օրենքաստեղծարար գործունեության կարևոր սկզբունքներից մեկը:

«ՍՍՀՄ սահմանադրությանը և Հայկական ՍՍՀ սահմանադրությանը Հայկական ՍՍՀ օրենսդրությունը համապատասխանեցնելու աշխատանքի կազմակերպման մասին» Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության որոշման իրականացման շնորհիվ հանրապետությունում զգալի աշխատանք է կատարվել հանրապետական օրենսդրությունը նորացնելու գործում: Մասնավորապես, հանրապետության սահմանադրությանը համապատասխան ընդունվեցին «Հայկական ՍՍՀ Գերագույն սո-

վետի ընտրությունների մասին», «Հայկական ՍՍՀ ժողովրդական դեպուտատների տեղական սովետների ընտրությունների մասին», «Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի մասին», «Հայկական ՍՍՀ դատարանակազմության մասին», «Մթնոլորտային օդի պահպանման մասին», «Կենդանական աշխարհի պահպանման և օգտագործման մասին» օրենքներ, հաստատվեց «Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի ռեգլամենտը» և այլն (Ведомости Верховного Совета Армянской ССР, 1978, № 23, ст. ст. 272, 274; 1979, № 12, ст. 98, № 24, ст. 216; 1981, № 23, ст. ст. 269, 271, 273): Նոր խմբագրությամբ ընդունվեցին «Հայկական ՍՍՀ ժողովրդական դեպուտատների ավանային, գյուղական սովետի մասին», «Հայկական ՍՍՀ ժողովրդական դեպուտատների շրջանային սովետի մասին», «Հայկական ՍՍՀ ժողովրդական դեպուտատների քաղաքային, քաղաքի շրջանային սովետների մասին» Հայկական ՍՍՀ օրենքները (նույն տեղը, 1979, № 24, ст. ст. 218, 219, 220): Համապատասխան փոփոխություններ և լրացումներ են մտցվել բազմաթիվ գործող օրենսդրական ակտերում, այդ թվում՝ Հայկական ՍՍՀ «Պետական նոտարիատի մասին», «Առողջապահության մասին», «Ժողովրդական կրթության մասին» օրենքներում և այլն (նույն տեղը, 1979, № 8, ст. 47, № 12, ст. 100, № 24, ст. 221, № 25, ст. 237, № 27, ст. 204; 1980, № 6, ст. 77): Այսպիսով, Հայկական ՍՍՀ 1978 թ. սահմանադրությունը, կուտակելով իր մեջ հանրապետության սոցիալական իրականության մեջ տեղի ունեցած նշանակալից տեղաշարժերը, հանդես եկավ որպես ինտեգրացնող քաղաքական-իրավական գործոն՝ ուրվագծելով հանրապետության օրենսդրության սիստեմի կատարելագործման հետագա ուղղությունը:

Հանրապետական հիմնական օրենքներում կուտակված սոցիալական գործոնի ինտեգրացնող ազդեցությունը դրսևորվել է նաև միութենական հանրապետությունների օրենքների համահավաք ժողովածուների ստեղծման հետ կապված հարցերը լուծելիս: Այս դեպքում միութենական հանրապետության բուն սահմանադրությունը (նրա կառուցվածքը, բովանդակությունը) հիմք է ծառայում հանրապետական օրենքների համահավաք ժողովածուների կառուցվածքի ու բովանդակության հարցերը որոշելիս: Պատահական չէ, որ ՀԿԿ Կենտկոմի, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության և հանրապետության Մինիստրների խորհրդի 1979 թ. օգոստոսի 16-ի «Հայկական ՍՍՀ օրենքների համահավաք ժողովածուի հարցեր» որոշման մեջ (Ведомости Верховного Совета Армянской ССР, 1979, № 16, ст. 138) ուղղակի մատնանշված է. «Սահմանել, որ Հայկական ՍՍՀ օրենքների համահավաք ժողովածուի պատրաստումը պետք է իրականացվի ՍՍՀՄ և Հայկական ՍՍՀ սահմանադրությունների հիման վրա և նպաստի հանրապետության օրենսդրության հետագա կատարելագործմանը, հասարակության շահերի, սովետական քաղաքացիների իրավունքների ու ազատությունների պահպանման ուժեղացմանը, պետական ու հասարակական կյանքի իրավական հիմքերի ամրապնդմանը: Այս ամենից հետևում է, որ միութենական հանրապետությունների օրենքների համահավաք ժողովածուների հրատարակման աշխատանքը ոչ թե հանրապետական օրենսդրական նյութի հասարակ կարգավորում է, այլ նրա համապարփակ սիստեմավորումը օրենքաստեղծագործության սոցիալական դետերմինանտների հրատապ անհրաժեշտության հաշվառմամբ:

Սոցիալական իրականության ներկա ռեալ պայմանների կոմպլեքսային հաշվառման անհրաժեշտությունը և ՍՍՀՄ և միութենական հանրապետությունների օրենքաստեղծագործական պրակտիկայում դրանց արտացոլումը վառ կերպով արտացոլվեցին ՍՄԿԿ XXVII համագումարի որոշումներում, որտեղ ուշադրության կենտրոնում դրվեցին երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման և սոցիալիստական հասարակության զարգացման արդի փուլի պայմաններում սոցիալիստական դեմոկրատիայի հետագա ծավալման, մարդկային գործոնի դերի ակտիվացման արմատական պրոբլեմները:

ՍՄԿԿ XXVII համագումարի Քաղաքական զեկուցման մեջ, համագումարի ընդունած ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրությունում և մյուս փաստաթղթերում խտացված ձևով արտահայտված է պատմական փուլ ապրող երկրի սոցիալիստական հասարակական հարաբերությունների զարգացման տվյալ աստիճանը: Ուստի համագումարի որոշումների ազդեցությունը ընթանում է սովետական օրենսդրության միութենական-հանրապետական կառուցվածքի ողջ համակարգի հետագա կատարելագործման, երկրի տնտեսական, քաղաքական և սոցիալական կյանքի ռեալ պայմանների առավելագույն-համապատասխան հաշվառման ուղղությամբ: Այդ իմաստով համագումարը կարևոր ուղենիշ է, որը սահմանեց սովետական պետության ողջ օրենսդրական ստրատեգիայի վերափոխման հասունացած պրոբլեմները: Այն փաստորեն հավանություն տվեց օրենքաստեղծարար գործունեության մեջ սոցիալական գործոնների հաշվառման անհրաժեշտության կոնցեպցիային:

ՍՄԿԿ XXVII համագումարի որոշումների լույսի ներքո գործող օրենսդրական նյութի վերանայման ուղղություններից մեկը ժողովրդական դեպուտատների սովետների՝ ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարման գլխավոր օղակի մասին օրենսդրությունն է: Այդ խնդրի հրատապությունը մասնավորապես բխում է ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության և Մինիստրների խորհրդի 1986 թ. հուլիսի 25-ի «ՍՄԿԿ XXVII համագումարի որոշումների լույսի ներքո սոցիալ-տնտեսական զարգացման արագացման համար ժողովրդական դեպուտատների սովետների դերի հետագա բարձրացման և պատասխանատվության ուժեղացման միջոցառումների մասին» որոշումից: Նշված որոշման մեջ ամրագրված են ժողովրդական դեպուտատների սովետների դերի բարձրացման և պատասխանատվության ուժեղացման հիմնական ուղղությունները, որոնք կարևոր կողմնորոշիչներ են ժողովրդական դեպուտատների սովետների մասին հանրապետական օրենսդրության հետագա զարգացման ու կատարելագործման խնդիրների լուծման համար: Այդ ուղղություններն են. ա) սովետների դերի բարձրացումը տնտեսական ու սոցիալական կոմպլեքսային զարգացման ապահովման, հասարակական արտադրության աճի տեմպերի արագացման և արդյունավետության բարձրացման, այդ հիման վրա բոլոր հանրապետությունների, ինչպես նաև ազգային-պետական կազմավորումների ու վարչատերիտորիալ միավորների ներդրման մեծացումը երկրի միասնական ժողովրդատնտեսական կոմպլեքսի ամրապնդման գործում. բ) ինչպես հանրապետական, այնպես էլ տեղական մարմինների իրավունքների ընդլայնումը ժողովրդական սպառման ապրանքների արտադրության զարգացման, ծառայությունների ոլորտի, միջճյուղային արտադրությունների, կապիտալ շինարարության, բնապահպան գործունեության, սոցիալական ու արտադրական ենթակառուցվածքի և այլնի գործում. գ) իշխանության ներկայացուցչական մարմինների պատասխանատվության բարձրացումը գերատեսչական տերիտորիաներում՝ բնակչության պահանջմունքները արդյունաբերական ու պարենային ապրանքներով, բնակարանով, ինչպես և սոցիալ-կուլտուրական ու կենցաղային ծառայություններով բավարարելու համար. դ) կատարելագործել ժողովրդական դեպուտատների սովետների ղեկավարությունը և փոխգործողությունը նրանց տերիտորիայում տեղադրված միավորումների, ձեռնարկությունների ու կազմակերպությունների հետ, ինչպես նաև ուժեղացնել տնտեսավարման արդյունքների բարելավման գործում նրանց փոխադարձ շահագրգռվածությունը (տե՛ս СП СССР, 1986, № 27, ст. 151): Նախատեսվում է նաև «Սովետների գործունեության մեջ դեմոկրատական հիմունքների հետագա խորացում, նրանց աշխատանքի մեթոդների ու ոճի կատարելագործում, սովետական մարմինների ապարատի որակավորված կադրերով ամրապնդում» (նույն տեղը):

Նշված ուղղությունների վերլուծությունը վկայում է, որ խոսքը վերաբերում է հանրապետական օրենսդրության տվյալ զանգվածի ինչպես բովանդակության, այնպես էլ կառուցվածքի էական փոփոխություններին, որոնք շոշափում են ժողովրդական դեպուտատների սովետների և դրանց մարմինների մասին առանց բացառության բոլոր նորմատիվ-իրավական ակտերը: Դեռ ավելին, կուսակցության XXVII համագումարի պահանջների լրիվ կենսագործումը հանրապետական օրենքաստեղծագործման տվյալ բնագավառում կարող է հրատապ դարձնել նաև ժողովրդական դեպուտատների սովետների սահմանադրական ստատուսում համապատասխան փոփոխություններ ու լրացումներ մտցնելու անհրաժեշտությունը, որի նպատակն է լավագույնս օգտագործել դրանց ստեղծագործական պոտենցիալը համագումարի հավանությանն արժանացած սոցիալ-տնտեսական զարգացման արագացման կուրսի կենսագործումն ապահովելու համար:

ՍՄԿԿ XXVII համագումարի որոշումների լույսի ներքո սովետական օրենսդրության հետագա զարգացման ու կատարելագործման ողջ պրոցեսի խոր սոցիալական պայմանավորվածությունը վառ կերպով արտահայտվեց ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի 1986 թ. օգոստոսի 28-ի «ՍՍՀՄ օրենսդրական ակտերի նախապատրաստման, ՍՍՀՄ կառավարության որոշումների և 1986—1990 թթ. ՍՍՀՄ օրենսդրության կատարելագործման վերաբերյալ առաջարկությունների պլանի մասին» որոշման մեջ (Ведомости Верховного Совета СССР, 1986, № 37, ст. 782): Օրենքանախապատրաստական աշխատանքների այդ պլանի բնորոշ առանձնահատկությունն այն է, որ ՍՍՀՄ օրենսդրական ակտերի, ՍՍՀՄ կառավարության որոշումների և ՍՍՀՄ օրենսդրության կատարելագործման առաջարկությունների մի զգալի մասի նախապատրաստությունն անմիջականորեն բխում է հասարակական հարաբերությունների այս կամ այն կոնկրետ ոլորտում օրենսդրական կարգավորումը կատարելագործելու մասին համագումարի որոշումներից: Ասվածը կարելի է պարզաբանել սոցիալիստական դեմոկրատիայի, սոցիալիստական ինքնակառավարման, քաղաքացիների իրավունքների ու ազատությունների հետագա զարգացման վերաբերյալ հարցերի վերոհիշյալ պլանի հիմնական կետերի օրինակով: Այսպես, կուսակցության XXVII համագումարում ընդունված ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրությունում նշված է, որ «Կուսակցությունը անշեղորեն կվարի **կառավարման, պետական որոշումների մշակման և ընդունման պրոցեսի դեմոկրատացման գիծ...** Առավել կարևոր օրինագծերը և որոշումները կդրվեն համաժողովրդական քննարկման և քվեարկման» **(ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը,** էջ 223):

Բացի այդ, ՍՄԿԿ XXVII համագումարի Քաղաքական զեկուցման մեջ նշվում է, որ «Մեր սահմանադրությունը նախատեսում է երկրի կյանքի խոշոր հարցերի, տեղական սովետների որոշումների նախագծերի համաժողովրդական քննարկումների ու քվեարկությունների անցկացում» (նույն տեղը, էջ 84): Սյնուհետև ընդգծվում է, որ «պետք է արագացնել այդ շատ կարևոր հարցի առթիվ օրենքի նախապատրաստումը» (նույն տեղը): Այդպիսի հարցադրմանը համապատասխանում է վերոհիշյալ պլանի առաջին կետը, որը նախատեսում է երկրի կյանքի խոշոր հարցերի վերաբերյալ համաժողովրդական քննարկման ու քվեարկության կարգի, ինչպես նաև տեղական սովետների որոշումների նախագծերը ազգաբնակչության կողմից քննարկելու մասին ՍՍՀՄ օրենքի նախապատրաստությունը:

ՍՄԿԿ XXVII համագումարում ասվեց, որ «Մենք պետք է է՛լ ավելի լավ օգտագործենք ուղղակի դեմոկրատիայի զարգացման այնպիսի հուսալի կանալներ, ինչպիսիք են քաղաքացիների ժողովները, ընտրողների պատվիրանները, աշխատավորների նամակները, մամուլը, ռադիոն, հեռուստատեսությունը, հասարակական կարծիքը բացահայտելու, մասսաների պահանջներին ու տրամադրություններին օպերատիվ կերպով, զգայուն արձագանքելու բոլոր միջոցները» (նույն տեղը): Այդ կապակցությամբ քննարկվող պլանի երկրորդ կետը նախատեսում է մամուլի և ինֆորմացիայի մասին ՍՍՀՄ օրենքի նախապատրաստումը:

Կուսակցության համագումարում նշված է. «Աշխատավորական կոլեկտիվների մասին մոտ երեք տարի առաջ ընդունված օրենքը, անտարակույս, նպաստել է նրանց նախաձեռնության աշխուժացմանը: Սակայն ասել, թե դա տալիս է այն արդյունքները, որ մենք ակնկալում էինք, առայժմ չի կարելի... Հարկավոր է քայլ առ քայլ ընդլայնել այն պրոբլեմների շրջանակը, որոնց վերաբերյալ աշխատավորական կոլեկտիվի որոշումները վերջնական են... Հարց է ծագում և այն մասին, որ ընդհանուր ժողովների միջև ընկած ժամանակամիջոցում ոչ միայն բրիգադների, այլև ձեռնարկությունների մակարդակով գործի, ասենք, աշխատավորական կոլեկտիվի խորհուրդը...» (նույն տեղը, էջ 83): Միաժամանակ մատնանշվում է, որ «զարգացնելով դեմոկրատական հիմունքները արտադրության կառավարման մեջ, հավանաբար, նպատակահարմար է ընտրությունը տարածել բոլոր բրիգադավարների վրա, իսկ հետո աստիճանաբար նաև ձեռնարկությունների ղեկավար աշխատողների մի քանի այլ կատեգորիաների...» (նույն տեղը, էջ 84): Այդ կապակցությամբ օրենքանախապատրաստական աշխատանքների պլանի երրորդ կետը նախատեսում է բանվորների ու ծառայողների ժողովների դերի բարձրացման, այն հարցերի շրջանակի ընդլայնում, որոնց վերաբերյալ աշխատավորական կոլեկտիվների որոշումները համարվում են վերջնական, աշխատավորական կոլեկտիվների խորհուրդների ձեռնարկությունների մակարդակով դրանց առանձին կատեգորիաների ղեկավար աշխատողների ընտրելիության աստիճանական ընդլայնման մասին նորմատիվ ակտերի նախապատրաստում և այլն:



Այսպիսով, ակնհայտ է դառնում, որ ՍՄԿԿ XXVII համագումարը, բևեռելով ուշադրությունը երկրի զարգացման ներկա պատմական փուլի հասունացած պրոբլեմների լուծմանը, դրանով իսկ ելակետային է համարում դրանց առնչվող հարաբերությունների օրենսդրական միջնորդավորման հիմնական ուղղությունների բացահայտումը:

Օրենքանախապատրաստման աշխատանքների համապատասխան պլանները պատրաստվում են միութենական հանրապետություններում: Նրանցից շատերն արդեն պատրաստել են օրենսդրական ակտերի նախապատրաստման համապատասխան պլանների նախագծեր, հանրապետական կառավարությունների որոշումներ և 1986—1990 թթ. հանրապետական օրենսդրության կատարելագործման վերաբերյալ առաջարկությունների պլաններ:

Պետք է նշել, որ օրենքանախապատրաստման աշխատանքի համամիութենական պլանում նախատեսվում է նորմատիվ ակտերի նախապատրաստումը 38 կետերով, որոնք կազմում են ՍՍՀ Միության բացառիկ իրավասության ոլորտը: Այնինչ, համամիութենական պլանը միութենական հանրապետությունների օրենքաստեղծարար գործունեության համար թողնում է լայն ասպարեզ՝ նրանց համապատասխան պլանների նախագծերը կազմելիս:

Իրերի այդպիսի դրությունը ուղղակի բխում է XXVII համագումարի այն դրույթից, որ «գոյություն ունի չափից ավելի մեծ կենտրոնացում այնպիսի գործերում, որոնք բնավ միշտ չէ, որ երևում են կենտրոնից և շատ ավելի լավ կարող են լուծվել տեղերում» (նույն տեղը, էջ 78): Իսկապես, միութենական մարմինները միշտ չէ, որ ունեն հստակ պատկերացում միութենական հանրապետությունների սոցիալ-տնտեսական այս կամ այն ոլորտի զարգացման առանձնահատկությունների մասին և միշտ չէ, որ ի վիճակի են ապահովելու նրանց ադեկվատ օրենսդրական կարգավորումը համապատասխան համամիութենական նորմատիվ ակտերի հրատարակման միջոցով: Այնինչ, հանրապետական օրենսդրական մարմինները մոտ են կանգնած հանրապետության սոցիալական իրականությանը և ունակ են ավելի լրիվ արտացոլելու նրանց սոցիալական իրողությունները: Սակայն հարկ է նշել, որ միութենական հանրապետությունները ոչ միշտ են լավագույն կերպով օգտվում այդ ոլորտի գործունեությունում ընձեռված լայն հնարավորություններից:

Անընդունելի պետք է համարել հանրապետական պլանները միութենական պլանների հետ խստագույն կապի պրակտիկան, քանի որ միութենական հանրապետությունները պետք է առավել լրիվ չափով օգտվեն իրենց ընձեռված ալտերնատիվ լուծումների լայն հնարավորություններից՝ օրենքանախապատրաստման աշխատանքների պլանների նախագծերի վերջնական տեքստերը կազմելիս:

ՍՄԿԿ XXVII համագումարը հանդիսացավ հզոր խթան՝ սովետական օրենսդրության ողջ սիստեմի հետագա զարգացման ու կատարելագործման ուղղությունների պլանային սկզբունքների ու կանխատեսումների խորացման գործում: Այդ տեսանկյունից արվել է նոր նշանակալից քայլ օրենսդրության ստրատեգիայի և օրենսդրության դերի, որպես սոցիալական իրականության կառավարման կարևոր միջոցի, գիտական հիմունքների բարձրացման ասպարեզում: Հետևաբար, միանգամայն ակնհայտ է, որ միութենական հանրապետությունների օրենսդրությունների հետագա կատարելագործումը պետք է ընթանա ՍՄԿԿ XXVII համագումարի կողմից հավանության արժանացած երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման և սոցիալիստական դեմոկրատիայի հարաճուն ծավալման կուրսի իրականացման ապահովման ուղեկցությամբ:

# «ՄԻԿՐՈԷԼԵԿՏՐՈՆԱՅԻՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ» ԲՈՒՐԺՈՒԱԿԱՆ ԿՈՆՑԵՊՑԻԱՅԻ ԳԱՂԱՓԱՐԱՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՍՊԵԿՏՆԵՐԸ

**Բ. ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների թեկնածու

ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ XXVII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻՆ ՍՄԿԿ Կենտկոմի ներկայացրած Քաղաքական զեկուցման մեջ տրվեց հասարակական զարգացման արդի պրոցեսների, մասնավորապես, գիտատեխնիկական հեղափոխությամբ պայմանավորված նրա միտումների խորապես գիտական, մարքս-լենինյան վերլուծությունը: «Մարդկության առաջադիմությունը,— նշեց Մ. Ս. Գորբաչովը,— անմիջականորեն կապված է նաև **գիտատեխնիկական հեղափոխության հետ...** հասարակական-քաղաքական տարբեր սիստեմներում գիտատեխնիկական հեղափոխությունը դրսևորվում է իր տարբեր կողմերով ու հետևանքներով: 80-ական թվականների կապիտալիզմը՝ էլեկտրոնիկայի ու ինֆորմատիկայի, կոմպյուտերների ու ռոբոտների կապիտալիզմը փողոց է շպրտում նորանոր միլիոնավոր մարդկանց, այդ թվում՝ երիտասարդների և կրթվածների: Հարստությունն ու իշխանությունն է՛լ ավելի են համակենտրոնացվում քչերի ձեռքում: Սպառազինությունների մրցավազքով անասելիորեն ուռճանում է միլիտարիզմը, որը ձգտում է քայլ առ քայլ տիրանալ իշխանության նաև քաղաքական լծակներին: Նա դառնում է XX դարի առավել այլանդակ ու վտանգավոր հրեշը, ամենաառաջավոր գիտատեխնիկական միտքը նրա ջանքերով վերածվում է մասսայական ոչնչացման զենքի» (**ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը,** «Հայաստան» հրատ., 1986, էջ 14): Այս տեսակետից տեսական ու պրոպագանդիստական մեծ նշանակություն ունեն ԳՏՀ-ի սոցիալական հետևանքների բուրժուական նորագույն մեկնաբանությունների կոնկրետ քննադատական վերլուծությունը, դրանց գիտական սնանկության և քաղաքական հետադիմության ցուցադրումը:

Բուրժուական հասարակական մտքի կողմից գաղափարների միջազգային պայքարի առաջին պլան մղված նորագույն տեխնիցիստական կոնցեպցիաներից առանձնահատուկ տեղ է գրավում «միկրոէլեկտրոնային հեղափոխության» կոնցեպցիան: Արդի արևմտյան սոցիոլոգիական և ֆուտուրոլոգիական գրականությունը տառացիորեն հեղեղված է «միկրոէլեկտրոնային հեղափոխություն», «ինֆորմացիոն հասարակություն», «հեռուստամատիկայի դար» և այլ մեծախոսող ընդհանրացումներով (տե՛ս, օրինակ, «Futurist», Wash., 1985, June, vol. 19, № 3): Բուրժուական գաղափարախոսները չարաշահում են էլեկտրոնային հաշվիչ մեքենաների ներկայիս սերնդի, կապի միջոցների, ինֆորմացիայի բանկերի, ավտոմատիկայի համակարգերի տարածման հետևանքով առաջացած ռեալ պրոբլեմները: Չէ՞ որ մինչև հաջորդ դարի սկիզբը մնացած տասներեք տարին մեծ ժամանակաշրջան չէ: Ֆուտուրոլոգների հայտնի «սահմանագիծը» շոշափելի տեսք է ձեռք բերում, և կանխագուշակումները առավել որոշակի են դառնում: Միևնույն ժամանակ, ԳՏՀ-ի պայմաններում հասարակության զարգացման տասներեք տարին քիչ ժամկետ չէ, եթե



հաշվի առնելու լինենք այն վիթխարի փոփոխությունները, որ իր հետ բերում է նորագույն ինֆորմացիոն տեխնոլոգիան:

Ռոբոտներն ու մանիպուլյատորները հեղափոխականացնում են արտադրությունը, իսկ բազմախողովակ կաբելային հեռուստատեսությունը, կապի արբանյակները, ապակեթելային և ալիքատար համակարգերն ստեղծում են ինֆորմացիայի հաղորդման սկզբունքորեն նոր ուղիներ ու եղանակներ: Տեխնիկական հիբրիդների ստեղծումը, որոնք ցանկացած համադրությամբ միավորում են ԷՀՄ-ը, ռադիոն, հեռուստատեսությունը, հեռախոսը, մագնիտաֆոնը, տպագրող սարքը, հսկայական չափով «ինֆորմացնում է» հասարակությունը, բարձրացնում ինֆորմացիայի հասարակական արժեքը՝ գլոբալացնելով ու տեղայնացնելով հսկայածավալ ինֆորմացիոն հոսքերը: Այս ամենը հակակոմունիստական տեսական չարաշահումների հող ստեղծեց այնպիսի առաջատար բուրժուական գաղափարախոսների համար, ինչպիսիք են Դ. Բելը, Դ. Բեռնհեմը, Զբ. Բժեզինսկին, Օ. Թոֆլերը, Ք. Էվանսը և ուրիշներ, որոնք «հետինդուստրիալ հասարակության» տեսության մի շարք կոնցեպցիոն ձևափոխություններ են մշակել: Կապիտալիզմի՝ առանց ցնցումների ապագայի ուտոպիական կանխագուշակումների կողքին այդ կոնցեպցիայում մշակվում են իմպերիալիստական քաղաքականության առավել ագրեսիվ կողմերն արտացոլող գաղափարներ: Դրանք են՝ նորագույն տեխնոլոգիայի շուկայում տեղի համար միջկապիտալիստական մրցակցության գաղափարները, իմպերիալիզմի ստրատեգիան զարգացող երկրների նկատմամբ, սոցիալիզմի հետ տնտեսական ու ռազմատեխնիկական մրցությունում կապիտալիզմի հեռանկարային խնդիրները: Ամերիկյան վարչակազմի գլխավորությամբ բուրժուական Արևմուտքի պահպանողական շրջանների քաղաքականությունը, «աստղային պատերազմների» պլանները, սոցիալիստական պետությունների նկատմամբ տեխնիկական քաղաքականության հարցերի վերաբերյալ Ռեյգանի վարչակազմի հայտարարությունները վկայում են այն մասին, թե հակադիր սիստեմների պայքարի կապակցությամբ կապիտալիզմն ինչպիսի մեծ հույսեր է կապում «միկրոէլեկտրոնային հեղափոխության» հետ: Մասնավորապես, ըստ իմպերիալիզմի տեսաբանների, «աստղային պատերազմների» պլանների իրականացման գործում «կոմպյուտերային հեղափոխությունը» պետք է գլխավոր դեր խաղա: «Գոյություն ունի մի մարզ,— այս առթիվ հայտարարում է ամերիկյան ջրածնային ռումբի «հայր» Էդուարդ Թելլերը,— որտեղ Միացյալ Նահանգներն ունեն բնական առավելություն: Դա կոմպյուտերներն են...» («Литературная газета», 9 апреля, 1986 г.):

Այսպիսով, «միկրոէլեկտրոնային հեղափոխության» բուրժուական կոնցեպցիան մի քանի ասպեկտ ունի: Ինչ վերաբերում է նրա գաղափարատեսական ընդհանուր սոցիոլոգիական հավատամքին, ապա այն առավել ծավալուն շարադրված է անգլիացի սոցիոլոգ Քր. Էվանսի **Հզոր միկրոն: Կոմպյուտերային հեղափոխության ազդեցությունը** գրքում: Լինելով «միկրոէլեկտրոնային հեղափոխության» պրոբլեմների սոցիոլոգիական մշակման առաջին փորձը, այդ գիրքը մեծապես կանխորոշեց նորագույն բուրժուական տեխնիցիստական կոնցեպցիաների հակակոմունիստական գաղափարաքաղաքական ուղղվածությունը:

Էվանսի պատկերացումների համաձայն, միկրոէլեկտրոնային տեխնոլոգիան՝ «հզոր միկրոն», իր հետ բերում է ոչ ավելի, ոչ պակաս, քան «կոմունիզմի անկումը», որովհետև, իբր, գոյություն ունի «մասսայական միկրոպրոցեսորային տեխնոլոգիայի բացարձակ կախում կապիտալիստական արտադրության ու բաշխման մեթոդներից» (նույն տեղը, էջ 206): «Վաղ թե ուշ,— գրում է այդ հեղինակը,— կոմունիստական աշխարհն ստիպված կլինի բացել աչքերն այն բանի հանդեպ, որ նա հետ է մնում ավելի կարևոր մրցավազքում, քան 60-ական թվականների տիեզերական մրցավազքն է, ինչպես նաև այն բանի հանդեպ, որ կապիտալիստական խթանների բացակայության պայմաններում նա դատապարտված է ավելի ու ավելի հետ մնալու... Այդ պապարեզում հետագա առաջխաղացումը ենթադրում է կապիտալի ներդրման այնպիսի ծավալ, որը հնարավոր է միայն վիթխարի սպառողական շուկայի առկայության կամ հասարակական ծախսերում հսկայական կրճատումների դեպքում... Բայց կան նաև այլ պատճառներ, որոնց հիման վրա կոմունիստական սիստեմը... կարող է անկման հասնել: Կոմպյուտերային հեղափոխությունը կոմպյուտերացված երկրներին առատություն կբերի այնպիսի ծավալով, որը կարելի է հա-

մեմատել միայն արդյունաբերական հեղափոխության հետևանքների հետ... Դրանից հետո մարքսիզմի ամենահամառ հետևորդն իսկ չի կարող անտեսել միկրոպրոցեսորային հեղափոխության պերճախոս փաստը. աշխարհը փոխվել է, փոխվել դեպի լավը՝ և առանց որևէ պրոլետարական հեղափոխության» (նույն տեղը, էջ 208):

Միամիտների ու անտեղյակների համար «կապիտալիստական դրախտի» այսպիսի մատուցումն իրոք կարող է հրապուրիչ խայծ լինել, սակայն նման վարդագույն շղարշն իսկ չի կարող սքողել կապիտալիզմի բուն հակասություններն ու նրանում ԳՏՀ-ի առաջացրած սոցիալական ավերումները: Էլ չենք ասում կոմունիզմի հետ «հաշիվները մաքրելու» ծիծաղաշարժության աստիճանի պարզունակ սխեմայի մասին:

Սոցիալիստական ու զարգացող երկրներին հասցեագրված բուրժուական մասսայական ինֆորմացիայի միջոցները լայնորեն են օգտագործում նմանօրինակ «փաստարկներ»: Դա անհրաժեշտ է դարձնում «միկրոէլեկտրոնային հեղափոխության» սոցիալական պրոբլեմների մարքս-լենինյան վերլուծությունը. հակամարտ սիստեմների պայքարի տեսանկյունից, նրա բոլոր հիմնական՝ սոցիալական, տնտեսական, քաղաքական ու հոգևոր-գաղափարախոսական ասպեկտների գիտական լուսաբանումը:

Ծգնելով «ապացուցել» կապիտալիզմի գերազանցությունը սոցիալիզմի նկատմամբ ԳՏՀ-ի արդի փուլի կապակցությամբ, Ք. Էվանսը և նրա գործընկերները վկայակոչում են որոշակի վիճակագրական տվյալներ (կոմպյուտերների, ռոբոտների և այլնի քանակությունը), անտեսելով այն փաստը, որ նեղ վիճակագրական տվյալների հիման վրա նման «ապացույցները» սկզբունքորեն սնանկ են: Ավելին, նրանք կանխամտածված կերպով նենգափոխում և լռության են մատնում ՍՍՀՄ-ի, սոցիալիստական մյուս երկրների հաջողությունները միկրոէլեկտրոնիկայի ասպարեզում (տե՛ս Электронная промышленность СССР, «Вестник агентства печати и новости», 1985, № 40): 1975 թ. ամերիկյան փորձագետներն այն կարծիքին էին, թե միկրոէլեկտրոնիկայի զարգացման գործում ՍՍՀՄ-ը հետ է մնում ԱՄՆ-ից 8—10 տարով: 1979 թ. նրանք ետ մնալը հասցրին 2—3 տարվա: Ինչ վերաբերում է սովետական տեխնոլոգների որակավորմանը և տեխնիկական բազային, ապա նրանց բավականին բարձր մակարդակը նրանք ընդունում են: Սովետական ПС—2000 գերկոմպյուտերը, որն ի վիճակի է մեկ վայրկյանում կատարելու 200 միլիոն գործողություն, ամերիկյան «Քոնտրոլ դեյթա քորպորեյշն» ֆիրմայի մասնագետների խոստովանությամբ, իր նմանը չունի Արևմուտքում:

Այդ ճյուղի զարգացման արագացման համար ՍՍՀՄ-ում ընդունված է մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանում հաշվողական տեխնիկայի և կառավարման ավտոմատ համակարգերի արտադրության ստեղծման, զարգացման ու արդյունավետ օգտագործման համապետական ծրագիր: Բացի այդ, առանց ՍՍՀՄ-ում հաշվողական տեխնիկայի զարգացման բարձր մակարդակի, պարզապես անհնարին կլինեին մեր հաջողությունները տիեզերքի նվաճման գործում: Իհարկե, միկրոէլեկտրոնիկայի զարգացման մի շարք ցուցանիշներով սոցիալիստական երկրներին դեռևս հարկ կլինի հաստատել իրենց գերազանցությունը առաջատար կապիտալիստական երկրների նկատմամբ, մի բան, որ պլանային տնտեսության, սոցիալիստական երկրների միջև հաստատված նոր տիպի միջազգային տնտեսական հարաբերությունների պայմաններում միանգամայն իրագործելի է:

Իսկ այժմ անդրադառնանք հարցի սոցիալ-տնտեսական ասպեկտներին: Կապիտալիստական և սոցիալիստական տնտեսություններն ունեն տարբեր սոցիալական խնդիրներ և կազմակերպման եղանակներ: ԱՄՆ-ում «միկրոէլեկտրոնային հեղափոխությունը» մինչև մեկ տարվա ճշտությամբ համընկավ նոր, այս անգամ կառուցվածքային ճգնաժամի հետ: Առաջին միկրոպրոցեսորն ստեղծվեց 1971 թվականին, երբ մեծագույն ցնցումների ենթարկվեց կապիտալիզմի վալյուտաֆինանսական համակարգը: 1973—1974 թթ. բռնկեց էներգետիկայի ճգնաժամը՝ ինֆլյացիայի, գործազրկության և այլնի հետագա աճով: Կապիտալիստական արտադրության տեխնիկական վերակառուցումն ուներ որոշակի սոցիալ-տնտեսական ուղղվածություն: Կառուցվածքային ճգնաժամի պայմաններում միկրոպրոցեսորային տեխնոլոգիայի ներդրումը չէր կարող կողմնորոշված լինել ամբողջ տնտեսության ծավալով արտադրության աճին: Առավելագույն շահույթի կորզումը կապիտալիստներին մղում էր



արտադրության ռացիոնալացմանը և նրա ծախսերի կրճատմանը: Այդ են վկայում հետևյալ փաստերը. եթե 1970 թ. ԳՖՀ-ում արտադրության ընդլայնման համար նախատեսված կապիտալ ներդրումները կազմել են 55 տոկոս, իսկ նրա ռացիոնալացման համար՝ 45, ապա 1980 թ.՝ համապատասխանաբար՝ 24 և 76 տոկոս:

Արևմուտքում արտադրության ծախսերի հիմնական մասը կազմում են բանվորական ուժի վրա կատարվող ծախսերը: Արևմտյան Եվրոպայում դրանք կազմում են 82, իսկ ԱՄՆ-ում՝ 74 տոկոս: Այդ ծախսերի կրճատումն էլ կազմում է կապիտալիստական «ռացիոնալացման» էությունը: Նույն այդ ԳՖՀ-ում արտադրության ռացիոնալացման 80 տոկոսը նպատակ է հետապնդել տնտեսել աշխատավարձի ֆոնդի հաշվին:

Ի տարբերություն բուրժուական սոցիոլոգների, կապիտալիզմի սոցիալ-տնտեսական ստրատեգիան որոշելիս տնտեսագետներն ավելի անկեղծ են: Ամերիկյան կապիտալիզմի առաջատար տեսաբաններից հայտնի բուրժուական տնտեսագետ Վ. Լեոնտևը ուղղակի հայտարարում է, թե նորագույն տեխնոլոգիայի ներդրման նպատակը բանվորական ուժի կրճատումն է և որ գործազրկության աճը դրա բնականոն հետևանքն է: Նրա խոսքերով ասած, այդ պրոցեսն օրինաչափ է և սկզբունքորեն այլընտրանքներից զուրկ. «Երբ բենզինով աշխատող տրակտորը փոխարինեց ձիուն, ոչ ոք չէր ասում, թե ձիու համար պետք է փնտրել այլ աշխատանք»: Ամերիկյան ռոբոտատեխնիկա արտադրող «Յունի մեյշն» ֆիրմայի պրեզիդենտ Ջ. Էնգելբերգերն իր **Ռոբոտները պրակտիկայում** գրքում գրում է. «Արտադրությունում ռոբոտների ներդրման շարժիչ ուժը արտադրության ծախսերը կրճատելու ձգտումն է» («За рубежом», 1985, № 40): Ռոբոտի շահագործման մեկ ժամն արժե 3—5 դոլար, իսկ մարդունը՝ 15 դոլար: Մեկ ռոբոտը միջին հաշվով վերացնում է 4 բանվորական տեղ՝ փոխարենն ստեղծելով մեկը: Այստեղից էլ կապիտալի համար «միկրոէլեկտրոնային հեղափոխության» բազմակի օգուտները: Ըստ նախագուշակումների, 2000 թվականին ռոբոտատեխնիկան կարող է կիսով չափ կրճատել զարգացած կապիտալիստական երկրների արդյունաբերությունում զբաղվածների թիվը:

Գործազրկության քանակական ասպեկտների մասին շատ է խոսվել: Սակայն կարևոր է գործազրկության ոչ միայն քանակը, այլև «որակը», կարևոր է այն իրողությունը, որ դա կորցնում է իր ցիկլային բնույթը, որը համընկնում էր տնտեսական իրավիճակի վերելքներին ու անկումներին: Հռոմի ակումբին «Միկրոէլեկտրոնիկան և հասարակությունը» վերնագրով ներկայացված վերջին զեկուցման մեջ ասված է. «Երկարաժամկետ հեռանկարում հնարավոր է, որ զբաղվածությունն արդյունաբերությունում կրճատվի խիստ զգալիորեն, նույնիսկ, իսկ միգուցե՝ հատկապես, այն դեպքում, եթե տեղի ունենա արագ տնտեսական աճ: Համաձայն ԱՄՆ-ի աշխատանքի վիճակագրության բյուրոյի տվյալների, դարավերջին արդյունաբերության մեջ զբաղվածությունը ավտոմատացման հետևանքով կարող է կրճատվել-հասցվել մինչև ինքնագործ բնակչության 10 տոկոսի (այժմ այն զանազան երկրներում տատանվում է 35—50 տոկոսի սահմաններում): Մեծ Բրիտանիայում սպասվում է, որ 80-ական թվականներին նոր տեխնոլոգիան ուղղակիորեն արտադրության ու սպասարկման ոլորտից դուրս կմղի 5 **մլն** մարդ, ԳՖՀ-ում այդ նույն ժամանակաշրջանում 2 **մլն** տեղ կվերացվի միայն գրասենյակային աշխատանքում:

Հակառակ «հետինդուստրիալականների» այն նախագուշակումներին, թե բանվորական տեղերի կրճատումը կփոխհատուցվի բուռն կերպով աճող ինֆորմացիոն արդյունաբերությամբ, վերջինիս ճյուղերն իսկ ենթարկվում են բանվորական տեղերի մեծածավալ կրճատման: Մեծ Բրիտանիայում 1970—1980 թթ. ինֆորմացիայի մշակման հատվածում զբաղվածությունը կրճատվեց 20 տոկոսով, իսկ հեռախոսների արտադրությունում 88 հազար մարդուց իջավ մինչև 65 հազարի: Առաջին հերթին աշխատանքից ազատվում են «կապույտ օձիքները». Իտալիայում նրանց բաժինը 53-ից կրճատվեց մինչև 38 տոկոսի:

Բանը, սակայն, կապիտալիստական հասարակության վրա «միկրոէլեկտրոնային հեղափոխության» ներազդման ոչ միայն քանակական գնահատականներն են: Այս կապակցությամբ հատկանշական է, որ ավելի ու ավելի քիչ թվով բուրժուական տեսաբաններ են համարձակվում ապացուցել գործազրկության «օգտակարությունը», իսկ նրանցից շատ-շատերը, մանավանդ լիբերալները, ուղղակիորեն խոսում են

տեխնոլոգիական գործազրկության քաղաքականապես ապակայունացնող դերի մասին: Ամերիկյան «Նյուսուիկ» ամսագիրն այլընտրանքը ձևակերպում է այսպես. «Կամ որակավորման մշտական ու զանգվածային բարձրացում, եթե բանվորներն ուզում են աշխատանք ունենալ, կամ անընդհատ նվազող աշխատավարձ, քանի որ ամերիկյան բանվորների բարձր աշխատավարձը թուլացնում է նրանց մրցունակությունը աշխատանքի համաշխարհային շուկայում» («Newsweek», N. Y., 1982, Oct. 18, vol. 400, № 16, p. 38):

Այդպիսով, նորագույն տեխնիկական նվաճումների ազդեցության ներքո արդյունաբերական արտադրության կառուցվածքային փոփոխություններն էապես փոխում են աշխատանքի շուկայում բանվորական ուժի նկատմամբ եղած պահանջարկի բնույթը: Առաջին մակարդակում որակավորված, բարձր համարում ունեցող և բարձր վարձատրվող բանվորական տեղերն են: Երկրորդ գծի վրա են այն աշխատատեղերը, որոնք գրեթե որակավորում չեն պահանջում, համարում չունեն, ցածր վարձատրվող են: Կապիտալիզմի առաջ «միկրոէլեկտրոնային հեղափոխությունը» այլընտրանք է դնում. կա՛մ պայմաններ ստեղծել որակավորման մասսայական բարձրացման համար, կա՛մ միջոցներ ձեռնարկել տեխնոլոգիական գործազրկության քաղաքական հետևանքները չեզոքացնելու համար: Արդյո՞ք բուրժուական պետությունն իր վրա կվերցնի զբաղվածության ոլորտից դուրս մղված, որակազրկված սոցիալ-մասնագիտական խմբերի օգտին նյութական բարիքների վերաբաշխման՝ առաջվանից ավելի լայն սոցիալական ֆունկցիաներ: Արդի բուրժուական պետությունը, որի իշխանության գլուխ են կանգնած պահպանողականները, բնականաբար, հակառակն է վկայում:

Իր **Հարստություն և աղքատություն** գրքում Ջ. Ջիլդերը՝ «Ռեյգանի վարչակարգի սիրեցյալ տնտեսագետը», ինչպես նրան մկրտել է «Բուք դայջեստ» ամսագիրը, այդ առթիվ գրում է. «Կապիտալիստական տնտեսությունում հարուստների կարևոր դերն է չզվարճացնել ստորին դասակարգերին և նրանց դայակություն չանել, այլ կապիտալի ներդրում կատարել, ներկայացնել զուտ և բյուրոկրատական կաշկանդումներից զերծ կապիտալ: Ամբողջությամբ հարուստների դասակարգն այդ դերն էլ կատարում է...»:

Սոցիալական ապահովության համակարգի կազմալուծում, գործազրկության նպաստների վճարման պայմանների խստացում, կրթության նպաստներով կատարվող հատկացումների կրճատում՝ ահա այն միջոցները, որոնց օգնությամբ պահպանողականները փորձում են «լուծել» այն սոցիալական պրոբլեմները, որ առաջացրել է «միկրոէլեկտրոնային հեղափոխությունը», փորձում են, հետևելով իրենց «սիրեցյալ տնտեսագետների» խորհուրդներին, աշխատավորների զանգվածներին վերածել **Ժամանակի մեքենայի** ուելսյան մորլոքների: Հեռուն գնացած տեխնիկատնտեսական պրոցեսները արագացված զարգանում են ի շահ մոնոպոլիաների, իսկ այդ պրոցեսների բացասական սոցիալական հետևանքների նկատմամբ հսկողությունը դիտավորյալ կերպով կազմալուծվում է: Սոցիոլոգների հաշվումներով ԱՄՆ-ում գործազրկության մակարդակի մեկ տոկոս բարձրացումը հինգ տարի հետո հանգեցնում է այն բանին, որ 37 հազար մարդ մահանում է հիվանդություններից (այդ թվում՝ 20 հազարը՝ սրտանոթային հիվանդություններից), 920 մարդ ինքնասպան է լինում, կատարվում է 650 սպանություն, 4 հազար մարդ ընկնում է հոգեբուժական հիվանդանոց, իսկ 3,5 հազարը՝ բանտ (տե՛ս Monde diplomatique, 1982, mars, p.p. 12—14):

Այս ամենից հետո հարց է ծագում. սոցիալիզմի հանդեպ կապիտալիզմի ի՞նչ առավելության մասին կարելի է խոսել «միկրոէլեկտրոնային հեղափոխության» կապակցությամբ, և ինչպիսի՞ք են հեռանկարները մի հասարակության, որտեղ նորագույն տեխնիկական հեղափոխությունը, թերևս մարդկության պատմության ընթացքում կատարվածներից ամենախոր հեղափոխությունը, վնաս է պատճառում գերակշիռ մեծամասնությանը:

Բնութագրելով կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի արդի փուլը, Մ. Ս. Գորբաչովը կուսակցության XXVII համագումարին ՍՄԿԿ Կենտկոմի ներկայացրած Քաղաքական զեկուցման մեջ շեշտեց. «Սրվում են նախ և առաջ **աշխատանքի և կապիտալի** հակասությունները: 60—70-ական թվականներին, տնտեսական նպաստավոր իրավիճակի պայմաններում, բանվոր դասակարգին, աշխատավորներին հաջողվեց հասնել իրենց դրության որոշ բարելավման: Բայց 70-ական թվականների կեսերից հաճախակի դարձած տնտեսական ճգնաժամերն ու արտադրության ներթական տեխնոլոգիական վերակառուցումը փոխեցին իրադրությունը, կապիտալին թույլ տվեցին անցնելու հակահարձակման, աշխատավորներին զրկելու նրանց սոցիալական նվաճումների զգալի մասից... Խորանում, է՛լ ավելի ապշեցուցիչ է դառնում սոցիալական շերտավորումը... թե այսուհետև ինչպես կընթանա աշխատանքի և կապիտալի արմատական հակասության զարգացումը, ինչ հետևություններ կարվեն ստեղծված իրադրությունից, ցույց կտան ապագան, իրենց իրավունքների, սոցիալական առաջադիմության համար աշխատավորների պայքարի ընթացքը» (**ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը**, էջ 19—21):

ԳՏՀ-ի արդի փուլի շատ սոցիալ-տնտեսական ու քաղաքական հետևանքներ դեռևս քիչ են ուսումնասիրված: Ինչ վերաբերում է կապիտալիստական երկրներին, ապա ուսումնասիրման հանգուցային պրոբլեմներ պետք է դառնան մոնոպոլիստական բուրժուազիայի սոցիալ-տնտեսական ստրատեգիայի պրոբլեմները, նրանց կողմնորոշումը դեպի զբաղվածության կանխամտածված կրճատումը, հարձակումը աշխատավորների իրավունքների վրա, հասարակության նկատմամբ կոմպյուտերային տեխնիկայի միջոցով հսկողությունն ուժեղացնելու կառավարող շրջանների փորձերը: Կարևոր է վերլուծել զարգացած կապիտալիզմի երկրների բանվորական շարժման մեջ ԳՏՀ-ի հարուցած նոր երևույթները՝ «տեխնոլոգիական համաձայնագրերը» որպես կոլեկտիվ պայմանագրերի նոր ձև, տնտեսության տեխնիկական վերակառուցման հետ կապված արհմիությունների քաղաքականացումը, նրանց ռադիկալացումը, նորագույն տեխնոլոգիայի ամբողջովին հակահասարակական կիրառման հետևանքով հակամոնոպոլիստական շարժման ընդլայնումը: Դրանով իսկ, ինչպես նախկինում, այնպես էլ այժմ, ի դերև կելնեն բուրժուական գաղափարախոսների՝ գիտատեխնիկական այս կամ այն հայտնագործության հետ կապված սոցիալ-քաղաքական հույսերը:

Սոցիալիզմի պայմաններում խիստ կարևոր նշանակություն են ձեռք բերում երկարաժամկետ սոցիալ-տնտեսական պլանավորման ու նորագույն ինֆորմացիոն տեխնոլոգիայի նախագծման և, հաշվի առնելով այդ ասպարեզում հիմնական ներքին ու միջազգային միտումները, այդ տեխնոլոգիայի արտադրական կիրառման հետևանքների, միջպետական սոցիալիստական կոոպերացիայի ու տեխնոլոգիայի խորացման, կադրերի հեռանկարային պատրաստման, ինչպես նաև այլ հարցեր:

Արդի աշխարհի իրողությունները բացահայտում են գիտատեխնիկական ոլորտում սոցիալիզմի պատմական առավելությունները, սոցիալիստական երկրներում նորագույն ինֆորմացիոն տեխնոլոգիայի ներդրման առաջադիմական սոցիալական նպատակները, տեխնոլոգիա, որը, նպաստելով աշխատանքի արտադրողականության. արտադրանքի որակի բարձրացմանը, ամբողջությամբ պետք է նպաստի արտադրության ինտենսիվացմանը, նրա զարգացման արագացմանը, որոնց վերջնական նպատակը ժողովրդի բարեկեցության բարձրացումն է, աշխատավորների խելամիտ պահանջմունքների առավել բավարարումը:

---

# ՄԱՏՅԱՆ ՀԵՐՈՍԱՄԱՐՏԵՐԻ

«ԲԱՆԲԵՐ Հայաստանի արխիվների» 1985 թվականի լույս տեսած երկու համարները (մեկ գրքով) նվիրված են Հայրենական մեծ պատերազմի ժամանակ կազմավորված և մարտական փառավոր ուղի անցած 89-րդ հայկական հրաձգային դիվիզիային: Հիրավի, ժողովրդական ճանաչման արժանացած դիվիզիայի մասին փաստաթղթեր և նյութեր ամփոփող նման ծավալուն ժողովածուի հրատարակումը վաղուց անհրաժեշտություն էր դարձել: Անտարակույս, ժողովածուի լույսընծայմանը անհամբերությամբ էին սպասում մեծ Հայրենականի պատմությունն ուսումնասիրողները, երիտասարդության ռազմահայրենասիրական դաստիարակությամբ զբաղվողները և, ինչ խոսք, վետերանթամանցիները:

Ժողովածուն բաղկացած է առաջաբանից, հինգ բաժիններից և գիտատեղեկատու ապարատից: Հենց միայն այն փաստը, որ գրքում հիմնականում զետեղվել են ՍՍՀՄ պաշտպանության մինիստրության կենտրոնական արխիվից հայտնաբերված և գերազանցապես առաջին անգամ հրապարակվող փաստաթղթեր, որոնք ծավալուն ինֆորմացիա են պարունակում դիվիզիայի անցած ուղու, մարտական գործողությունների, զորամասերի ու նրանց անձնակազմերի մասին, արդեն իսկ արժեքավորում է ժողովածուն ամբողջությամբ վերցրած: Վավերագրերի զուսպ լեզվով այստեղ տրված է դիվիզիայի ամբողջ կենսագրությունը: Ժողովածուի էջերից դիվիզիան ընթերցողին ներկայանում է իր հերոսական մարտերով, որոնք էլ նրան արժանացրել են Կարմիր դրոշի, Կուտուզովի 2-րդ աստիճանի, Կարմիր աստղի շքանշանների, «Թամանյան» կոչվելու բարձր պատվի:

1942 թվականի սեպտեմբերի առաջին իսկ մարտերում դիվիզիան իր մարտական մկրտությունը նշանավորում է մի շարք ուշագրավ և հերոսական գործողություններով: Վավերագրերից մեկում (№ 28) նշվում է, որ նրա «...զինվորները, հրամանատարներն ու քաղաշխատողները ցուցաբերեցին արիության, խիզախության օրինակներ, համառորեն շարժվում էին առաջ և, չնայած գերմանացիների դոտերից ու դզոտերից թափվող փոթորկալի կրակին, ոչ մի քայլ չնահանջեցին»: Այդ մարտերում իրենց խիզախությամբ հայտնի են դառնում տասնյակ հրամանատարներ, քաղաշխատողներ և ռազմիկներ, նրանց թվում՝ սպաներ Սիմոնյանը, Հակոբյանը, ռազմիկներ Իշխան Դանիելյանը, Գևորգ Հայրապետյանը և ուրիշներ: Դրանք սկիզբն էին այն մասսայական հերոսության, որ դիվիզիայի զորամասերը ցուցաբերեցին ամբողջ պատերազմի դժվարին ու երկար ճանապարհին՝ Կովկասի նախալեռներից մինչև «երրորդ ռայխի» որջը՝ Բեռլին:

1942 թվականի հիմնականում պաշտպանողական ծանր մարտերին հաջորդեց սովետական բանակի անկասելի հակահարձակումը 1943 թվականին: Պատերազմների պատմությունը չգիտե նման մի այլ օրինակ, երբ բանակը, թշնամու գերազանցող ուժերի ճնշման տակ նահանջելով ու տալով մարդկային և ռազմական տեխնիկայի զգալի կորուստներ, այնուհետև ի վիճակի լիներ խլել ստրատեգիական նախաձեռնությունը, ամբողջ ճակատով անցներ հարձակման, իր կամքը պարտադրեր ուժեղ ու նենգ հակառակորդին և վերջնականապես ջախջախեր նրան:

Ժողովածուում զետեղված նյութերը վերաբերում են միայն մեկ դիվիզիայի պատմությանը, սակայն, ընթերցելով դրանք, մենք պատկերացում ենք կազմում մեր երկրի համար բախտորոշ այդ ժամանակների, նրա զինված ուժերի վիթխարի կարողությունների մասին:

Հյուսիսային Կովկասի համար մղվող հերոսական մարտերին դիվիզիայի մասնակցության վերաբերյալ օպերատիվ հաղորդագրությամբ (№ 126) ավարտվում է ժողովածուի երկրորդ բաժինը: Այստեղ տրված է միավորման ավելի քան մեկ տարվա մարտական ուղու օրագիրը՝ սկըսած 1942 թ. աշնանային ծանր պաշտպանողական մարտերից մինչև սովետական



զորքերի կողմից Թամանյան թերակղզու ազատագրումը: Դա ստրատեգիական խոշոր նշանակության հաղթանակ էր: Այդ թերակղզին հակառակորդը դիտում էր որպես կարևորագույն պլացդարմ՝ մի կողմից Ղրիմն իր ձեռքում պահելու, մյուս կողմից՝ Կովկասի վրա հարձակողական օպերացիաներ ձեռնարկելու համար: Ու թեև թշնամին Նովոռոսիյսկը և քաղաքի շրջակա տեղանքը վերածել էր պաշտպանական հզոր ամրոցի, նրա պլաններին կատարյալ ձախողում էր սպասում. Նովոռոսիյսկ—Թամանյան օպերացիան, որ Կովկասի համար մղվող ճակատամարտի կարևորագույն և եզրափակիչ մասն էր, հանգեցրեց գերմանաֆաշիստական զորքերի պարտությանը: Այդ մարտերում էր, որ իրենց անմահ սխրագործություններով հայտնի դարձան Հունան Ավետիսյանը, Սուրեն Առաքելյանը, Ջահան Կարախանյանը, Բաբկեն Կարապետյանը, Սուրեն Զախարյանը, Գագիկ Հարությունյանը, Իվան Անիսինը և շատ ուրիշներ:

Ժողովածուի հաջորդ բաժնի փաստաթղթերը (№ 127—128) ամփոփում են դիվիզիայի մարտական գործողությունները Ղրիմի օպերացիայում՝ սկսած Կերչի շըրջանում գրաված պլացդարմից մինչև ամբողջ թերակղզու ազատագրումը: Փաստաթղթերը բովանդակում են հուզիչ և օրինական հպարտությամբ համակող տեղեկություններ Ղրիմում դիվիզիայի հերոսական գործողությունների, հրամանատարների և ռազմիկների՝ դժվարին մարտեր վարելու կարողության մասին: Այստեղ նրա 390-րդ և 400-րդ գնդերը արժանանում են «Սևաստոպոլյան» անվանմանը, տասնյակ սպաներ և ռազմիկներ՝ կառավարական պարգևների, իսկ Վարդգես Ռոստոմյանին, Հարություն Մկրտչյանին, Այդին Հարությունյանին, Սիմոն Բաղդասարյանին և Խորեն Խաչատրյանին շնորհվում է Սովետական Միության հերոսի կոչում:

Դիվիզիայի Լեհաստան տեղափոխվելու և առաջին բելոռուսական ռազմաճակատի զորքերի կազմում մարտական գործողություններին մասնակցելու մասին են չորրորդ բաժնի փաստաթղթերը: Պուլավիի պլացդարմից սկսելով հարձակումը, դիվիզիան ակտիվ գործողություններով ճեղքում է հակառակորդի պաշտպանության ամրագծերը Վիսլա գետի շրջանում, ջախջախիչ հարվածներ հասցնում թշնամու շրջապատված խմբերին: Ժողովածուում

տեղ են գտել այդ մարտերի համառոտակի օրագիրը և արդյունքները (№№ 229—243, 260, 285, 351 և այլն):

Ժողովածուի վերջին բաժնում հրապարակված փաստաթղթերը սկսվում են այն պահից, երբ դիվիզիան մարտերով մոտենում էր Օդերին: Այստեղ ընդգրկված հարուստ նյութերը կրում են շիկացած մարտերի դրոշմը, լի են հերոսական ու անմոռանալի դրվագներով: Այդ մասին պերճախոս վկայում է այն փաստը, որ օդերյան մարտերի միայն մեկ օրվա արդյունքներով դիվիզիայի 150 ռազմիկներ ներկայացվել են կառավարական պարգևների, իսկ 7-ը՝ Սովետական Միության հերոսի կոչման (№ 351):

Այնուհետև, անցնելով նոր հուժկու հարձակման, դիվիզիան մեր մյուս զորամիավորումների հետ գրավում է Ֆրանկֆուրտ քաղաքը: Եվ այնուամենայնիվ, նրա մարտական գործողությունների պսակը Բեռլինի ճակատամարտն էր: Փաստաթղթերից մեկում ասված է. «1945 թ. մայիսի 2-ը Թամանյան դիվիզիայի մարտական պատմության մեջ կմտնի որպես նրա ուղու ամենափառավոր և պայծառ էջ: Այդ օրը 89-րդ հրաձգային Կարմրադրոշ դիվիզիայի մարտական գործողությունները ատելի թշնամու նկատմամբ պսակվեցին լիակատար հաղթանակով»:

Դառնալ պատմական այդ մեծ ճակատամարտի մասնակիցը և ծնկի եկած տեսնել իմպերիալիստական Գերմանիայի մայրաքաղաքը, որտեղ մշակվում էին ֆաշիզմի համաշխարհային տիրապետության ցնորամիտ պլանները, մեծագույն պատիվ է ցանկացած զորմիավորման համար: Ի թիվս սովետական համբավավոր բանակների ու միավորումների, այդ վստահությանը և պատվին արժանացավ նաև 89-րդ հայկական դիվիզիան: Նա իր բարոյական ու մարտական անընկճելի ոգով արդարացրեց հայ ժողովրդի հույսերը և ճակատամարտերում մարտնչող մյուս հազարավոր հայազգի զավակների հետ արեց ամեն ինչ՝ բաղձալի հաղթանակը նըվաճելու համար: Տեղին է հիշատակել Սովետական Միության մարշալ, մեծ զորավար Գ. Կ. Ժուկովի խոսքերը. «Հայրենական մեծ պատերազմում հայ ժողովուրդը, ինչպես և մեր հայրենիքի մյուս ժողովուրդները, արժանի ավանդ ներդրեց հիտլերյան Գերմանիայի դեմ մղվող պայքարում: Հայ ռազմիկները՝ զինվորից մինչև մարշալ, անվեհեր մարտիկների չխամ-

րող փառքով օծեցին իրենց անունները՝ հանուն կոմունիզմի, հանուն Վլադիմիր Իլյիչ Լենինի գաղափարների»:

Վավերագրական հավաստի տեղեկություններ ու ընդարձակ ինֆորմացիա պարունակող այս ժողովածուն լուրջ ավանդ է մեր պատմագրության մեջ: Սակայն ափսոսանքով պետք է նշել, որ այն զերծ չէ մի շարք թերություններից, վրիպումներից: Այսպես. Ղրիմի ազատագրման հերոսական մարտերի ժամանակաշրջանի վերաբերյալ, որքան էլ զարմանալի է, չկա քաղվածքի և ոչ մի զեկուցագիր: Նույնը՝ Լեհաստանի: Ճիշտ է, վերջինիս ազատագրման մասին փաստաթղթերին հաջորդող բաժնում զետեղված քաղվածքի մի զեկուցագրում (№ 260) որոշ տեղեկություններ կան, բայց այն չի ընդգրկում գործողությունների ամբողջ ժամանակը: Մարտական օպերացիաների այդ երկու ժամանակաշրջանների վերաբերյալ այնքան կարևոր փաստաթղթերի բացակայության մասին պետք է որ նշվեր առաջաբանում: Սակայն դա չի արված: Ի դեպ, նշենք, որ գրքի առաջաբանն իրեն ներկայացվող պահանջներին չի ծառայում. փոխանակ հիմնավորվեին դիվիզիայի ստեղծման շարժառիթները, նրա գործունեությունն արտացոլող փաստաթղթերի հրապարակման անհրաժեշտությունը, այնտեղ ամբողջ էջերով վերաշարադրվում են նրա մարտական ուղու մանրամասները, որոնց ընթերցողը անխուսափելիորեն կհանդիպի ժողովածուում հրապարակված տասնյակ փաստաթղթերում:

Ժողովածուն կազմողները ճիշտ չեն վարվել, երբ առատորեն բերված պարգևատրման թերթիկների թվում չեն հիշատակել 1942 թ., ինչպես և 1943 թ. առաջին երկու ամիսներին վերաբերող նման փաստաթղթեր: Եվ դա այն դեպքում, երբ դիվիզիայի մարտական գործողությունները հատկապես այդ շրջանում կրել են շատ ծանր բնույթ, և արդեն 1942 թվականին 21 ռազմիկներ արժանացել են կառավարական պարգևների (№ 94):

Տարօրինակ է նաև, որ մատենագիտական ցանկում, ինչպես և ծանոթագրություններում հիշատակում կամ նշում չկա Փառքի երեք շքանշանների ասպետների մասին փաստաթղթերի հրապարակման վերաբերյալ, երբ դրա առաջնությունը պատկանում է հենց իրեն՝ «Բանբերին» (տե՛ս 1971 թ., № 4):

Ցավալի անճշտություններ են թույլ տրված պաշտոնների նշանակման տարեթվերում, անվանացանկում, լուսանկարների ենթատեքստերում, կոչումների և պաշտոնների նշումների մեջ, նույնիսկ առկա է միևնույն լուսանկարով երկու տարբեր մարդկանց ներկայացնելու ցավալի վրիպում: Իսկ գրքի վերջում տրված վրիպակների ուղղումներն իրենք կարիք ունեն... ուղղումների: Ժողովածուում խախտվել է մի ամբողջ խումբ փաստաթղթերի (№№ 276—297) տեղադրման ժամանակագրական սկզբունքը, դրանով իսկ աղավաղվել է դիվիզիայի մարտական գործողությունների վերաբերյալ հաղորդագրությունների հաջորդականությունը: Այդ կարգի խախտումները եզակի չեն:

Մեր կարծիքով լավ կլիներ, եթե ստրատեգիական նշանակության օպերացիաների մասին հատվածաբար հրապարակվեին այն բանակների և կորպուսների ընդհանրացնող զեկուցագրերի և տեսությունների համապատասխան մասերը, որոնց կազմում գործել է դիվիզիան: Դրանով դիվիզիայի գործողությունները կներկայացվեին հիշյալ զորամիավորումների գործողությունների և ամբողջության մեջ ու ավելի կշեշտվեր նրա կատարած մարտական խնդիրների կարևորությունը:

Նշված դիտողությունները, որ արվել են այդ կարգի աշխատությունները այսուհետև ավելի կատարյալ տեսնելու մտադրությամբ, ստվեր չեն գցում գրախոսվող ժողովածուի վրա: Նման գրքերի անանց նշանակությունը ամենից առաջ այն է, որ դրանք մի-մի հուշարձան են Հայրենական մեծ պատերազմի ռազմիկներին, որոնք իրենց ջերմ հայրենասիրությամբ, հերոսությամբ ու խիզախությամբ, իրենց արյան գնով ապահովեցին մեր հայրենիքի հաղթանակը:

**ՀՐ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ**
**Պաշտոնաթող փոխգնդապետ**

*Հանձնված է շարվածքի՝ 12.12.86 թ.: Ստորագրված է տպագրության՝ 13.01.87 թ. ՎՖ 02618 Ֆորմատ՝ $70\times108^{1}/_{16}$: Տպագրությունը՝ բարձր, 8,4 պայմանական տպ. մամ., 9,4 հրատ. մամ.: Տպաքանակը՝ 18.732: Պատվեր՝ 2337:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2:*